ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ 1973

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն





# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոն, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահությունը, **ՍՍՀՄ** Մինիստրների սովետը, քննության առնելով **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահության անդամ ընկեր Լ. Ի. Բրեժնևի Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած այցի արդյունքները, բարձր գնահատելով նրա անձնական ներդրումը, ամբողջովին ու լիովին հավանություն տվեցին այդ այցի քաղաքական և գործնական արդյունքներին, որը սկզբունքային մեծ նշանակություն ունի և հսկայական կարևորության իրադարձություն եղավ:

**ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղարի Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած այցի արդյունքները **ՍՄԿԿ** XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագրի արդյունավետության նոր հաստատումն են, խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականության ուժի և կենսականության նոր, համոզիչ ապացույցը:

**1972** թվականի մայիսին Մոսկվայում վարված սովետա-ամերիկյան բարձր մակարդակի բանակցություններից ի վեր անցած ժամանակը ամենայն ակներևությամբ հաստատեց, որ սովետա-ամերիկյան հարաբերությունների առողջացման նպատակով այն ժամանակ ձեռնարկված քայլերը ճիշտ ու ժամանակին էին: Մոսկվայի հանդիպումը, դրանում ընդունված «**ՍՍՀՄ**-ի և **ԱՄՆ**-ի փոխհարաբերությունների հիմունքները» փաստաթուղթը շրջադարձ սկզբնավորեցին անվստահությունից դեպի լարվածության թուլացումը, մեր երկու երկրների հարաբերությունների նորմալացումը և համագործակցությունը: Պրեզիդենտ Ռ. Նիքսոնի հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ներկա բանակցությունների շնորհիվ **ՍՍՀՄ**-ի և **ԱՄՆ**-ի հարաբերությունների զարգացման ասպարեզում բացվում են նոր, բարենպաստ հեռանկարներ:

**ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոն, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահությունը և **ՍՍՀՄ** Մինիստրների սովետը նշում են, որ բանակցությունների անցկացումը և հաջող ավարտումը լավ հիմք դրեցին սովետա-ամերիկյան հարաբերությունների նորմալ զարգացման համար, մեր երկու երկրների փոխշահավետ համագործակցության ամրապնդման համար և միաժամանակ ավանդ են ներդնում լարվածության թուլացումը ամրապնդելու, ընդհանուր խաղաղությունն ու ժողովուրդների անվտանգությունը ամրապնդելու գործում:

«Միջուկային պատերազմը կանխելու մասին» **ՍՍՀՄ**-ի և **ԱՄՆ**-ի միջև կնքված անժամկետ համաձայնագիրը կարևոր քայլ է միջուկային պատերազմի ծագման սպառնալիքը նվազեցնելու և վերջին հաշվով վերացնելու, միջազգային անվտանգության ռեալ երաշխիքների սիստեմ ստեղծելու ուղղությամբ: Ընդունված համաձայնագրերի գործնական իրականացումը,

ՍՍՀՄ-ի հետ ԱՄՆ-ի ատոմային դիմակայությունից շրջադարձը դեպի միջուկային պատերազմ թույլ չտալու, վիճելի հարցերը բանակցությունների միջոցով լուծելու կուրսը, հիրավի, պատմական նշանակություն կունենան ամբողջ մարդկության համար:

Մեծ դեր են կոչված խաղալու Վաշինգտոնում ստորագրված «Ստրատեգիական հարձակողական սպառազինությունների հետագա սահմանափակման բանակցությունների հիմնական սկզբունքները»: Շարունակելով 1972 թվականի մայիսին Մոսկվայում կնքված սովետա-ամերիկյան համաձայնագրերի գիծը, այդ փաստաթուղթը նախատեսում է ակտիվորեն շարունակել այն աշխատանքը, որը ոչ միայն նպատակ ունի սահմանափակել ստրատեգիական հարձակողական սպառազինությունները, ինչպես դրանց քանակի, այնպես էլ դրանց որակական կատարելագործման տեսակետից, այլև նպատակամղում է միջոցներ ձեռնարկելու դրանց հետագա կրճատման համար:

Էական նշանակություն ունի «Ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման բնագավառում գիտատեխնիկական համագործակցության մասին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի համաձայնագիրը», որի առաջնահերթ նպատակն է մշակել էներգիայի բարձրարդյունավետ նոր աղբյուրներ:

Տարբեր բնագավառներում երկու պետությունների խաղաղ համագործակցության բազմակողմանի զարգացումը և մասնավորապես երկու երկրների առևտրա-տնտեսական կապերի զարգացման նոր հեռանկարները կնպաստեն է՛լ ավելի մեծ կայունություն տալու սովետա-ամերիկյան հարաբերություններին:

Սովետական մարդիկ բարձր են գնահատում, որ ընկեր Լ. Ի. Բրեժնևի այցի ժամանակ ամերիկյան հասարակայնության լայն շրջանները իրենց բարեկամական զգացմունքներն էին արտահայտում մեր ժողովրդի հանդեպ, ըմբռնում էին սովետա-ամերիկյան հարաբերությունների հետագա զարգացման կարևորությունը:

Եթե ետպատերազմյան տասնամյակների ընթացքում սովետա-ամերիկյան հարաբերությունների լարվածությունը բացասաբար էր անդրադառնում ամբողջ միջազգային իրադրության վրա, ապա հիմա, ընդհակառակն, սովետա-ամերիկյան հարաբերությունների լավացումը, մյուս կողմի նկատմամբ, մյուս կողմի դաշնակիցների նկատմամբ և ուրիշ երկրների նկատմամբ ուժի սպառնալիքից կամ դրա գործադրումից ձեռնպահ մնալու երկու երկրների ստանձնած պարտավորությունները, բոլոր պետությունների իրավունքներն ու շահերը հարգելու երկու կողմերի պարզորոշ ձևակերպած կամքը միջազգային իրադրության արմատական բարելավման կարևոր տարր կլինեն, մեծ հնարավորություններ կընձեռեն մյուս բոլոր երկրների կոնստրուկտիվ համագործակցության համար:

Խաղաղության ամրապնդման գործին է ծառայում այն, որ բանակցությունների ընթացքում հավաստվեց Վիետնամի վերաբերյալ փարիզյան համաձայնագիրը խստիվ կատարելու անհրաժեշտությունը՝ առանց արտաքին որևէ միջամտության. դա կնպաստի այն բանին, որ Հնդկաչինի բոլոր ժողովուրդները խաղաղ ապրելու հնարավորություն ստանան:

Եվրոպայի անվտանգության պրոբլեմները քննարկելիս երկու երկրների ձեռք բերած փոխըմբռնումը և մասնավորապես կարճ ժամանակամիջոցում համաեվրոպական խորհրդակցություն անցկացնելու երկուստեք ձգտումը կարևոր նշանակություն կունենան այդ մայրցամաքում խաղաղության կայունությունն ապահովելու տեսակետից:

Էապես կարևոր է համատեղ կոմյունիկեում արձանագրված ձգտումը մերձավորարևելյան կոնֆլիկտը կարգավորելու այդ շրջանի բոլոր ժողովուրդների և պետությունների իրավունքներն ու շահերը ապահովելու սկզբունքների հիման վրա, ներառյալ պաղեստինյան ժողովրդի շահերը: Բանակցություններում շարադրվեց սովետական դիրքավորումը այդ հարցի առթիվ: Սովետական Միությունը, խաղաղության ծրագրին համապատասխան, սկզբունքային նշանակություն է տալիս ագրեսիայի ենթարկված պետությունների և ժողովուրդների օրինական իրավունքների հարգման հիման վրա Մերձա-






վոր Արևելքում պատերազմական օջախի վերացմանը: Մերձավոր Արևելքի պրոբլեմի արդարացի լուծման հիմքը իսրայելական զորքերի դուրսբերումն է արաբական բոլոր օկուպացված տերիտորիաներից:

1973 թվականի հունիսին անցկացված սովետա-ամերիկյան բարձր մակարդակի բանակցությունների արդյունքները համապատասխանում են ոչ միայն ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ժողովուրդների շահերին, այլև ամբողջ խաղաղասեր մարդկության շահերին:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ԱՄՆ կատարած այցի արդյունքները ևս մեկ փայլուն ապացույցն են այն բանի, որ ներկայումս հնարավորություններ կան վիճելի հարցերը, որքան էլ դրանք բարդ լինեն, լուծելու բանակցությունների միջոցով՝ պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա, անկախ նրանց սոցիալական սիստեմների միջև եղած տարբերությունից:

Երկու պետությունների կողմից ստանձնած բոլոր պարտավորությունների հետևողական և անշեղ կատարումը նախադրյալն է այն բանի, որ սովետա-ամերիկյան հարաբերությունները դառնան միջազգային խաղաղության մըշտական գործոն, որ ապահովվի լարվածության թուլացման ներկայումս զարգացող պրոցեսների անդառնալիությունը, որ խորանա հակադիր հասարակական սիստեմներին պատկանող պետությունների խաղաղասիրական, փոխշահավետ համագործակցությունը:

Սովետական կողմը այն համոզմունքն է հայտնում, որ ուժի գործադրումից հրաժարվելու և միջուկային պատերազմի առաջացում թույլ չտալու համար վճռական միջոցներ ձեռնարկելու ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի համատեղ արձանագրած սկզբունքներին միանալու ուրիշ պետությունների պատրաստակամությունը բացառիկ կարևոր գործ կդառնա երկրագնդում ընդհանուր անվտանգության ու կայուն խաղաղության ապահովման համար:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ԱՄՆ կատարած այցի արդյունքները, ՍՄԿԿ XXIV համագումարից հետո արտաքին քաղաքականության բնագավառում մյուս սոցիալիստական երկրների հետ համատեղ մեր երկրի իրականացրած բոլոր միջոցառումները շատ կարևոր ներդրում են միջազգային մթնոլորտի առողջացման գործում:

Սովետական ժողովուրդը, եղբայրական սոցիալիստական երկրները, միջազգային կոմունիստական շարժումը, խաղաղասեր և առաջադեմ ուժերը բարձր են գնահատում սովետա-ամերիկյան բանակցությունների արդյունքները, որոնք համապատասխանում են խաղաղության շահերին, բոլոր երկրների ժողովրդական մասսաների շահերին:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների սովետը հայտարարում են, որ Սովետական Միությունը այսուհետև ևս հետևողականորեն կընթանա ՍՄԿԿ XXIV համագումարի նշած ուղիով: Մենք այսուհետև ևս կամրապնդենք հարաբերությունները մեր բարեկամների ու դաշնակիցների՝ սոցիալիստական համագործակցության երկրների հետ: Մենք կզարգացնենք կապերն ու կոնտակտները գաղութային լծից ազատագրված երկրների հետ, օգնություն ցույց կտանք խաղաղության, ազգային ազատագրության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար պայքարող բոլոր ժողովուրդներին: Սովետական Միությունը առաջվա պես վճռական հակահարված կտա իմպերիալիստական ագրեսիվ ուժերի բոլոր դավերին, բոլոր նրանց, ովքեր հանդես են գալիս լարվածության թուլացման դեմ, «սառը պատերազմին» վերադառնալու օգտին, սպառազինությունների մրցավազքի օգտին, բոլոր նրանց, ովքեր թշնամանք և անվստահություն են սերմանում ժողովուրդների միջև:

ՍՍՀՄ-ի արտաքին քաղաքականությունը հենվում է մեր ամբողջ ժողովրդի միասնության և համախմբվածության վրա, այն միահամուռ աջակցության վրա, որ ժողովուրդը ցույց է տալիս մեր կուսակցությանը, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեին և սովետական կառավարությանը: Սովետական ժողովուրդը իր անձնվեր աշխատանքով բազմապատկելով սոցիալիստական հայրենիքի ուժն ու հզորությունը, դրանով իսկ ամրապնդում է ժողովուրդների կայուն խաղաղության և անվտանգության հիմքերը:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱՅԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՊՐԵԶԻԴԵՆՏ Ժ. ՊՈՄՊԻԴՈՒԻ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահու-
թյունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, քննարկելով 1973 թվականի հունիսին
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի և Ֆրանսիայի
Հանրապետության պրեզիդենտ Ժ. Պոմպիդուի միջև կայացած հանդիպման
վերաբերյալ հաղորդումը, ամբողջովին հավանություն են տալիս հանդիպման
արդյունքներին, որոնք համապատասխանում են երկու երկրների ժողովուրդ-
ների շահերին և դրական նշանակություն ունեն Եվրոպայում ու ամբողջ
աշխարհում լարվածության թուլացման պրոցեսն ամրապնդելու համար:

Իրադարձությունների ընթացքը համոզիչ կերպով հաստատում է իր ժա-
մանակին Սովետական Միության և Ֆրանսիայի ձեռնարկած քայլերի ճշտու-
թյունը, որոնք, հաստատելով կոնստրուկտիվ համագործակցության հարա-
բերություններ, իրենց ջանքերն ուղղեցին քաղաքական, տնտեսական և
կուլտուրական բնագավառներում համակողմանի հարաբերությունների զար-
գացմանը, Եվրոպայում միջազգային հարաբերությունների նոր սիստեմի
ստեղծմանը, որը հիմնված է տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետու-
թյունների խաղաղ գոյակցության սկզբունքների հետևողական կիրառման
վրա:

Էական նշանակություն ունեն համատեղ կոմյունիկեում արտահայտված
երկու կողմերի վճռականությունը է՛լ ավելի ամրապնդելու ֆրանս-սովետա-
կան կապերը՝ «ՍՍՀՄ-ի ու Ֆրանսիայի համագործակցության սկզբունքների»
և քաղաքական կոնսուլտացիաների մասին «սովետա-ֆրանսիական արձա-
նագրության» հետևողական կենսագործման հիման վրա, ինչպես նաև պայ-
մանավորվածությունը 1974 թվականի սկզբներին սովետա-ֆրանսիական
բարձր մակարդակի նոր հանդիպում անցկացնելու մասին:



# ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ՄԵԾ ԴՐՈՇԱԿԱԿԻՐԸ

Յոթանասուն տարի առաջ, 1903 թ. հուլիսի 30-ին Բրյուսելում բացվեց ՌՍԴԲԿ երկրորդ համագումարը: Մի իրադարձություն, որով ավարտվեց Ռուսաստանի հեղափոխական մարքսիստական կազմակերպությունների միավորման ընթացքը, և վերջնականապես կազմավորվեց բոլշևիկների իրոք հեղափոխական, իրոք պրոլետարական, հետևողական մարքսիստական կուսակցությունը, նրա անմահ հիմնադրի և անզուգական ղեկավարի՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ: Բոլշևիզմը որպես քաղաքական մտքի հոսանք և իբրև քաղաքական կուսակցություն, գրել է Լենինը, գոյավորվել է 1903 թվականից (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 9):

«Այդ պահից ի վեր մեր կուսակցության անցած ուղին պատմության մեջ իրեն հավասարը չունի: Համեմատաբար ոչ մեծ ընդհատակյա կազմակերպությունից այն վերածվեց կոմունիստների հզոր, համախմբված, գրեթե տասնհինգ միլիոնանոց բանակի՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառավարող կուսակցության: ՍՄԿԿ-ն՝ բանվոր դասակարգի կուսակցությունը, դարձել է կոմունիզմ կառուցող բովանդակ սովետական ժողովրդի մարտական ավանգարդը: Հանձին կուսակցության, գրել է Լենինը, տեսնում ենք մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը» («ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ՌՍԴԲԿ II համագումարի 70-ամյակի մասին»):

Հայտնի է, որ ռուսաստանյան հասարակական ազատագրական շարժումը տակավին անցյալ դարում ունեցել է ազնվականական և նարոդնիկական փուլեր: Երկար ու տառապալի որոնումների և բազմաթիվ զոհերի գնով ռուսաստանյան առաջավոր մտքի ու գործի ներկայացուցիչներին հաջողվեց հանուն միապետության խորտակման մղվող պայքարում դեմոկրատական ավանդույթներ ստեղծել: Նարոդնիկական հերոսապատումներով լի 70-ական թվականների շարժումը՝ տոգորված առաջավոր գաղափարներով, միտում էր սոցիալիզմի հասնել գյուղական համայնքին կռթնած, շրջանցելով զարգացող կապիտալիզմը ու նրա հետևանք «պրոլետարացման խոցը»:

Սակայն զարգացող կապիտալիզմը շուտով պատմական ասպարեզ բերեց ապագայի տնօրենին՝ բանվոր դասակարգին, որն սկսեց իր համարձակ ու տևական կռիվը բուրժուա-ֆեոդալական ուժգնացող կեղեքման դեմ: Մինչև մարքսիզմի թափանցումը քաղաքականապես խմորվող բանվորների շրջանում, տարերային գործադուլները, գյուղացիական բունտերը և կրկնվող ան-

հատական առաքելումները շոշափելի արդյունքներ չտվին: Իսկ հեղափոխականացող բանվորներն սկսեցին գործնական պայքար մղել ոչ միայն ցարական բռնակալության և կապիտալիստական կեղեքիչների, այլև լիբերալ նարոդնիկների ռեֆորմատորականության, էսեռների քաղաքական արկածախնդրականության և առաքելչականության, զանազան մանրբուրժուական և կիսաանարխիստական տարրերի դեմ, որոնք բանվորությանը շեղում էին հեղափոխական մայրուղուց:

Եվ ահա, անցյալ դարի 90-ական թվականների կեսերին ռուսաստանյան բազմազգ բանվորության շարժման գլուխն անցավ Վ. Ի. Լենինը, որը տիտանական իր գործունեությամբ պրոլետարական հեղափոխական շարժումը խարսխեց մարքսիզմի գրանիտյա հիմքերին, տեսական ու գործնական անօրինակ ջանքերով գիտական սոցիալիզմը միացրեց բանվորական շարժմանը: Հետևողական մարքսիզմի գաղափարների հատու զենքից վարպետորեն օգտվելով, նա մահացու հարվածներ հասցրեց «լեգալ մարքսիզմի», «էկոնոմիզմի», մանրբուրժուական և ռևիզիոնիստական մտածելակերպի ու տակտիկայի ներկայացուցիչներին:

Որպեսզի բանվոր դասակարգը հաջողությամբ պսակի իր պատմական միսիան և բոլոր կեղեքվողների գլուխն անցած մեկընդմիշտ խորտակի հին կարգերը,— ուսուցանում էր Լենինը,— նա պետք է լինի կուռ կազմակերպված, որդեգրի իրեն ազատագրության միակ ճիշտ ուղի նշող մարքսիզմը: «Իշխանության համար մղվող կռվում պրոլետարիատը կազմակերպությունից զատ մի այլ զենք չունի... պրոլետարիատը կարող է դառնալ և անպայման կդառնա մի անպարտելի ուժ լոկ այն բանի շնորհիվ, որ մարքսիզմի սկզբունքներով նրա գաղափարական միավորումն ամրակայվում է կազմակերպության նյութական միասնությամբ, որը միլիոնավոր աշխատավորներին ձուլում է բանվոր դասակարգի բանակում» (ПСС, т. 8, стр. 403—404):

Բանվոր դասակարգի պրոգրեսիվ դերի լենինյան սույն ըմբռնումը լիովին բխում էր պատմական այն կոնկրետ իրադրությունից, որում կոչված էր հեգեմոն դեր խաղալու ինքը՝ ռուսաստանյան պրոլետարիատը: Այո՛, ոչ միայն Ռուսաստանի, այլև եվրոպական երկրների կապիտալիստական հարաբերությունների համակողմանի ուսումնասիրությամբ, Լենինը տեսական իր հուժկու զենքով ոչ միայն ջախջախեց անցյալ դարավերջի նարոդնիկական հետադեմ հայացքները, միաժամանակ և սովորեցրեց իր համախոհներին, շեշտելով. բանվորական կուսակցությունը խախտում է մարքսիզմի հիմնական պատվիրանները և հսկայական քաղաքական սխալ է կատարում, երբ անտեսում է գյուղացիության մեջ եղած հեղափոխական տարրերին ու չի սատարում նրանց (տե՛ս ПСС, т. 4, стр. 229):

Բնորոշ է, որ մենշևիկները, տրոցկիստները երբևէ չկարողացան հասկանալ ռուսաստանյան հեղափոխության այն յուրահատկությունը, երբ հեղափոխական պրոլետարիատը կոչված էր հին կարգերի խորտակման մարտերում ներգրավելու իր դաշնակցին՝ աշխատավոր, կեղեքվող գյուղացիական զանգվածներին: Չէ՛ որ այդպիսով հեղափոխական պրոլետարիատը իրականում բավարարում էր ազատության ու հողի՝ նրանց երազներին: Բացառելով նարոդնիկական «սոցիալիզմի» մանրբուրժուական էությունը, Լենինը հեղափոխություն նախապատրաստող իր համախոհներին ուսուցում էր ըստ արժանվույն գնահատել գյուղացիական դեմոկրատիայի արժեքավոր հատիկը:



Աշխատավորական զանգվածների գործունեության, նրանց դասակարգային միության նկատմամբ բանվոր դասակարգի հեգեմոնիայի ապահովումն այն առհավատչյան է, որ այդ միությամբ սոցիալիստական հեղափոխությունը կհաղթանակի:

Միայն նա, ով կատարյալ վարպետությամբ տիրապետում էր մարքսիզմի ամենահաղթ զենքին, կարող էր ամենայն խորությամբ ըմբռնել հասարակական կյանքի լաբիրինթոսը և հստակորեն նշմարել նրա առաջընթացի բազում կեռմաններում գոյավորվող շարժման կենսունակ նկրտումները, ինչպես և դեռ սաղմնային վիճակում խլրտացող սոցիալական ուժերը: Դա Լենինն էր, որ խորապես հասկանալով իր ապրած դարաշրջանի՝ փտող կապիտալիզմի ու վերաալաց սոցիալիզմի միանգամայն նոր հանգամանքները, Ռուսաստանի կոմունիստներին բացահայտեց իրականությունն իր ողջ բարդությամբ՝ առաջավորի ու վերընթացի վայրիվերումներով:

«Հեգելի և Մարքսի գործի շարունակությունը պետք է լինի՝ մարդկային մտքի, գիտության ու տեխնիկայի պատմության դիալեկտիկական մշակումը» (Երկեր, հ. 38, էջ 173): Եվ այս դժվարին ու տիտանական խիզախումն ինքը կատարեց: Տակավին շատ երիտասարդ հասակում այդպիսի ստեղծագործական մոտեցում ցուցաբերելով մարքսիզմին, Լենինը գրել է. «Մենք Մարքսի տեսությունն ամենևին էլ չենք համարում ինչ-որ ավարտուն ու անձեռնմխելի մի բան. ընդհակառակը, մենք համոզված ենք, որ այդ տեսությունը միայն անկյունաքարերն է արկանել այն գիտության, որը սոցիալիստները, եթե չեն ցանկանում կյանքից ետ մնալ, պարտավոր են ամեն կողմից առաջ մղել: Մենք կարծում ենք, որ ռուս սոցիալիստներին առանձնապես անհրաժեշտ է Մարքսի տեսության ինքնուրույն մշակումը, քանզի այդ տեսությունը միայն ընդհանուր ղեկավար դրույթներ է տալիս, որոնք կիրառվում են մասնավորապես Անգլիայի նկատմամբ այլ կերպ, քան Ֆրանսիայի, Ֆրանսիայի նկատմամբ այլ կերպ, քան Գերմանիայի, Գերմանիայի նկատմամբ այլ կերպ, քան Ռուսաստանի» (ПСС, т. 4, стр. 184):

Ոչ այլ ոք, քան ինքը՝ Լենինն անթերի լուծեց այդ խնդիրը նաև ապրած ժամանակի համաշխարհային սոցիալական կարևորագույն իրողությունների ու մարդկային մտքի զարգացման բարդ ոլորտներում, այդ թվում և Ռուսաստանի սոցիալիստական վերածնության քիչ թե շատ նշանակալի մարզերում, ստեղծագործաբար մշակեց ու աննախընթաց ճկունությամբ կիրառեց մարքսիզմի ոգին՝ մատերիալիստական դիալեկտիկան:

Առանց հեղափոխական տեսության չկա և հեղափոխական շարժում: Լենինյան այս հակիրճ և հիմնարար միտքը ժամանակի օբյեկտիվ իրողության կենսական պահանջի գիտական ձևակերպումն է, որի իրագործումը բնավ հնարավոր չէր առանց զանգվածային շարժման ավանգարդի՝ բանվորական հեղափոխական կուսակցության ակտիվ գործունեության: Մեզ տվեք հեղափոխականների կազմակերպություն, և մենք Ռուսաստանը կհեղաշրջենք: Ահա բոլշևիկյան մտքի հոսանքի լենինյան այս բանալիի հաջող գործադրումով միայն Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատը կարողացավ հաղթանակի դափնիներով պսակել իր զանգվածային հեղափոխական-մարտիրոսների ճակատը:

Պատմական այն վճռական մոմենտին, երբ տարերային հեղափոխական շարժումը Ռուսաստանում հարց հարուցեց՝ ի՞նչ անել, միայն լենինյան տիպի

հեղափոխականները սպառիչ ու ճիշտ պատասխանեցին այդ կենսաթրթիռ հարցին։ Պատասխանեցին և՛ գործնականում, և՛ տեսականորեն։ «Ռուսաստանում հեղափոխական պրոլետարական կուսակցության սաղմը հանդիսացավ 1895 թվականին Վ. Ի. Լենինի ստեղծած Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը», որի շուրջը միավորվեցին երկրի մի շարք արդյունաբերական կենտրոնների սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները»։ Իր հանճարեղ ուսուցիչների մտքի ու գործի հանճարեղ շարունակող ու զարգացնող Լենինն անձնուրացորեն պայքարելով Ռուսաստանի ու արտասահմանյան բանվորական շարժման աջ ու «ձախ» օպորտունիստների, ռևիզիոնիստների դեմ, ջանք չէր խնայում, որպեսզի հեղափոխական շարժումը ձերբազատվի տարերայնության վիճակից, տոգորվի գիտակցականությամբ և զինվի մարքսիզմով, ըստ որի, այժմ աշխարհը հեղափոխականորեն վերափոխելն է ամեն մի իրոք առաջավոր սոցիալիստի անմիջական խնդիրը։ Նա գտնում էր, որ կապիտալիզմի մայրամուտի ու սոցիալիզմի հաղթության դարաշրջանում (որպիսին տասնիններորդ դարավերջը և քսաներորդ դարն է), հեղափոխական պրոլետարիատին անհրաժեշտ է նոր տիպի կուսակցություն, որը լինելով դասակարգի ավանգարդը, ոչ թե կոչված է արտացոլելու զանգվածների միջին վիճակը, այլ ընթանալու նրանց առջևից, որպես առաջավոր գաղափարների, աշխարհը հեղափոխող ու վերակազմող բանվոր դասակարգի ինտերնացիոնալիստական ձգտումների դրոշակակիր (տե՛ս ПСС, т. 35, стр. 94)։

Առանց սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնի, մարտունակ դասակարգի առավել գիտակից մասի ու մյուս զանգվածների սերտ միավորման, պրոլետարիատի նոր կուսակցությունը չի հասնի իր նպատակին։ Նա կոչված է լինելու սոցիալիստական հեղափոխության խորաթափանց ստրատեգը և հմտորեն վարելու դասակարգային մարտերը, երկաթյա կարգապահությամբ և գործի ու խոսքի միասնությամբ համակելու, գործնականապես կազմակերպելու և անհրաժեշտության դեպքում աներեր վարելու իշխանության գրավման նպատակով բանվոր դասակարգի մղելիք ճակատամարտը։

Բացի այս, մեծ Լենինի ստեղծած կուսակցությունը հիմնովին տարբերվեց Երկրորդ ինտերնացիոնալի օպորտունիստական կուսակցություններից։ «Լենինի բնորոշմամբ, կուսակցությունը պետք է գլխավորի պրոլետարիատի պայքարը հասարակության հեղափոխական վերափոխման համար, լինի կապիտալիզմից սոցիալիզմին և կոմունիզմին հեղափոխականորեն անցնելու առաջատար ուժը։ Հենվելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի դրույթների, ռուսաստանյան և համաշխարհային բանվորական շարժման փորձի վրա, ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմը իմպերիալիզմի դարաշրջանում, Լենինն ստեղծեց ամբողջական ուսմունք կուսակցության, որպես բանվոր դասակարգի հեղափոխական կազմակերպության բարձրագույն ձևի մասին, համակողմանիորեն մշակեց նրա տեսական ու կազմակերպական հիմունքները, բոլշևիզմի ստրատեգիան ու տակտիկան, կուսակցական կյանքի նորմերը և կուսակցական ղեկավարության սկզբունքները» («ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ՌՍԴԲԿ II համագումարի 70-ամյակի մասին»)։

Կազմակերպելով ու կոփելով բոլշևիկյան տիպի պրոլետարական կուսակցությունը Ռուսաստանում, Լենինը հրապարակավ բացահայտեց այն



ուշագրավ իրողությունը, որ մասսայական բանվորական շարժման գոյավորմամբ ամենուր մարքսիստական և օպորտունիստական հոսանքների առաջացումն ու բախումը դառնում են անխուսափելի, քանի որ աջ օպորտունիզմը արտահայտում է մանրբուրժուական խավերի շահերը։ Սակայն այդ տենդենցները Ռուսաստանում առավել ցայտունորեն են դրսևորվել, քան Եվրոպայում։

Լենինը, ստեղծելով դեմոկրատական ցենտրալիզմի ու գիտակցական կարգապահության սկզբունքներով զոդված կոմունիստների կուսակցություն, անդուլ դաստիարակում էր բանվոր հեղափոխականների նոր տիպի գործիչներ, որոնք ամենուր աչքի էին զարնում անձնուրացությամբ, ամեն տեսակի գաղափարական տատանումների հանդեպ ցուցաբերած անհաշտվողականությամբ և ձեռներեցությամբ։ Անլուր չարչարանքներով ու տառապանքներով ձեռք բերած միակ ճիշտ հեղափոխական տեսությունը՝ մարքսիզմը, լենինյան կուսակցության հետևողական պայքարի շնորհիվ, Ռուսաստանում դարձավ հեղափոխական մարտիկների մաքառումների միակ ուղեցույցը։ Դասակարգային անզիջում մարտերում թրծված Ռուսաստանն անցյալ դարի «...երկրորդ կեսում ուներ այնպիսի հարուստ ինտերնացիոնալ կապեր, հեղափոխական շարժման համաշխարհային ձևերի ու թեորիաների վերաբերմամբ այնպիսի գերազանց իրազեկություն, որպիսին չուներ աշխարհի և ոչ մի երկիր» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 11)։

Տակավին 1898 թվականին կայացած առաջին համագումարով ՌՍԴԲԿ-ն իր հիմնադրումը հռչակեց։ «Սակայն Լենինի ու աքսորում գտնվող նրա մերձավոր զինակիցների բացակայությամբ կայացած համագումարը չկարողացավ մշակել կուսակցության ծրագիր ու կանոնադրություն, հաղթահարել սոցիալ-դեմոկրատական շարժման տարրնթացությունը» («ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ՌՍԴԲԿ II համագումարի մասին»)։ Իրոք, պրոլետարական, հետևողական հեղափոխական մարքսիստական կուսակցության ստեղծման գործում անգնահատելի է Լենինի ստեղծած ու ղեկավարած «Իսկրա» լրագրի դերը։ Լենինի խոսքերով ասած, «Իսկրան» էր, որ «միավորեց Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատի ամբողջ ծաղիկը», ապահովեց նոր տիպի կուսակցության գոյավորման գաղափարական և կազմակերպական նախադրյալները և հսկայական պայքար ծավալեց հեղափոխական շարժման մեջ առկա օպորտունիստներից տարանջատվելու համար։

Ռուսաստանի հեղափոխական, լենինյան թևի մարքսիստները ՌՍԴԲԿ երկրորդ համագումար եկան գաղափարապես, քաղաքականապես ու կազմակերպորեն կազմ ու պատրաստ՝ շարունակելու այն վիթխարի պայքարը, որը մղել էին նրանք Լենինի գլխավորությամբ՝ հանուն մարքսիզմի անաղարտության, ընդդեմ «լեգալ մարքսիստների», «էկոնոմիստների», լիբերալ-բուրժուական ռևիզիոնիզմի ոտնձգությունների, «խմբակայնության», տարերայնության ջատագովների։

Ավելի քան երեք տասնամյակ տևող մարքսիստական կուսակցության ստեղծման սխրալի ու դժվարին պրոցեսն ավարտվեց ՌՍԴԲԿ երկրորդ համագումարում։ Հույժ բնորոշ է այն կրքոտ ու տևական պայքարը, որը ծավալվեց համագումարի նիստերում։ Բունդականների, «էկոնոմիստների» բազում գրոհները կուսակցության ծրագրի արմատական-հեղափոխական սկզբունքների՝ հատկապես պրոլետարական դիկտատուրայի հասկացողության դեմ, պատահական չէին։ Մերկացնելով ռուսաստանյան այդ քեռնշտայնականների

ակներև օպորտունիզմը, համագումարը ծրագրում հստակորեն սևեռեց մարքսիստական այն դրույթը, որ առանց պրոլետարական դիկտատուրայի հաստատման հնարավոր չէ հին հասարակության հեղափոխական վերակազմությունը, սոցիալիստական արտադրահարաբերությունների արմատավորումը:

Մեր կուսակցության պատմությունից հայտնի է այն բուռն վիճաբանությունը, որը բորբոքվեց կուսակցության կանոնադրության նախագծի շուրջ: Այդ հարցի մասին զեկուցող Վ. Ի. Լենինն իրեն հատուկ մտքի հստակությամբ ու խորությամբ հիմնավորեց մարքսիստական այն ըմբռնումը, որ կուսակցության անդամը պարտավոր է անշեղորեն իրագործել կուսակցության որոշումները, լինել կարգապահ և հավատարիմ մարքսիզմի գաղափարներին, ակտիվորեն մասնակցել կուսակցական կազմակերպության գործունեությանը: Գաղափարապես տատանվողները և հաշտվողականները չեն կարող հեղափոխական կուսակցության անդամի պատվավոր ու դժվարին դերը կատարել: «Մեր խնդիրն է,— շեշտել է Լենինը,— անաղարտ պահպանել մեր կուսակցության մաքրությունը, ամրությունը և տոկունությունը: Մենք պարտավոր ենք կուսակցության անդամի կոչումը և նշանակությունը բարձր, բարձր և առավել բարձր պահել» (ПСС, т. 7, стр. 290—291):

Միայն այս ելակետային և սկզբունքային հասկացության կիրառմամբ պրոլետարական կուսակցությունը կարող էր հաջողությամբ վարել հին կարգերի խորտակման և սոցիալիստական հասարակության կառուցման գործը:

Ելնելով պատմական նոր դարաշրջանի այն իրողությունից, որ հասել է հեղափոխական գործունեության, ընդ որում, զանգվածային գործունեության պահը, ապա ուրեմն բանվոր դասակարգի մարտերը վարող հեղափոխական կուսակցությունը պետք է լինի կուռ և միաձույլ, խիստ կարգապահ և տոկուն: Հետևաբար, կանոնադրությունը կոչված է ծառայելու հասունացող հեղափոխության պրակտիկային, զենքով քննադատության տակտիկային: Համագումարում ունեցած իր բազում ելույթներում Լենինը հավատարիմ մնաց մատերիալիստական դիալեկտիկայի իր անսահման խոր ըմբռնմանը: Պրոլետարիատի հանճարեղ ստրատեգի համոզմամբ, «ո՛չ թե մերկ բացասումը, ո՛չ թե անիմաստ բացասումը, ո՛չ թե սկեպտիկական բացասումը, տատանումը, կասկածն է բնորոշ և էական դիալեկտիկայի մեջ,— որն, անկասկած, պարունակում է բացասման տարր և այն էլ որպես իր կարևորագույն տարրը,— ո՛չ. այլ բացասումը որպես կապի մոմենտ, որպես զարգացման մոմենտ, դրականի պահպանմամբ, այսինքն՝ առանց որևէ տատանման, առանց որևէ էկլեկտիկայի» (Երկեր, հ. 38, էջ 279):

Պատմությունը քանիցս ապացուցեց, որ բոլշևիզմի հաղթանակը, ի թիվս մի շարք օբյեկտիվ գործոնների, ուներ նաև սուբյեկտիվ ազդակներ, որոնցից մեկը, անշուշտ, Վ. Ի. Լենինի հանճարն էր, նրա անսպառ իմաստնությունը և աշխարհի դիալեկտիկական ընթացքի համակողմանի իմացությունը, որը նա աքանչելի վարպետությամբ գործադրում էր նոր հասարակության ստեղծման համար մղվող մարտերում: Լենինի հակառակորդները երկրորդ համագումարում չկարողացան ըմբռնել, որ պատմության երթը շարունակվում է ավելի հուժկու թափով և աշխատավորական զանգվածների դերը հասարակական պրոգրեսում դարձել է ավելի քան վճռական ու վիթխարի: Դա այն պահն է, որ ժամանակին կանխատեսել էր Մարքսը, նշելով. երբ աշխատավորական զանգվածները տոգորվում են առաջավոր գաղափարներով, նրանց գրոհներն



անպայման կպսակվեն հաջողությամբ: Օժտված լինելով մտքի ստեղծարար ավյունով, ճշմարտության որոնման զարմանալի համառությամբ և տոկունությամբ, միջազգային սոցիալ-քաղաքական կյանքի խորիմացությամբ, բոլշևիզմի անվարան առաջնորդ Լենինը միաժամանակ մտքի տիտան էր, որը, երբ դեռ կյանքը վաղորդյան մշուշում էր, բոլորից վառ էր նշմարում նորի վերընթաց ընձյուղները: Նրա համոզմամբ՝ կոմունիզմը բողբոջում է հասարակական կյանքի բոլոր կողմերից, դրա ծիլերը կան ամենուր, և կյանքը կհաղթի անպայման:

Լենինյանների պատմական ակտը՝ 1903 թվականին բոլշևիկյան կուսակցության ստեղծումը, այն շրջադարձն էր, որը նշանավորեց ստեղծագործական մարքսիզմի հաղթանակը և իր խոր կնիքը դրոշմեց համաշխարհային հեղափոխական շարժման ընթացքի վրա: II ինտերնացիոնալի կրախը տեղի տվեց մարքսիզմ-լենինիզմի կենսալի առաջընթացին: Այս առթիվ Լենինը նշել է. «Նրանց սնանկացման հիմնական պատճառն այն էր, որ նրանք «տարվեցին» բանվորական շարժման և սոցիալիզմի աճման մեկ որոշ ձևով միայն, մոռացան այդ ձևի միակողմանիությունը, վախեցան տեսնել այն սուր բեկումը, որն անխուսափելի դարձավ օբյեկտիվ պայմանների հետևանքով, և շարունակեցին կրկնել այն հասարակ, սերտած, առաջին հայացքից անվիճելի ճշմարտությունները, թե երեքը մեծ է երկուսից: Բայց քաղաքականությունն ավելի նման է հանրահաշվին, քան թվաբանությանը և, առ առավել բարձրագույն մաթեմատիկային, քան տարրականին: Իրականության մեջ սոցիալիստական շարժման բոլոր հին ձևերը լցվեցին նոր բովանդակությամբ, այդ պատճառով էլ թվանշանների առջև երևաց նոր նշան՝ «մինուս», իսկ մեր իմաստակները համառությամբ շարունակեցին (և շարունակում են) հավատացնել իրենց և այլոց, թե «մինուս երեքը» մեծ է «մինուս երկուսից» (Երկեր, հ. 31, էջ 111—112):

Ըստ էության կուսակցության երկրորդ համագումարում, դրանից առաջ և այնուհետև լենինյանների բոլոր հակառակորդները Ռուսաստանում ևս ընթացան պառլամենտական սոցիալիզմի, մերկապարանոց օպորտունիզմի ուղիով և այդպիսով ի վերջո կտրեցին մարքսիզմի հետ ունեցած իրենց թույլ կապերը: Ուստի, ՌՍԴԲԿ երկրորդ համագումարում լենինյանների հաղթանակն ըստ էության, գիտական կոմունիզմի կուսակցության, աշխարհը հեղափոխական մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով ու գործելակերպով վերափոխողների հաղթությունն էր: Համագումարի գլխավոր խնդիրը, ըստ Լենինի, «Իսկրայի» մշակած ու հրապարակած կազմակերպական և սկզբունքային հիմունքներով իրական կուսակցության ստեղծումն էր:

Երկրորդ համագումարը մշակեց ու հաստատեց կուսակցության ծրագիրը, որում մարքսիստական կոնկրետ վերլուծությամբ սևեռված են պրոլետարիատի ինչպես մերձավոր խնդիրները բուրժուա-դեմոկրատական հեղափոխության ընթացքում (մինիմում ծրագիր), նմանապես և նրա անելիքները սոցիալիստական հեղափոխության ժամանակ (մաքսիմում ծրագիր): Համագումարի հաստատած ծրագիրը հանդիսացավ հեղափոխական պրոլետարիատի հուսալի ուղեցույցը՝ կալվածատերերի ու կապիտալիստների գերիշխանության խորտակման և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար մղվող մարտերում:

Համաշխարհային բանվորական շարժման շրջադարձային փուլը հանդի-

ացող ՌՍԴԲԿ երկրորդ համագումարը շարունակեց և բազմապատկեց Մարքսի ու Էնգելսի ղեկավարած միջազգային հեղափոխական շարժման փառավոր ավանդույթները, հիմնովին սասանելով II ինտերնացիոնալի հեղինակությունը միջազգային պրոլետարիատի աչքում: «Առաջին անգամ պրոլետարիատն ունեցավ մի կազմակերպություն, որն ունակ է պատմական նոր պայմաններում հաջողությամբ վարելու նրա պայքարը սոցիալական ազատագրության համար» (տե՛ս «ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ»): Այդ իրողության շնորհիվ բոլշևիկյան կուսակցությունը Ռուսաստանում դարձավ պրոլետարիատի ազատագրական, ինտերնացիոնալիստական վեհ ձգտումներն իրականացնող կուսակցություն, որին հաջողվեց կռել ու կոփել պրոլետարական հեղափոխական ջոկատները ռեակցիայի մղձավանջային տարիներին, անողոք պայքար մղել II ինտերնացիոնալի ղեկավարների շովինիստական-դավաճանական գործելակերպի դեմ և բարձր ծածանել մարքսիզմի ինտերնացիոնալիստական դրոշը, զարգացնել ու առաջ մղել ազգային-ազատագրական շարժումների վերաբերյալ մարքսիստական ուսմունքը:

Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատը, դաստիարակված հետևողական հեղախոխական մարքսիզմի գաղափարներով, սոցիալիստական հեղափոխության հորձանուտը նետվեց քաղաքական մարտերում թրծված կոմունիստական կուսակցության, նրա հանճարեղ առաջնորդի ղեկավարությամբ: Մարքսիզմ-լենինիզմի անսխալ դրույթներով զինված, նա հանդես բերեց զանգվածային խիզախության ու գաղափարական նվիրվածության միլիոնավոր օրինակներ և դասակարգային թեժ կռիվներում վերջնական հաղթանակ տարավ: Հաղթանակ, որով սկսվեց իմպերիալիզմի գահավիժման և սոցիալիզմի կառուցման նոր դարաշրջանը:

Ռուսաստանի կոմունիստները՝ հավատարիմ իրենց գաղափարի ու գործի կենդանի միասնությանը, հաղթության հաջորդ օրն իսկ ի լուր մարդկության հռչակեցին մարքսիստական հումանիզմի այն արդարագույն նշանաբանը, որ իրենք խաղաղությամբ են ընձեռում կոմունիզմի, նոր աշխարհի կառուցումը, այլ ոչ թե հրով ու սրով կամ խաչակրաց արշավանքներով:

Հոկտեմբերյան սոցիալիստական աշխարհաշեն հեղափոխության՝ խաղաղության, հողի ու գործարանների հանրայնացման, բանվորագյուղացիական իշխանության հաստատման, ազգերի ինքնորոշման վերաբերող դեկրետները տոգորված են սոցիալական, ազգային ամեն կարգի կեղեքման վերացման և մարդկանց ստեղծարար աշխատանքի թագավորության հիմնադրման հումանիստական իդեալներով: Լենինյանները բնավ չեն թաքցրել իրենց այն հայացքը, որը խարսխված է անագորույն պատմական դասերի վրա. մարդկության «...ողջ զարգացումն ընթանում է հասարակության մի մասի բռնի իշխանությունը մյուսի նկատմամբ ոչնչացնելու» հունով և դա հնարավոր է միայն կեղեքող դասակարգերին բռնի տապալելու միջոցով, «...թեև մեր իդեալում մարդկանց նկատմամբ բռնացումը տեղ չունի», ասում էր Լենինը (ПСС, т. 30, стр. 122):

Այսպիսով, մեր դարաշրջանի միակ հետևողական հումանիստները կոմունիստներն են, որոնք դա ապացուցեցին իրենց իմաստալի պատմությամբ, փառավոր գործունեությամբ: Չի եղել աշխարհում մի այլ կուսակցություն, ինչպես բոլշևիկյանն է, որում կամովին ի մի են ձուլված բոլոր ազգերի լե-



նինյանները, որոնք տոգորված են գիտական կոմունիզմի ինտերնացիոնալիստական վսեմ գաղափարներով: Այդ գաղափարների անշեղ կենսագործմամբ, եղբայրական անձնուրաց համագործակցությամբ, երբեմնի սակավաթիվ բոլշևիկները գլխավորեցին սովետական բոլոր ազգերի ու ժողովուրդների հերոսական կռիվը ներքին և արտաքին թշնամիների դեմ, մաքրեցին հայրենիքը հին աշխարհի պորտաբույծներից և ձեռնամուխ եղան նոր, սոցիալիստական հասարակության ստեղծմանը:

Չպետք է մոռանալ, որ սոցիալիզմ կառուցող ՍՍՀՄ ժողովուրդներն ընթանում էին մինչ այդ պատմության մեջ չտրորված ուղիներով, շրջափակված կապիտալիստական գիշատիչների բանակներով, դասակարգային պայքարի դժվարին հանգամանքներում: Այս դեպքում ևս փայլատակեց լենինյան հանճարի լույսը, որի շնորհիվ կուսակցությունը կարողացավ գտնել և գիտականորեն հիմնավորել սոցիալիստական հասարակարգի կառուցման հոյակապ պլանը: Մի անգամ ևս հաստատվեց երեք հեղափոխությունների, քաղաքացիական կռիվների ու ռազմական ինտերվենցիայի, ֆաշիստական Գերմանիայի ոհմակների դեմ մղվող կռվի բոցերում թրծված կոմունիստական կուսակցության տեսության ու գործունեության անխզելիությունը, նրա լենինյան իմաստնության արարչագործությունը:

Լենինյան կուսակցության ղեկավարությամբ, ՍՍՀՄ հրաշագործ բանվորությունը, աշխատավոր գյուղացիությունն ու մտավորականությունը վիթխարի ջանասիրությամբ սոցիալիստական հասարակարգ հաստատեցին մեր անծայրածիր հայրենիքում: Ոչ միայն սոցիալիզմի կառուցման հնգամյակներին, այլև մեծ Հայրենականի դաժան տարիներին, սովետական ազգերն ու ժողովուրդները, որոնք դաստիարակված էին մարքսիզմ-լենինիզմին հավատարմության ոգով, մեկ մարդու պես կուրծք տվին ֆաշիստական զավթիչներին և արյունահեղ կռիվներում ջախջախեցին նողկալի թշնամուն, փրկեցին մարդկությունը ֆաշիստական ժանտախտից:

Այդ, հիրավի, պատմական հաղթանակը խթանեց Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների աշխատավոր զանգվածների հեղափոխական պայքարին, որոնք սովետական բանակի օգնությամբ ազատագրվելով ֆաշիզմի լծից, ընթացան սոցիալիզմի ուղիով: Սոցիալիստական կարգեր հաստատվեցին Եվրոպայի, Ասիայի մի շարք երկրներում: Վաղուց ի վեր բարգավաճում է ու ծաղկում համաշխարհային սոցիալիստական համակարգը, վերջնականապես փլուզվում է գաղութային սիստեմը, իմպերիալիզմը չի կարողանում իր կամքը թելադրել աշխարհին, ինչպես անցյալում: Այժմ սոցիալիստական աշխարհն է մարդկության առաջատար ուժը:

ՍՄԿԿ հանդիսանալով հետևողական պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի կուսակցություն, շարունակում ու զարգացնում է լենինյան սերնդի փառավոր տրադիցիաները, որոնք եղել ու մնում են կոմունիզմի կառուցման գաղափարական գործոնները: Այդ «Ինտերնացիոնալիզմի դրոշով նա բազմազգ սովետական երկրի աշխատավորներին բոլոր փորձությունների միջոցով հասցրեց համաշխարհային պատմական նշանակություն ունեցող հաղթանակների ու նվաճումների: Ինտերնացիոնալիզմը, նացիոնալիզմի ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ անհաշտությունը մեր կյանքի օրենքն է, կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման կա-

բնորոշագույն պայմանը» («ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ՌՍԴԲԿ II համագումարի 70-ամյակի մասին»):

Սովետական ժողովուրդը, շարունակելով ընթացող կոմունիստական հասարակության կառուցման լենինյան ուղիով, մեծագույն եռանդով կենսագործում է հարազատ կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումները և ջանք չի խնայում հերոսական աշխատանքով ժամկետից շուտ կատարելու իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա պլանները: Սոցիալիստական մեր հայրենիքի բոլոր աշխատավորները ստեղծարար գործերով են ապացուցում իրենց նվիրվածությունը ՍՄԿԿ վարած կուրսին:

Մեր բազմազգ երկրի միլիոնավոր աշխատավորներն օրինական հպարտությամբ են հիշում բոլշևիկների փառապանծ կուսակցության հերոսական ողջ պատմությունը, որն այսօր ոգևորում ու նորանոր սխրանքների է մղում նրանց: Հանճարեղ Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցության 70-ամյա ուղին, վիթխարի մեծագործություններով հարուստ նրա պատմությունն այսօր դարձել են աշխարհի բոլոր հեղափոխական ուժերի, խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար պայքարող բազմամիլիոն մարտիկների ոգեշնչման ու գիտելիքների հարստացման անսպառ աղբյուրը: Սովետական ժողովրդի մարտական ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության փառահեղ տարեգրությունը ակնառու համոզչությամբ ապացուցում է, թե ինչպիսի վիթխարի ու բախտորոշ դեր է խաղացել ՍՄԿԿ-ն մեր անծայրածիր հայրենիքի բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի ճակատագրում: Այս, հիրավի, մեծանշանակ եղելությունն ավելի է ամրապնդում կուսակցության ու սովետական ժողովրդի անխորտակ միասնությունը, բարձրացնում ՍՍՀՄ բոլոր աշխատավորների հայրենասիրական ոգին՝ պատվով կատարելու ՍՄԿԿ XXIV համագումարի հոյակապ կանխագծումները:

Ուսումնասիրելով պատմական փորձը, աշխատավոր զանգվածներն առավել պարզորոշ են ըմբռնում կուսակցության ներկայիս վիթխարածավալ գործերի վեհությունն ու ժամանակակից պրոբլեմների բարդությունը: Սխրալի անցյալի իմացումն օգնում է ավելի խոր ընկալելու կուսակցության լենինյան քաղաքական կուրսի ճշտությունը, որն իր ստեղծագործական մարմնացումն է գտել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում:

Սովետական ժողովուրդը միահամուռ հավանություն է տալիս և պաշտպանում ՍՄԿԿ Կենտկոմի վարած խաղաղասիրական կուրսին, քաջ գիտակցելով, որ «XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի իրականացման՝ ՍՄԿԿ-ի արտաքին քաղաքականության կուրսը ապահովում է մեր երկրում կոմունիստական շինարարության բարենպաստ արտաքին պայմաններ, համաշխարհային սոցիալիստական համագործակցության ամրապնդում, նպաստում է բանվորական և ազգային-ազատագրական շարժմանը: Նա ուղղված է իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության դեմ, խաղաղ գոյակցության սկզբունքների և հակադիր սոցիալական սիստեմ ունեցող պետությունների հետ փոխշահավետ համագործակցության հաստատման, ընդհանուր խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման, ամբողջ աշխարհում սոցիալական առաջադիմության ապահովման նպատակին: Այդ կուրսը համապատասխանում է բոլոր ժողովուրդների շահերին» («ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ՌՍԴԲԿ II համագումարի 70-ամյակի մասին»):

Ո՞ւմ հայտնի չէ, որ սովետական քաղաքացիների համար վաղուց միս ու



արյուն է դարձել սոցիալիստական հայրենիքի նշանավոր տարեթվերի ու տոների հավերժացումը կենդանի գործերով: Գործեր, որոնք, անշուշտ, պահանջում են աշխատողների ստեղծարար եռանդի բազմապատկում, առավելագույն արդյունավետություն հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա պլանների կատարման բոլոր մարզերում, արտադրակարողությունների լիակատար օգտագործում, աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացում, առկա ռեզերվների հայտաբերում ու շահավետ օգտագործում, խնայողության ռեժիմի խստագույն պահպանում, աշխատանքային պրոցեսների գիտական կազմակերպում, ամենօրյա և զանգվածային պայքար հանրային հարստության հափշտակողների, ամեն կարգի ապօրինությունների դեմ, տնտեսության բոլոր ճյուղերի տարեկան պլանների ու ստանձնած պարտավորությունների ժամկետից շուտ և որակյալ կատարում: Ահա թե որպիսի իրական գործերով են նշանավորում մեր աշխատավորները հարազատ կուսակցության հոյակապ կանխագծումները:

Ինչպես միշտ, այնպես և այսօր, հանրապետության կոմունիստները կշարունակեն նոր եռանդով ու մեծ կազմակերպվածությամբ գլխավորել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի հաստատած ծրագրի հետևողական կենսագործումը, նախ և առաջ աշխատավորական զանգվածների ստեղծագործ մրցման հրահրմամբ ու իրական կազմակերպմամբ, նրանց գաղափարական-քաղաքական դաստիարակության հույժ շնորհակալ գործի մակարդակի առավել բարձրացմամբ:

Նշելով ՌՍԴԲԿ II համագումարի տարելիցը, մեր հանրապետության կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները՝ մասսաների կոմունիստական դաստիարակության նպատակով, լայնորեն օգտագործում են Հոկտեմբերի 50-ամյակի, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, ՍՄԿԿ XXIV համագումարի հետ կապված կուսակցական փաստաթղթերը, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ շարադրված դրույթները:

Լենինյան կուսակցության բազմահարուստ պատմությունը, մարքս-լենինյան անմահ գաղափարները, ՍՄԿԿ հեղափոխական փորձն ու ուսանելի տրադիցիաներն այն գրանիտյա հիմքն են, որի վրա խարսխվում է կոմունիզմի կառուցման հերոսապատումներով լի առօրյան: ՍՄԿԿ պատմությունը մասսաներին սովորեցնում է հաստատակամորեն պայքարել կոմունիզմի վեհ իդեալների համար, հաջողությամբ իրականացնել լենինյան կուսակցության արդի ժամանակաշրջանի համաշխարհային-պատմական մեծ նշանակություն ունեցող կանխագծումները:

# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԿԱԼԻ ՏԱՐԵԹԻՎԸ

**Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
Հայկ. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

«ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 70-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը խորապես բացահայտում է այդ փառապանծ տարեդարձի դերը լենինյան կուսակցության ու սովետական երկրի, կոմունիստական և բանվորական շարժման պատմության մեջ։ «Համագումարի համաշխարհային պատմական նշանակությունն այն է,— նշում է ՍՄԿԿ Կենտկոմը,— որ այդ համագումարում ավարտվեց հեղափոխական մարքսիստական կազմակերպությունների միավորման պրոցեսը և կազմավորվեց Ռուսաստանի բանվոր դասակարգի կուսակցությունը՝ գաղափարա-քաղաքական ու կազմակերպական այն սկզբունքների հիման վրա, որոնք մշակվել են Վ. Ի. Լենինի կողմից։ Երևան եկավ նոր տիպի պրոլետարական կուսակցություն՝ բոլշևիկների կուսակցությունը, լենինյան Մեծ կուսակցությունը»։

Իր գոյության 70 տարիների ընթացքում Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն անցել է պայքարի ու հաղթանակների փառահեղ ուղի։ Խոր ընդհատակում գործող մարքսիստական խմբերից ու խմբակներից նա աճել դարձել է կոմունիստների հզոր, համախմբված, մոտ 15 միլիոնանոց մի անպարտելի բանակ՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառավարող կուսակցություն, համաշխարհային կոմունիստական շարժման ավանգարդը, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը։

* * *

XX դարի սկզբին՝ ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի նախօրյակին, հեղափոխական շարժման կենտրոնը Արևմտյան Եվրոպայից փոխադրվել էր Ռուսաստան, որը իմպերիալիզմի բոլոր հակասությունների հանգուցակետն էր։ Այստեղ հասունանում էր բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը, որը պետք է կատարվեր հասարակական զարգացման ավելի բարենպաստ պայմաններում, քան այդ տեղի էր ունեցել Արևմուտքում բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների ժամանակաշրջանում։



Ռուսաստանի պրոլետարիատի համաշխարհային պատմական դերի մասին Վ. Ի. Լենինը 1902 թ. նշում էր. «Պատմությունն այժմ մեր առջև դրել է մերձավորագույն մի խնդիր, որ ամենահեղափոխականն է հանդիսանում որևէ այլ երկրի պրոլետարիատի բոլոր մերձավորագույն խնդիրներից։ Այդ խնդրի իրականացումը, ոչ միայն եվրոպական, այլ նաև (կարող ենք մենք այժմ ասել) ասիական ռեակցիայի ամենահզոր հենակի խորտակումը ռուսական պրոլետարիատին կդարձներ միջազգային հեղափոխական պրոլետարիատի ավանգարդ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 5, էջ 492)։

Այդ խնդիրը լուծելու համար Ռուսաստանի հեղափոխական մարքսիստները պետք է ստեղծեին բանվոր դասակարգի կուսակցություն, որի բնույթից, կազմակերպվածությունից ու գործունեությունից էր կախված հեղափոխության բախտը, բանվոր դասակարգի պայքարի ելքը իր տնտեսական ու քաղաքական ազատագրության համար։ Պատմական նշանակություն ունեցող այդ գործն սկսվեց 80-ական թվականներից, Ռուսաստանում մարքսիզմի պիոներ Գ. Վ. Պլեխանովի «Աշխատանքի ազատագրություն» խմբի հիմնադրումով (1883 թ.), որը գաղափարական լուրջ հարված հասցրեց նարոդնիկությանը և առաջին քայլն արեց՝ միանալու երկրում սկսված բանվորական շարժմանը։ Սակայն մինչև 90-ական թվականների կեսերը, մինչև Լենինի հեղափոխական գործունեության սկիզբը, մարքսիզմը Ռուսաստանում մնում էր միայն որպես գաղափարական հոսանք, անջատ բանվորական շարժումից։ Ռուսաստանում մարքսիստական կուսակցության ստեղծման խնդիրը լուծեց Լենինը։



Այդպիսի կուսակցության սաղմը հանդիսացավ 1895 թ. Լենինի կողմից հիմնադրված՝ Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի Միությունը»։ Ելնելով համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդներ և ուսուցիչներ Մարքսի ու Էնգելսի դրույթներից, բանվորական շարժման հարուստ փորձի հիման վրա, նոր պայմաններում ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմը, Լենինն ստեղծեց ամբողջական ուսմունք կուսակցության, որպես բանվոր դասակարգի հեղափոխական կազմակերպության բարձրագույն ձևի մասին։

1898 թ. մարտին Մինսկում գումարված ՌՍԴԲԿ առաջին համագումարը, որին Լենինը և նրա մերձավորագույն զինակիցները չէին մասնակցում աքսորում գտնվելու պատճառով, միայն հռչակեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության ստեղծումը։ Այն չկարողացավ մշակել կուսակցության ծրագիր և կանոնադրություն, հաղթահարել սոցիալ-դեմոկրատական շարժման տարրնթացությունը, միավորել տեղական կազմակերպությունները։ Ռուսաստանում պրոլետարական կուսակցության ստեղծման ճանապարհին հսկայական դժվարություններ կային։ Ցարական կառավարությունը դաժանորեն հետապնդում էր հեղափոխականներին, ջախջախում նրանց կազմակերպությունները։ Բազմաթիվ թշնամիներ կային նաև բանվորական շարժման ներսում, որոնցից ամենավտանգավորն այն ժամանակ «էկոնոմիզմն» էր, միջազգային օպորտունիզմի ռուսական ջոկատը։

Գաղափարական տարրնթացության և կազմակերպական տնայնագործության պայմաններում Լենինը բազմակողմանիորեն մշակեց կուսակցության ստեղծման իր պատմական պլանը և իր զինակիցների հետ միասին պայքարեց

ղրա կենսագործման համար: Այդ պլանում վճռական տեղը տրվում էր համառուսաստանյան քաղաքական թերթի ստեղծմանը: Այդպիսի թերթ եղավ լենինյան «Իսկրա»-ն, որի առաջին համարը լույս տեսավ 1900 թ. դեկտեմբերին: «Մեր առաջ,— գրում էր Լենինը,— իր ամբողջ ուժով կանգնած է թշնամու ամրոցը, որտեղից մեր գլխին ռումբերի և գնդակների տարափ է տեղում, խլելով մեր լավագույն մարտիկների կյանքը: Մենք պետք է գրավենք այդ ամրոցը, և մենք կգրավենք այն, եթե արթնացող պրոլետարիատի բոլոր ուժերը միացնենք ռուս հեղափոխականների բոլոր ուժերին և դարձնենք մի կուսակցություն, որին կձգտի այն ամենը, ինչ Ռուսաստանում կենդանի է ու ազնիվ» (Երկեր, հ. 4, էջ 477):

«Իսկրա»-ն իր ողջ ուժերը նվիրեց հենց այդպիսի հեղափոխական մարքսիստական կուսակցության ստեղծմանը: Այդ գործում անգնահատելի դեր կատարեց Լենինի 1902 թ. մարտին լույս տեսած «Ի՞նչ անել» գիրքը, որում շարադրեց ու հիմնավորեց կուսակցության ստեղծման պլանը: «Տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն— և մենք շուռ կտանք Ռուսաստանը»,— ասում էր Լենինը «Ի՞նչ անել»-ում (Երկեր, հ. 5, էջ 622):

Լենինյան «Իսկրա»-ի շուրջը համախմբվեցին Ռուսաստանը շուռ տալու պատրաստ կուսակցական տեղական կոմիտեները, պրոֆեսիոնալ հեղափոխականների մի ամբողջ սերունդ, որոնց թվում էին՝ Ի. Վ. Բաբուշկինը, Ն. Է. Բաումանը, Վ. Զ. Կեցխովելին, Ի. Ք. Լալայանցը, Մ. Ի. Կալինինը, Ն. Կ. Կրուպսկայան, Մ. Մ. Լիտվինովը, Մ. Գ. Ցխակայան, Բ. Մ. Կնունյանցը, Գ. Ի. Պետրովսկին, Յ. Մ. Սվերդլովը, Ս. Գ. Շահումյանը, Ի. Վ. Ստալինը, Ն. Ա. Սկրիպնիկը, Ռ. Ս. Զեմլյաչկան, Ե. Դ. Ստասովան, Մ. Ազիզբեկովը և շատ ուրիշ իսկրայականներ:

Իր գործունեության երեք տարիների ընթացքում «Իսկրա»-ն, Լենինի խոսքերով ասած, միավորեց Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատի ամբողջ ծաղիկը և բազմակողմանիորեն նախապատրաստեց կուսակցության ստեղծումը: «Բոլշևիզմը,— գրել է Լենինը,— երեք տարվա ընթացքում, 1900—1903, վարեց հին «Իսկրա»-ն և պայքարի դուրս եկավ մենշևիզմի դեմ իբրև մի ամբողջական ուղղություն» (Երկեր, հ. 16, էջ 61):

* * *

ՌՍԴԲԿ երկրորդ համագումարը բացվեց 1903 թ. հուլիսի 30-ին, ժամը 2 անց 55 րոպեին: Նրա աշխատանքներն ընթացան մինչև օգոստոսի 10-ը՝ սկզբում Բրյուսելում, ապա Լոնդոնում: Համագումարի գլխավոր խնդիրն էր ինչպես նշել է Լենինը. «Իսկական կուսակցություն ստեղծելն այն սկզբունքային ու կազմակերպական հիմունքներով, որոնք առաջադրել և մշակել է «Իսկրա»-ն» (Երկեր, հ. 7, էջ 259):

II համագումարին մասնակցում էին 43 պատգամավոր՝ 51 վճռական և 14 խորհրդակցական ձայնով: Նրանք ներկայացնում էին 26 կուսակցական կազմակերպություն: Համագումարում հեղափոխական մարքսիստների և օպորտունիստական տարրերի միջև ծավալված պայքարի ընթացքում առաջացան երեք հիմնական խմբավորումներ՝ մեծամասնության իսկրայականներ (Լենինի և Պլեխանովի կողմնակիցները), փոքրամասնության իսկրայականներ (Մարտովի կողմնակիցները), հակաիսկրայականներ («էկոնոմիստներ», բունդականները): Դրանցից բացի, կար նաև կենտրոն կամ «ճահիճ»,— որը տատանվում էր իսկրայականների և հակաիսկրայականների միջև:



Կայուն իսկրայականներն ունեին 24 ձայն, որոնցից 8-ը՝ 2-ական ձայն: Կայուն իսկրայականների թվում էին Ռուսաստանի կուսակցական խոշորագույն կոմիտեների ներկայացուցիչները՝ Պետերբուրգի կոմիտեից՝ Ա. Վ. Շոտմանը, Մոսկվայի կոմիտեից՝ Ն. Է. Բաումանը, Բաքվի կոմիտեից՝ Բ. Մ. Կնունյանցը, Դոնի կոմիտեից՝ Ս. Ի. Գուսևը, Կիևի կոմիտեից՝ Պ. Ա. Կրասիկովը, Օդեսայի կոմիտեից՝ Ռ. Ս. Զեմլյաչկան; «Հյուսիսային միությունից»՝ Լ. Մ. Կնիպովիչը և Ա. Մ. Ստոպանին, Տուլայի կոմիտեից՝ Ս. Ի. Ստեպանովը և Դ. Ի. Ուլյանովը, Բաթումի կոմիտեից՝ Ա. Գ. Զուրաբովը և ուրիշներ:

Համագումարի պատգամավորների կազմը բազմազգ էր. նկատի ունենալով այդ, Լենինը նշել է, որ համագումարը և՛ վելիկոռուս, և՛ հրեա, և՛ վրացի, և՛ հայ մարքսիստների բարձրագույն ժողով էր: Նշելով համագումարում ձևավորված հիմնական խմբավորումների մասին, վճռական ձայնով կայուն իսկրայականների 20 պատգամավորների մեջ Լենինը թվարկում է— երկուական ձայնով Ռուբենը (հայ)— Բաքվից, Ռաշիդ-Բեկը (հայ)— Բաթումից, Իսարին (վրացի)— Թիֆլիսից: Ապա Լենինը նշում է 20 լիիրավ տեղական կազմակերպությունները, որոնց թվում 10, 11, և 12-րդը Բաքուն, Բաթումը և Թիֆլիսն են:

Կովկասյան պատգամավորները ակտիվ մասնակցություն են ունենում համագումարի աշխատանքներին: Նրանք մտնում են համագումարում կազմված օրգանների, հանձնաժողովների կազմում, ելույթներ են ունենում, տեղեկանքներ տալիս, բանաձևեր առաջադրում:

Համագումարի առաջին իսկ օրվանից պայքար սկսվեց Վ. Ի. Լենինի կողմնակիցների և նրա հակառակորդների միջև: «Բունդի տեղը կուսակցության մեջ» հարցը քննարկելիս հանդես են գալիս երկու հակադիր տենդենցներ՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որը պաշտպանում էին իսկրայականները, և մանրբուրժուական նացիոնալիզմը, որի քարոզողները հակաիսկրայականներն էին: Համագումարին ներկայացված բունդի կանոնադրության նախագծում կուսակցական կազմակերպությունների տերիտորիալ սկզբունքին հակադրվում էր ազգային սկզբունքը: Կովկասյան պատգամավորները հանդես եկան բունդականների նացիոնալիստական դիրքորոշման խիստ քննադատությամբ: Հանդես գալով բունդի սեպարատիստական քաղաքականության մերկացմամբ, Բ. Կնունյանցը ասում է. «Ես հաճույքով եմ նշում այն փաստը, որ մեզանում միանգամայն բացակայում է կազմակերպական սեպարատիզմը, որը վերջին ժամանակներս այնքան ուժեղ է արտահայտվում Բունդի մեջ: Մեր քաղաքներից յուրաքանչյուրում գոյություն ունեն կուսակցական կոմիտեներ, որոնք գործում են մի քանի լեզուներով, մինչև այժմ միայն երեք (ռուսերեն, վրացերեն և հայերեն): Եվ, չնայած դրան, մինչև այժմ դրանից ոչ մի անհարմարություն առաջ չի եկել, և շարժման հաջողությունը Կովկասում չի թուլացել: Ըստ իս, ներկայումս Բունդում տիրապետող տենդենցը սոցիալիզմի հետ ոչ մի ընդհանուր բան չունի»: Այնուհետև հիմնավորելով, որ Ռուսաստանի ինչպես հրեա, այնպես էլ մյուս ազգությունների պրոլետարիատի դասակարգային շահերի միջև հակասություններ չկան, Բ. Կնունյանցը հայտարարում է. «Ես գտնում եմ, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ հանդիսանում է ամբողջ Ռուսաստանի ամբողջ պրոլետարիատի ներկայացուցիչը... Եթե մենք մեր յուրաքանչյուր պատգամավորի պետք է ընդունենք որպես ազգային խմբերի ներկայացուցիչ, ապա ես ինձ պետք է համարեմ Կովկասում բնակվող

ռուս, վրացի, հայ, ադրբեջանցի և հրեա պրոլետարիատի ներկայացուցիչ.
բայց ես հաճույքով հրաժարվում եմ այդպիսի երկար տիտղոսից, որպեսզի
վերցնեմ Ռուսաստանի պրոլետարիատի ներկայացուցչի համեստ տիտղոսը»։

Բունդականների խիստ քննադատությամբ համագումարի 6-րդ նիստում
հանդես է գալիս Ա. Զուրաբովը։ Նշելով, որ սոցիալ-դեմոկրատիան պետք է
ձգտի բոլոր կազմակերպությունների միավորմանն ու միաձուլմանը, թույլ
չտալով ազգային կազմակերպությունների հանդես գալը առանց ծայրահեղ
անհրաժեշտության, Զուրաբովն ընդգծում է. «Ամեն մի սոցիալ-դեմոկրատիա
պայքարում է ամեն մի ճնշման դեմ, հետևաբար այդ է անում նաև Ռուսաս-
տանյան սոցիալ-դեմոկրատիան»։

Կովկասյան պատգամավորները հանդես եկան բունդականների նացիոնա-
լիստական դիրքորոշման խիստ քննադատությամբ։

ՌՍԴԲԿ ծրագրի քննարկմանը համագումարում նվիրվեց 9 նիստ։ Ծրագրի
նախագիծը նախապատրաստել էր «Իսկրա»-ի խմբագրությունը, նրա յուրա-
քանչյուր կետ քննարկվում և ընդունվում էր առանձին։ Ելույթներ ունեցավ
համագումարի պատգամավորների մեծ մասը. օպորտունիստները համառ հար-
ձակումներ էին գործում Լենինի և նրա կողմնակիցների դեմ։ Չնայած երկար
քննարկումից հետո ՌՍԴԲԿ իսկրայական ծրագիրն ամբողջությամբ ընդունվեց՝
շահելով համագումարի բոլոր ձայները, հակաիսկրայական Ակիմովից բացի,
սակայն նրա առանձին կետեր խիստ վիճարկվեցին։

Կայուն իսկրայականները Վ. Ի. Լենինի գլխավորությամբ վճռականորեն
պաշտպանեցին պրոլետարիատի դիկտատուրայի մասին մարքսիստական հիմ-
նական դրույթը, որը համագումարի պատմական հաղթանակն էր օպորտու-
նիստների դեմ։

Լուրջ վիճաբանություններ առաջացան ազգային հարցի քննարկման ժա-
մանակ. Վ. Ի. Լենինը դեռևս մինչև համագումարը մշակել էր մարքսիստական
ազգային ծրագրի տեսական հիմունքներն ու պրակտիկ պահանջները։ Լենինն
առաջ էր քաշել «Պետության մեջ մտնող բոլոր ազգերի համար ինքնորոշման
իրավունքի՝ ընդհուպ մինչև անջատվելն ու ինքնուրույն պետություն կազմելը՝
պատմական կոնկրետ պայմաններին համապատասխան» պահանջը, որն ա-
պահովում էր բանվոր դասակարգի ինտերնացիոնալ միասնությունը։ Ծրա-
գրում դա ձևակերպված էր այսպես՝ «Պետության կազմում մտնող բոլոր ազ-
գերի ինքնորոշման իրավունք»։ Այս կետի դեմ ոչ ոք չառարկեց, միայն լրա-
ցումներ եղան։ Հետագայում Վ. Ի. Լենինը այդ մասին գրել է. «Համագումա-
րում, թեև այնտեղ կային 5 բունդական՝ 5 ձայնով և 3 կովկասցի՝ 6 ձայնով,
չհաշված Կոստրովի խորհրդակցական ձայնը, ինքնորոշման կետը վերացնելու
կողմնակից մի հատիկ ձայն անգամ չգտնվեց։ Այդ կետին «կուլտուր-ազգային
ավտոնոմիա» բառերն ավելացնելու օգտին արտահայտվեցին երեք ձայն... և
չորս ձայն հօգուտ Լիբերի ֆորմուլայի («Նրանց— ազգերի— կուլտուրական
զարգացման ազատության իրավունք» (Երկեր, հ 20, էջ 556)։

Վ. Ի. Լենինը խիստ կարևոր էր համարում միջադեպը համագումարում
լեզուների իրավահավասարության հարցի շուրջ։ «Ամբողջ համագումարի ըն-
թացքում,— գրել է Վ. Ի. Լենինը 1904 թ.,— երեք ամենախոշոր դեպք եղավ,
երբ աննշան թվով իսկրայականներ անջատվեցին նրանց մեծամասնությունից,
— լեզուների իրավահավասարություն, կանոնադրության § 1 և ընտրություն-
ներ,— և այս բոլոր երեք դեպքերում էլ ստացվում էր դաժան պայքար, որը



վերջ ի վերջո հասցրեց կուսակցության այժմյան ծանր ճգնաժամին» (Երկեր,
հ. 7, էջ 286)։ Ծրագրի 5-րդ պարագրաֆը քննարկելիս, որտեղ առաջարկվում
էր խղճի, խոսքի, մամուլի, ժողովների, գործադուլների և միությունների ան-
սահմանափակ ազատություն, բունդականների լիդեր Լիբերը առաջարկում էր
«մամուլի» բառից հետո ավելացնել «և լեզվի»։ Այս առաջարկությունը մերժ-
վում է, նկատի ունենալով, որ քաղաքացիների իրավահավասարությունը են-
թադրում է նաև լեզվի ազատություն։ Սակայն իսկույն ևեթ առաջադրվում է
«լեզուների իրավահավասարության» պահանջը, որը պաշտպանում են Ժորդա-
նիան, Թոփուրիձեն և ուրիշներ։ Այս հարցի կապակցությամբ իր ելույթում
Կնունյանցն ասում է. «...Ինչ վերաբերում է լեզուների իրավահավասարությա-
նը, ապա այն պետք է ճանաչվի բոլոր տեղական կառավարական հիմնարկ-
ներում, այսինքն պետք է ճանաչվի բնակչության իրավունքը պահանջելու տե-
ղական կառավարական և հասարակական հաստատություններում գործերը
վարել պետական լեզվի հետ միասին նաև մայրենի լեզվով»։ Կնունյանցն
առաջարկում էր դպրոցներում դասավանդումն անցնել մայրենի լեզվով։ Թո-
փուրիձեն պահանջում էր ծրագրում նշել մայրենի լեզվով կրթություն ստա-
նալու և դատավարության վերաբերյալ բնակչության իրավունքի մասին։ Միա-
ժամանակ նա հայտարարում է, որ Կովկասում արդեն իրավունք կա խոսել և
դպրոցներ ունենալ մայրենի լեզվով, բայց գյուղերում, ինչպես նաև պետու-
թյան հաշվին պահվող քաղաքային ուսումնական հաստատություններում այն
դուրս է մղվում։

Առարկելով Թոփուրիձեին, Ա. Զուրաբովն ասում է. «Այդ ճիշտ չէ, մայրենի
լեզվով միայն մի քանի ազնվականական դպրոցներ կան։ Ընկ. Կարսկին, ըստ
երևույթին, մոռացել է այն բարբարոսական ձևերի մասին, որով փակվեցին
հայկական դպրոցները, այդ ցարական ինքնակալության իսկական էպոպեան
էր։ Ծրագիրը բնակչությանը երաշխավորում է մայրենի լեզվով խոսելու իրա-
վունք և լայն մարզային ինքնավարություն. այդ բավարար երաշխիք է. էլ ին-
չի՞ մասին է խոսքը։ Չէ՞ որ ծրագիրը Կովկասի համար չի գրվում»։ Այս կա-
պակցությամբ Գ. Վ. Պլեխանովն ասում է. «Լիովին միանում եմ Ռաշիդ-բեկի
դիտողությանը, որը իրավացի նշեց, որ ծրագիրը Կովկասի համար չէ, որ գըր-
վում է»։

Վ. Ի. Լենինը, Գ. Վ. Պլեխանովը և այս հարցում նրանց կողմնակիցները
առարկելով ծրագրում լեզուների իրավահավասարության հարցը մտցնելուն,
գտնում էին, որ շեշտը պետք է դնել ազգությունների իրավահավասարության
վրա և այդ տեսակետից պաշտպանել մայրենի լեզվից օգտվելու իրավունքը՝
հարմարեցնելով այն կոնկրետ պայմաններին։ Հակառակ տեսակետը Լենինն
անվանում էր անկայունություն, երբ «պաշտպանում էին հենց բառը և ոչ թե
սկզբունքը, գործում էին ոչ թե որևէ սկզբունքային սխալի վախից, այլ այն
վախից, թե ինչ կասեն մարդիկ»։ Կովկասյան պատգամավորների դիրքորո-
շումն այս հարցում Վ. Ի. Լենինը համարում էր սխալ, որի պատճառով քվեար-
կության ժամանակ հակաիսկրայականները գերակշռություն են ստանում։

Սուր վիճաբանություններ տեղի ունեցան կուսակցության ծրագրի ագրա-
րային մասի քննարկման ժամանակ, որի հեղինակը Վ. Ի. Լենինն էր։ Հակա-
իսկրայականներն առարկում էին առաջիկա դեմոկրատական հեղափոխության
մեջ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի լենինյան գաղափարի
դեմ, որը կարմիր թելի նման անցնում էր կուսակցության ագրարային ծրագրի

նախագծում։ Այս հարցում սկզբունքային ճիշտ դիրքորոշում են ընդունում կովկասյան պատգամավորները և վճռականորեն պաշտպանում լենինյան հարցադրումները, որի պատճառով ենթարկվում են հակաիսկրայականների հարձակումներին։

Լենինյան ագրարային ծրագիրը համագումարում ընդունվեց 38 ձայնի մեծամասնությամբ։ Դրանց թվում էին կովկասյան պատգամավորների ձայները։ «Ագրարային ծրագրի շուրջը տեղի ունեցած վիճաբանություններից,— գրել է Վ. Ի. Լենինը,— պարզ երևում է իսկրայականների պայքարն ընդդեմ համագումարի ավելի քան երկու հինգերորդի։ Կովկասյան պատգամավորներն այստեղ միանգամայն ճիշտ դիրք էին բռնել— զգալապես, հավանորեն, շնորհիվ այն բանի, որ ճորտատիրության բազմաթիվ մնացորդների տեղական ձևերի մերձավոր ծանոթությունը նախազգուշացնում էր նրանց աբստրակտ-աշակերտական մերկ հակադրումներից, որոնք բավարարում էին Մախովներին» (Երկեր, հ. 7, էջ 295)։

Չնայած սուր պայքարին, կուսակցության իսկրայական ծրագիրն ամբողջությամբ ընդունվեց խմբագրական ոչ մեծ ուղղումներով։ Քվեարկության ժամանակ ձեռնպահ մնաց միայն «էկոնոմիստ» Ակիմովը։ Համագումարը որոշեց շնորհակալություն հայտնել «Իսկրա»-ի խմբագրությանը ծրագրի նախագիծը մշակելու համար։ Այս Վ. Ի. Լենինի գլխավորած կայուն իսկրայականների մեծ հաղթանակն էր։

Հսկայական նշանակություն ուներ կուսակցության կանոնադրության քննարկումը, որի ընթացքում առանձնապես սուր տարաձայնություններ առաջացան նրա առաջին պարագրաֆի կապակցությամբ, որը սահմանում էր թե ով կարող է լինել կուսակցության անդամ։ Այս հարցում լենինյան սկզբունքի դեմ հանդես եկավ Մարտովը, որին պաշտպանեցին «էկոնոմիստները», «բունդականները», «մեղմ» իսկրայականները և «ճահիճը»։ Հակառակ Լենինի, նրանք պնդում էին, որ կուսակցության անդամը կարող է և կուսակցական կազմակերպության մեջ չլինել, բավական է, եթե նա կուսակցությանը կանոնավոր անձնական աջակցություն ցույց տա կուսակցական կազմակերպություններից մեկի ղեկավարությամբ։

Կուսակցության կանոնադրությունը ամբողջությամբ քվեարկելիս, նրա օգտին տրվում է 42 ձայն, դեմ 6, 1 ձեռնպահ։ Կովկասյան պատգամավորները կողմ քվեարկողների թվում էին։

Այսպիսով, 1-ին պարագրաֆից բացի, հիմնականում ընդունվեց կուսակցության այն կանոնադրությունը, որը մշակել էր Վ. Ի. Լենինը։ Կուսակցության III համագումարն ուղղեց թույլ տրված սխալը և կանոնադրության առաջին պարագրաֆն ընդունեց Լենինի խմբագրությամբ։

Համագումարի 37-րդ նիստում քննարկվում էին Վ. Ի. Լենինի բանաձևը վրաց-հայկական թերթի մասին։ Լենինը պաշտպանում էր Կովկասյան Միության օրգան «Պրոլետարիատի կռիվը» թերթի հրատարակությունը, որը լույս տեսավ մինչև 1905 թ. հոկտեմբերը։

Կովկասյան պատգամավորները վճռականորեն պաշտպանեցին Լենինին համագումարի հիմնական խնդիրներից մեկի՝ կուսակցության կենտրոնական հիմնարկների ընտրության հարցը քննարկելիս։ Օրակարգի այդ կետին անցնելիս առաջինը ձայն է վերցնում Կնունյանցը։ Ելնելով Վ. Ի. Լենինի նախագծից, նա առաջարկում է գաղտնի քվեարկությամբ ընտրել երեքական հոգի՝ Կենտկոմի



մի և կենտրոնական օրգանի կազմում։ «Համագումարում ընկ. Ռուսովն առաջարկեց ամենից առաջ ընտրել երկու եռյակ»,— գրել է Վ. Ի. Լենինը։ Վ. Ի. Լենինը, Գ. Վ. Պլեխանովը և նրանց կողմնակիցները գտնում էին, որ անհրաժեշտ է «Իսկրա»-ի հին խմբագրությունը (վեցյակ) արձակել և ընտրել նորը։

Այս տեսակետների դեմ ջղագրգիռ և կրքոտ արտահայտվում են Դեյչը, Տրոցկին և Մարտովի մյուս օպորտունիստ կողմնակիցները։ Սրանց դեմ փայլուն ելույթ է ունենում Կնունյանցը, արժանանալով Վ. Ի. Լենինի բարձր գնահատականին։

«Մենք խորհուրդ կտայինք, բոլորին,— գրել է Լենինը,— ովքեր ուզում են ինքնուրույն վերլուծել կուսակցական պառակտման պատճառները և գտնել նրա արմատները համագումարում, կարդալ և վերստին կարդալ ընկ. Ռուսովի ճառը, որի փաստարկումները փոքրամասնությունը ո՛չ միայն չհերքեց, այլև նույնիսկ չվիճարկեց։ Ասենք՝ չի էլ կարելի վիճարկել այնպիսի տարրական, այբբենական ճշմարտություններ, որոնց մոռացումն արդեն ինքն ընկ. Ռուսովը արդարացի կերպով բացատրում էր միայն «ներվային գրգիռով»։ Եվ այս՝ փոքրամասնության համար իրոք ամենանվազ անախորժ բացատրությունն է այն հանգամանքի, թե ինչպես կարող էին նրանք կուսակցական տեսակետից իջնել մինչև քաղքենիության և խմբակայնության տեսակետը» (Երկեր, հ. 7, էջ 399—400)։

Օպորտունիստների բանակում «ներվային գրգիռ» են առաջացնում Կնունյանցի խիստ և սկզբունքային, լենինյան դիրքերից ունեցած ելույթները։ Համագումարի 30-րդ նիստում, առարկելով Կնունյանցին, Տրոցկին նրան անվանում է «երիտասարդ հեղափոխական», որը աղմուկ է առաջացնում։ Այդ ժամանակ Ա. Զուրաբովը տեղից բացականչում է. «Դա դեռ հարց է, ով է ավելի երիտասարդ, նա, թե դուք»։ Հեղափոխական սոցիալ-դեմոկրատները պաշտպանում են Կնունյանցին։ Առարկելով Տրոցկուն և մյուսներին, որոնք առաջարկում էին հաստատել «Իսկրա»-ի հին խմբագրության ամբողջ կազմը, Դոնի կոմիտեի պատգամավոր, կայուն իսկրայական Ա. Ի. Գուսեը ասում է, որ Կնունյանցի նախագիծը Լենինի նախագծի կրկնությունն է և նրա դեմ առարկողները «ընկ. Ռուսովի իրավացի արտահայտությամբ ոչ թե կուսակցական մարդիկ են, այլ քաղքենիներ»։

Քվեարկության ժամանակ Կնունյանցի բանաձևն ընդունվում է 25 ձայնով ընդդեմ 2-ի, 17 ձեռնպահով։ Ժորդանիայի օպորտունիստական բանաձևը, որն առաջարկում էր ընտրել խմբագրության մի անդամի, որը կոոպտացիայի ենթարկի մյուսներին՝ ձայների մեծամասնությամբ մերժվում է։

Գաղտնի քվեարկությամբ Կենտրոնական օրգանի խմբագրության կազմում ընտրվում են Պլեխանովը, Լենինը և Մարտովը։ Վերջինս հրաժարվում է մտնել խմբագրության կազմում։ Կնունյանցը գտնում է, որ պետք է Լենինին և Պլեխանովին վերապահել Մարտովի փոխարեն կոոպտացիայի ենթարկել խմբագրության նոր՝ 3-րդ անդամի և ապա առաջարկում է անցնել Կենտկոմի ընտրություններին։ Վ. Ի. Լենինը պաշտպանում է այս առաջարկությունը։ Համագումարն ընդունում է Կնունյանցի բանաձևը քվեարկության կարգի մասին, որտեղ ասված էր. «Համագումարը որոշում է ընտրել Կենտկոմ երեք անձից՝ գրությունների գաղտնի հանձնումով։ Քվեարկության արդյունքները որոշում է բյուրոյի նախագահը և հայտարարում է համագումարին միայն Կենտկոմի մի անդամի անունը։ Այդ արվում էր գաղտնապահության նկատառումներով։

Կնունյանցի առաջարկությունն անցնում է 24 ձայնով։ Կենտկոմի կազմում անցնում են Գ .Մ. Կրժիժանովսկին, Ֆ. Վ. Լենգնիկը և Վ. Ա. Նոսկովը։ Առաջին երկուսը գտնվում էին Ռուսաստանում և ընտրվում են հեռակա։ Գ. Վ. Պլեխանովը ընտրվում է կուսակցության խորհրդի հինգերորդ անդամը, որը խորհրդի նախագահն էր, Վ. Ի. Լենինը խորհրդի անդամ էր «Իսկրա»-ի խմբագրությունից։

Վ. Ի. Լենինը հետագայում հիշում է, որ մեծամասնության մասնավոր զրույցների մեջ Կենտրոնական կոմիտեի կազմում առաջադրվել է նաև Կնունյանցի թեկնածությունը։

Հայտնի է, որ կուսակցության ղեկավար օրգանների ընտրությունների ժամանակ տրված ձայների քանակից առաջացան «բոլշևիկներ» և «մենշևիկներ» անվանումները։

* * *

Մերկացնելով և ջախջախելով օպորտունիստներին, համախմբելով հեղափոխական ուժերին, Լենինը համագումարում ապահովեց բոլշևիզմի պատմական հաղթանակը։ Բայց պայքարը հեղափոխական մարքսիստական կուսակցության համար դրանով չավարտվեց։ Մենշևիկների կազմալուծիչ գործունեության հետևանքով ներկուսակցական պայքարը համագումարից հետո ավելի սրվեց։ Օպորտունիստական տարրերը Մարտովի, Տրոցկու և Աքսելրոդի ղեկավարությամբ կուսակցությունից գաղտնի ստեղծեցին իրենց հակակուսակցական ֆրակցիան և պայքար ծավալեցին գրավելու կուսակցական կենտրոնները, քայքայելու կուսակցությունը։ Շուտով նրանց միացավ նաև Գ. Վ. Պլեխանովը, որը համագումարում Լենինի հետ էր և մեծ ծառայություններ ուներ Ռուսաստանում մարքսիստական կուսակցության ստեղծման գործում։ Նա հրաժարվեց, ինչպես ինքն էր ասում «Կրակել յուրայինների վրա» և պահանջեց «Իսկրա»-ի խմբագրության կազմում մտցնել բոլոր չորս հին խմբագիր-մենշևիկներին։ Լենինը վճռականորեն խզվեց մենշևիկ Պլեխանովից, որին մինչ այդ նա բարձր էր գնահատում, դատապարտեց նրա նահանջը հեղափոխական մարքսիզմի դիրքերից, շրջադարձը դեպի մենշևիզմ և դուրս եկավ «Իսկրա»-ի խմբագրությունից։ «Իսկրա»-ն դարձավ մենշևիկյան։ Մենշևիկները զավթեցին նաև կուսակցության խորհուրդը, իսկ 1904 թ. հուլիսին— կուսակցության Կենտկոմը։ Այսպիսով, խախտելով կուսակցության կամքը, նրա II համագումարի որոշումները, մենշևիկներն իրենց ձեռքը վերցրին կուսակցության բոլոր կենտրոնները։ Ռուսական օպորտունիստներին պաշտպանեցին միջազգային օպորտունիստները՝ ցենտրիստները և նույնիսկ II Ինտերնացիոնալի ձախ տարրերը։ Այսպիսի ծանր պայմաններում բոլշևիկները Լենինի գլխավորությամբ վճռական ու անողոք պայքար ծավալեցին Մարքսի ու Էնգելսի հեղափոխական ուսմունքի անաղարտության համար, հանուն հեղափոխական մարքսիստական կուսակցության։ Այս գործում անգնահատելի դեր խաղաց Լենինի 1904 թ. մայիսին հրատարակած «Մի քայլ առաջ, երկու քայլ ետ» աշխատությունը, որում տրված է ՌՍԴԲԿ II համագումարում և նրանից հետո ծավալված պայքարի մարքսիստական խոր վերլուծությունը։ Այս գրքում Լենինը շարունակում էր զարգացնել կուսակցության մասին մարքսիստական ուսմունքը, մշակում էր բոլշևիկյան կուսակցության կազմակերպական սկզբունքները։ «Պրոլետարիատն այլ զենք չունի իշխանության համար մղվող պայքարում, բացի կազմակերպությունից»,— գրում է Լենինը (Երկեր, հ. 7, էջ 535)։



Բոլշևիկները, շատ տեղական կուսակցական կազմակերպություններ, համախմբված Լենինի շուրջը, պայքար ծավալեցին մենշևիկների դեմ, հանուն նոր, III համագումարի հրավիրման։ Այս ուղղությամբ խոշոր դեր կատարեց 1904 թ. օգոստոսին Լենինի ղեկավարությամբ Շվեյցարիայում գումարված 22 բոլշևիկների խորհրդակցությունը։ 1904 թ. աշնանը տեղի ունեցավ երեք կոնֆերանս— Հարավային, Կովկասյան և Հյուսիսային, ուր ձևավորվեց Մեծամասնական կոմիտեների բյուրոն՝ Լենինի ղեկավարությամբ։ Անդրկովկասյան բոլշևիկները խոշոր դեր խաղացին լենինյան կուսակցության համախմբման գործում։

1905 թ. սկզբին բոլշևիկները հիմնեցին իրենց օրգանը՝ «Վպերյոդ» թերթը՝ լենինյան «Իսկրա»-ի արժանավոր հաջորդը, որը լայնորեն լուսաբանում էր նաև Անդրկովկասյան իրականության հարցերը, օգնում տեղի բոլշևիկներին ամրապնդելու իրենց կազմակերպությունները։ 1905 թ. փետրվարին Լենինը գրում էր. «Մենք բոլշևիկներս, պնդում ենք, որ մեր կողմն է ռուսական իսկական կուսակցական գործիչների մեծամասնությունը։ Պառակտման գլխավոր պատճառը և միավորման գլխավոր արգելքը մենք համարում ենք փոքրամասնության կազմալուծիչ վարմունքը, որը հրաժարվեց ենթարկվել երկրորդ համագումարի որոշումներին և պառակտումը գերադասեց երրորդ համագումար հրավիրելուց» (հ. 8, էջ 150)։

Հակառակ մենշևիկների պառակտիչ գործունեության, Լենինի, բոլշևիկների եռանդուն ջանքերի շնորհիվ, 1905 թ. ապրիլին գումարվեց ՌՍԴԲԿ III բոլշևիկյան համագումարը, որը քննարկեց Ռուսաստանում ծավալվող ժողովրդական հեղափոխության արմատական հարցերը և որոշեց պրոլետարիատի, որպես նրա առաջնորդի խնդիրները, որոնք ծրագրային եղան հեղափոխական շարժումների հետագա զարգացման համար։

Կոմունիստական կուսակցությունը, իր ստեղծող ու առաջնորդ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, անցել է երեք հեղափոխության բովով՝ 1905—1907 թթ. ու 1917 թ. փետրվարյան բուրժուա-դեմոկրատական և Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխություններով։ Լենինյան կուսակցությունը մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո դառնալով կառավարող կուսակցություն, սովետական ժողովրդին հասցրեց համաշխարհային պատմական աննախընթաց նվաճումների և այժմ ղեկավարում է կոմունիստական հասարակարգի կառուցումը մեր երկրում։

Բոլշևիզմի ամբողջ պատմությունը մարքս-լենինյան տեսության անաղարտության համար մղված անհաշտ պայքարի պատմությունն է։ Մեր օրերում մարքսիստական-լենինյան տեսության իսկապես վերափոխիչ դերը վառ կերպով արտահայտված է ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումներում, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակին նվիրված փաստաթղթերում։

Սովետական մարդկանց ոգեշնչելով նոր մեծագործությունների, մոբիլիզացնելով և ուղղություն տալով բոլոր հասարակական ուժերին, կոմունիստական կուսակցությունը ժողովրդին լենինյան կուրսով վստահորեն առաջնորդում է առաջ, դեպի կոմունիզմ։



# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ II ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԱՅԵՐԵՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

**Վ. Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

ՌՍԴԲԿ II համագումարում ընդունված կուսակցության մարքսիստական-լենինյան ծրագիրը, գաղափարա-քաղաքական ու կազմակերպական հարցերի վերաբերյալ կայացված որոշումներն իրենց վրա սևեռեցին Ռուսաստանի և միջազգային պրոլետարիատի հեղափոխական ուժերի ուշադրությունը։

Համագումարի նյութերի մանրակրկիտ ուսումնասիրության գործի կազմակերպումը կուսակցական կազմակերպությունների հրատապ խնդիրն էր։

Ռուսաստանում լայնացող ու խորացող սոցիալ-դեմոկրատական շարժումը հարուցում էր կուսակցության ծրագրի և առհասարակ մարքսիստական, սոցիալ-դեմոկրատական գրականության խիստ մեծ պահանջ։ Այդ նկատի ունենալով ՌՍԴԲԿ II համագումարը, Վ. Ի. Լենինի առաջարկով, ընդունեց հատուկ որոշում «Կուսակցական գրականության մասին»։ Որոշման մեջ ասված էր. «...տվյալ մոմենտում կուսակցության կենսական խնդիրն է՝ ստեղծել խիստ հետևողական գրականություն, որը մատչելի լինի ընթերցողների ըստ հնարավորին ավելի լայն մասսայի համար» (ՍՄԿԿ-ն բանաձևերում և որոշումներում..., մ. 1, Երևան, 1954, էջ 64)։

Համագումարը կուսակցության կենտրոնական հիմնարկություններին հանձնարարեց ստեղծել «լայնածավալ բրոշյուրային գրականություն, որն իր խնդիրը համարի կուսակցական ծրագրի և տակտիկայի հարցերի վերաբերյալ համագումարի բանաձևերի սիստեմատիկ մասսայականացումը» (Նույն տեղը)։

Ի կատարումն վերոհիշյալ որոշման, ՌՍԴԲԿ II համագումարում ընտրված կուսակցության Կենտրոնական կոմիտեն անհապաղ միջոցներ ձեռնարկեց կազմակերպելու, առաջին հերթին, կուսակցության ծրագրի և համագումարի մյուս նյութերի հրատարակումը, ինչպես նաև ծրագրի ու տակտիկայի վերաբերյալ բրոշյուրների ստեղծման գործը։ Այդ նպատակին տրամադրվեցին «Իսկրա»-ի տպարանը Ժնևում և հիմնվեցին մի շարք գաղտնի տպարաններ՝ Ռուսաստանում։ Այսպես, 1903 թվականի վերջում ՌՍԴԲԿ Կենտկոմը Բաքվում ստեղծեց նոր գաղտնի տպարան, որը շարունակեց կրել հին տպարանի անունը՝ «Նինա»։ Հինը Կենտկոմը հանձնեց ՌՍԴԲԿ կովկասյան միութենական կոմիտեին, որ վերակոչվեց «Նադյա»։ Այդ տպարաններից բացի, 1903 թ. վերջում ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեն Թիֆլիսում հիմնեց Ավլաբարի գաղտնի տպարանը։ Այն տպագրում էր վրացերեն, հայերեն և ռուսերեն թռուցիկներ, գրքույկներ և միութենական կոմիտեի օրգան «Պրոլետարիատի կռիվը» և ««Պրոլետարիատի կռվի» թերթիկը»։

Առանձնապես կարևոր էր Ռուսաստանի տարբեր ազգերի լեզուներով կուսակցական գրականության հրատարակման հարցը։ Ինչպես հայտնի է, կուսակցության II համագումարում հրեական բունդի ներկայացուցիչները սեպարատիզմի, կուսակցությունը ազգային սկզբունքով կազմակերպելու մասին իրենց առաջարկն արդարացնելու համար վկայակոչում էին նաև Ռուսաստանում ազգային տարբեր լեզուների գոյության փաստը, որը, իբր, անհնար է դարձնում ինտերնացիոնալ սկզբունքով կուսակցության կազմակերպումը։ Հակառակ բունդի նման պնդումների, իսկրայականներն իրավացիորեն նշում էին, որ Ռուսաստանի բանվորների լեզվային տարբերությունները չեն խոչընդոտում բանվոր դասակարգի կուսակցության ինտերնացիոնալ կառուցմանը, քանի որ կուսակցությունը, նրա տեղական կոմիտեները գործում, իրենց պրոպագանդան և ագիտացիան վարում են միաժամանակ տարբեր ազգերի լեզուներով՝ թե՛ բանավոր և թե գրավոր։

Հիրավի, ՌՍԴԲԿ II համագումարից անմիջապես հետո կուսակցության Կենտրոնական կոմիտեն, «Իսկրայի» խմբագրությունը լայն աշխատանք ծավալեցին համագումարի որոշումները, մանավանդ համագումարում ընդունված կուսակցության մարքսիստական-լենինյան ծրագիրը, և ընդհանրապես, կուսակցական գրականությունը Ռուսաստանի տարբեր ազգերի լեզուներով հրատարակելու համար։

ՌՍԴԲԿ Կենտկոմին և անձամբ Վ. Ի. Լենինին առանձնապես մտահոգում էին Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատի համար իրենց մայրենի լեզուներով կուսակցական գրականություն ստեղծելու հարցը։

Այդ նպատակով Վ. Ի. Լենինը Ժնևում, 1903 թվականի աշնանը, եռանդուն աշխատանք ծավալեց՝ հայթայթելու նյութական անհրաժեշտ միջոցներ և հավաքագրելու մարքսիստորեն պատրաստված, կարող ուժեր։ Գործի մեջ ներգրավվեցին Ստ. Շահումյանը, Բ. Կնունյանցը և հայոց ու վրաց լեզուներին գիտակ, արտասահմանում գտնվող սոցիալ-դեմոկրատ ընկերները։

ՌՍԴԲԿ կովկասյան միութենական կոմիտեին 1903 թվականի հոկտեմբերի 20-ին ուղարկած նամակում Վ. Ի. Լենինը իր և Գ. Վ. Պլեխանովի անունից գրում էր. «Մենք այժմ եռանդուն մտածում ենք այստեղ վրացական և հայկական գրականության հրատարակության կազմակերպման մասին։ Այդ գործին ձեռնամուխ են եղել ձեռնհաս ընկերներ։ Փող հույս ունենք ճարել, հարկավոր է օգնություն և՛ գրականությամբ, և՛ միջոցներով» (Երկեր, հ. 34, էջ 199)։

Շուտով Ժնևում, Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ, ՌՍԴԲԿ Կենտկոմին կից ստեղծվեց հայերեն ու վրացերեն սոցիալ-դեմոկրատական կուսակցական գրականության հրատարակման հանձնաժողով։ Այն վերջնականապես կազմավորվեց և Կենտկոմի կողմից հաստատվեց 1904 թվականի փետրվարի 21—22-ին։ Հանձնաժողովի կազմում էին՝ Ստ. Շահումյանը (Սեմյոնով), Ն. Ժորդանիան (Միխաելիդիս), Ժուրուլին, Եփրեմիձեն, Գաբիանին, Ար. Երզնկյանը (Գուգարիան), Մ. Մանուչարյանը (Կարյան)։ «Իսկրան» 1904 թ. մարտի 5-ին հրատարակեց հանձնաժողովի հետևյալ հայտարարությունը։

«Արտասահմանում ՌՍԴԲԿ կենտրոնական կոմիտեին կից ստեղծվել է «վրացերեն ու հայերեն լեզուներով սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակման հանձնաժողով»: Հանձնաժողովը դիմում է բոլոր ընկերներին և համակրողներին այդ գործում իրենց հնարավոր օգնություն ցույց տալու խնդրանքով: Դրամ, գրական նյութեր և նամակներ կարելի է ուղարկել Կենտրոնական կոմիտեին կամ կենտրոնական օրգանի հասցեով, ծրարի վրա նշելով՝ «հանձնաժողովի համար»:

Հանձնաժողովը խնդրում է նաև նշել, թե դրամական օժանդակությունը ո՞ր գրականության՝ վրաց, հայ, թե՞ երկուսի համար է նախատեսվում («Искра», 1904, № 61):

Վրացերեն և հայերեն սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակման հանձնաժողովի աշխատանքը ղեկավարում էր Վ. Ի. Լենինը: Նրա անունով էին ուղարկվում նյութերը, թղթակցությունները: Հանձնաժողովի հրատարակած գրքույկների շապիկների վրա հատկապես նշված էր.

«Վրացերեն և հայերեն լեզուներով կուսակցական սոցիալ-դեմոկրատական գրականություն հրատարակող մասնաժողով»-ի հասցեն՝ արտասահմանյան ամեն տեսակ թղթակցությունների, հարաբերությունների և դրամի համար. V. Oulianoff, 3. rue de la Colline (près Pont Neuf). Genève. —Suisse. „Для комиссии".

Դրամական միջոցներ հայթայթելու և սոցիալ-դեմոկրատական գրականության թարգմանությանը նպաստելու համար հանձնաժողովը եվրոպական մի շարք քաղաքներում (Ժնև, Բեռլին, Մյունխեն, Լայպցիգ, Փարիզ) ստեղծեց Հանձնաժողովին օժանդակող հայկական և վրացական խմբեր: ՌՍԴԲԿ Կենտկոմի հաստատված կանոնադրության համաձայն այդ խմբերը գանձում էին անդամավճարներ, տարածում գրականություն, հավաքում նվիրատվություններ, կազմակերպում ականավոր մարքսիստների ռեֆերատների հրապարակային ընթերցումներ, ուսանողների ուժերով՝ երեկույթներ ու ներկայացումներ, որոնցից ստացված հասույթը տրամադրում էին Հանձնաժողովին: Այսպես. Ժնևի «Կովկաս» սոցիալ-դեմոկրատական ուսանողական ընկերությունը այդ նպատակին տրամադրեց այնտեղ կազմակերպած հայ ուսանողական երեկույթի եկամուտը (տե՛ս «Նորք» հանդես, Երևան, 1923, № 3, էջ 322): Հանձնաժողովին նկատելի օգնություն ցույց տվեց Պետերբուրգի հայ ուսանողների սոցիալ-դեմոկրատական խումբը («Искра», 1904 թ., № 68):

Հանձնաժողովին մեծ չափով օգնում էր ՌՍԴԲԿ Կենտկոմը, որը տրամադրել էր նրան Ժնևի իր տպարանը, տպագրական թուղթ, դրամական որոշ միջոցներ: Հանձնաժողովի աշխատանքներին սիստեմատիկ հետևում էր և օգնում Կենտկոմի ներկայացուցիչ Օլինը (Պ. Ն. Լեպեշինսկին): Հանձնաժողովին հաջողվեց ՌՍԴԲԿ Կենտկոմի և օժանդակող խմբերի օգնությամբ կարճ ժամանակում ձեռք բերել հայերեն և վրացերեն տառեր, հավաքագրել գրաշարներ, կազմակերպել Մարքսի, Էնգելսի, Լենինի մի շարք երկերի և սոցիալ-դեմոկրատական կուսակցական կարևոր գրականության թարգմանությունը և հրատարակությունը: Գրականության հայերեն թարգմանության գործը գլխավորում էր Ստ. Շահումյանը: Այդ նպատակով նա 1903 թ. աշնանը Բեռլինից տեղափոխվեց Ժնև:

Հանձնաժողովը, առաջին հերթին, թարգմանեց և տպագրության հանձնեց



ՌՍԴԲԿ II համագումարի նյութերը, որոնց սրտատրոփ սպասում էին Կովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները:

1904 թ. գարնանը Ժնևում լույս տեսավ Հանձնաժողովի առաջին հայերեն գիրքը՝ ՌՍԴԲԿ II համագումարի նյութերը՝ «Ծանուցումն Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության երկրորդ հերթական համագումարի մասին» խորագրով:

Գրքույկում զետեղված էին II համագումարի մասին ՌՍԴԲԿ Կենտկոմի ծանուցումը, II համագումարում ընդունված ՌՍԴԲԿ ծրագիրը, կանոնադրությունը և գլխավոր որոշումները: «Ծանուցումը» լույս տեսավ 2.300 օրինակով: Բայց ՌՍԴԲԿ II համագումարի նյութերի պահանջը այնքան մեծ էր, որ նույն թվականին Ժնևում այն հրատարակվեց երկրորդ անգամ: Ապա մի այլ թարգմանությամբ, դարձյալ 1904 թ., «Ծանուցումը» հրատարակեց ՌՍԴԲԿ կովկասյան միութենական կոմիտեն: Նույն 1904 թ. առանձին գրքույկով, Ժնևում և Կովկասում լույս տեսան կուսակցության ծրագիրը և կանոնադրությունը: Կուսակցության ծրագիրը Ժնևում հրատարակվեց 7.000 օրինակով:

Ուշագրավ է, որ Ժնևում, «Ծանուցումը» լույս տեսավ հատկապես հայերեն հրատարակության առթիվ գրված ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեի առաջաբանով:

Մենք անհրաժեշտ ենք համարում ստորև տպագրել առաջաբանի ամբողջական տեքստը, նկատի ունենալով, որ մինչև այժմ մեր պատմական գրականության մեջ և հոդվածներում այդ հույժ կարևոր փաստաթուղթը չի հիշատակված և գիտական շրջանառության մեջ չի դրված:

Ահա այն.

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՑ

Հրատարակելով հայերեն լեզվով ներկա բրոշյուրը կուսակցության երկրորդ համագումարի մասին՝ Կենտրոնական կոմիտեն առաջին փորձն է անում ստեղծելու այն տեսակ սոցիալ-դեմոկրատական գրականություն, որը ընդունակ լինէր ծառայելու միապետության լծի տակ ճնշվող զանազան ազգությունների բանվորական շարժման գործին,— ազգությունների, որոնց լեզուն «տիրապետող» չէ ճանաչված, այլ համարվում է հազիվ-հազ հանդուրժելի:

Ընդհանուր կուսակցական սոցիալ-դեմոկրատական գրականություն ստեղծելը՝ Ռուսաստանում ապրող բոլոր ազգությունների համար— մեր շարժման ամենաէական խնդիրներից մեկն է: Միայն այդ տեսակ գրականությունը՝ հրատարակված զանազան լեզուներով և լայն տարածված ամբողջ երկրում կարող կլինի վճռական հարված հասցնել ազգային փոխադարձ խտրություններին ու մինչև իսկ թշնամության, որ կտակել է մեզ թալանի ու հափշտակության դարավոր քաղաքականությունը,— թալանի ու հափշտակության բոլոր ստրկացած ժողովուրդների և նրանց միջի բոլոր ստրկացած դասակարգերի վերաբերմամբ: Սոցիալ-դեմոկրատիայի գործն է— աննահանջ ու անշեղ կռիվ մղել այդ քաղաքականության և նրա առաջադրած ազգային խտրությունների դեմ: Սոցիալ-դեմոկրատիայի գործն է մոտեցնել իրար բոլոր ազգությունների ստրկացված դասակարգերը, միացնել բոլոր երկրների պրոլետարներին:

Այնպիսի պետության մեջ, ինչպիսին է Ռուսաստանը, սոցիալ-դեմոկրատիայի այդ խնդիրը առանձնապես կարևոր նշանակություն է ստանում: Թալանի ու հափշտակության քաղաքականությունը, որ գործ է դնում միապետությունը լեհացիների, ֆինլանդացիների, հրեաների, հայերի, վրացիների և առհասարակ բոլոր ոչ-ռուս ազգությունների վերաբերմամբ— բողոք և դժգոհություն է առաջացնում այդ բոլոր ազգությունների բոլոր առաջադեմ խավերի կողմից: Իսկ միևնույն ժամանակ կապիտալիզմի զարգացումը ավելի ու ավելի ուժեղացնում է ամեն մի ազգության մեջ աշխատավոր դասակարգերի շահագործությունը և ոտքի է կանգնեցնում պրոլետարիատի ավելի զարգացած խավերը: Բանվորական շարժումը Ռուսաստանում ընդգրկում է ստրկական դեսպոտիզմի տակ հեծող բոլոր ազգությունները, և մեր կուսակցությունը ամեն ջանք պետք է գործ դնի այժմ, որպեսզի իսկապես ի մի ձուլի բոլոր ազգությունների բանվորական շարժումը: Համայն աշխարհի բանվորների եղբայրության գաղափարի լայն պրոպագանդան, անդադար ագիտացիան՝ ամեն տեսակ ազգային հալածանքների դեմ, բանվորների մերձեցումը՝ շարժման գործնականի մեջ, նրանց մերձեցումը զանազան լեզուներով միևնույն սոցիալ-դեմոկրատական գրականությունը հրատարակելու միջոցով, մի ազգության պրոլետարիատի ծանոթացումը մյուս ազգությունների կենցաղային պայմանների ու ազատագրական շարժման առանձնահատկությունների հետ— ահա թե որոնք են մեր մոտավոր գործնական խնդիրները:

Ուրեմն առաջ և առաջ դեպի բոլոր երկրների պրոլետարների գործնական մերձեցումը և միացումը: Թող ազգային ճնշումների սաստկացումը միապետության կողմից և նրա ձգտումը՝ գրգռել իր հպատակ ազգերի շովինիստական զգացմունքները և փոխադարձ ատելություն առաջ բերել նրանց մեջ,— կրկնակի դիմադրության հանդիպի բոլոր ազգերի պրոլետարներից բաղկացած և բոլոր լեզուներով սոցիալական հեղափոխություն քարոզող մի և միացյալ սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության կողմից: Թող մեր ընկերները— զանազան ազգությունների պատկանող սոցիալ-դեմոկրատները— օգնության հասնեն ՌՍԴԲԿ կենտրոնական կոմիտեին իր նորսկսնակ գործի մեջ:

Մա՛հ միապետությանը:
Կեցցե՛ ժողովուրդների ազատությունը:
Կեցցե՛ միջազգային սոցիալ-դեմոկրատիան:

ՌՍԴԲԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

*Կուսակցության II համագումարի մասին գրքույկի և առհասարակ համակուսակցական գրականության հայերեն լույս ընծայումը, ինչպես տեսնում ենք, Կենտկոմը դիտում էր որպես Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատին ընդհանուր, միասնական սոցիալ-դեմոկրատական կուսակցության մեջ համախմբելու, նրանց պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու նպատակով կուսակցության կատարած առաջին կարևոր քայլերից մեկը։*

*«Ծանուցման» հայերեն հրատարակության առթիվ ՌՍԴԲԿ Կենտկոմի հատուկ առաջաբան գրելու փաստը վկայությունն է այն մեծ ուշադրության, որ ցուցաբերում էր կուսակցության Կենտկոմը և անձամբ Վ. Ի. Լենինը «Հայերեն և վրացերեն սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակման հանձնաժողովի» նկատմամբ։*



*1904 թվականին Ժնևում հայերեն հրատարակված ՌՍԴԲԿ II համագումարի մասին «Ծանուցումը» և դրան հարակից կուսակցության Կենտկոմի առաջաբանը արտատպեց Ռուսչուքում, ապա Փարիզում լույս տեսնող «Ապագա» երկշաբաթաթերթը, իր 1905 թվականի 2-րդ, 3-րդ, 4-րդ և 5-րդ համարներում[1]։*

*Կուսակցության II համագումարի նյութերից բացի, ՌՍԴԲԿ Կենտկոմի հայերեն և վրացերեն սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակման հանձնաժողովը 1904 թվականին թարգմանեց և հայերեն հրատարակեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի* Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, *Կ. Մարքսի* Վարձու աշխատանքը և կապիտալը, *ՌՍԴԲԿ Կենտկոմի «Ռուսական պրոլետարիատին», «Մայիսի մեկը» թռուցիկները, որոնք գրել էր Վ. Ի. Լենինը, և այլ գրքույկներ։*

*Կուսակցության II պատմական համագումարից անմիջապես հետո ՌՍԴԲԿ ծրագրի, կանոնադրության և գլխավոր բանաձևերի հայերեն հրատարակությունը մեծ չափով նպաստեց Անդրկովկասում և Հայաստանում լենինյան գաղափարների տարածմանը, բոլշևիկյան կազմակերպությունների ստեղծմանը։*

## Из истории издания материалов второго съезда партии на армянском языке

Резюме

В статье излагается деятельность ЦК РСДРП и В. И. Ленина после II съезда партии по организации в Женеве в 1904 г. переводов и изданий на армянском и грузинском языках социал-демократической партийной литературы, в частности «Извещения о втором съезде РСДРП» и «Программы РСДРП».

Важным историческим документом является предисловие к брошюре «Извещение о втором съезде РСДРП», написанное Центральным Комитетом РСДРП специально по поводу армянского издания «Извещения». В статье приводится полный текст этого предисловия, так как оно впервые вводится в научный оборот.

Здесь этот документ публикуем, в переводе с армянского на русский язык.

## ОТ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА РОССИЙСКОЙ СОЦИАЛ-ДЕМОКРАТИЧЕСКОЙ РАБОЧЕЙ ПАРТИИ

Издавая данную брошюру о втором съезде партии на армянском языке, Центральный Комитет делает первую попытку по созданию такой литературы, которая была бы способна послужить делу рабочего движения находящихся под игом самодержавия национальностей, язык которых не считается «господствующим», а лишь едва терпимым.

Создание общепартийной социал-демократической литературы для всех национальностей, проживающих в России — одна из самых насущных задач нашего движения. Только подобная литература, изданная на разных языках и широко распространенная по всей

*[1] «Ապագա» երկշաբաթաթերթը սոցիալ-դեմոկրատ հնչակյանների օրգանն էր։*

стране, сможет нанести решительный удар по национальной розни и даже вражде, которые были завещаны нам вековой политикой грабежа и захвата, — грабежа и захвата всех порабощенных народов и их угнетенных классов. Задача социал-демократии — вести непримиримую и неуклонную борьбу с этой политикой и вызванной ею — политикой национальной розни. Задача социал-демократии — сблизить порабощенные классы всех национальностей, объединить пролетариев всех стран.

В таком государстве, как Россия, эта задача социал-демократии приобретает особую значимость. Политика грабежа и захвата, насаждаемая самодержавием по отношению к полякам, финнам, евреям, армянам, грузинам и ко всем нерусским национальностям вообще, — вызывает протест и сопротивление со стороны передовых слоев всех национальностей. В то же время развитие капитализма все более и более усиливает эксплуатацию трудящихся классов каждой национальности и поднимает на борьбу более развитые слои пролетариата. Рабочее движение в России охватывает все стонущие под игом полицейского деспотизма нации, и наша Партия теперь должна приложить все усилия, чтобы действительно объединить рабочее движение всех национальностей. Широкая пропаганда идей братства рабочих всего мира, неустанная агитация против всякого рода национальных притеснений, объединение действий рабочих, их единение путем издания общей социал-демократической литературы на разных языках, ознакомление пролетариев различных национальностей с бытом и особенностями освободительного движения каждого из них — вот наши ближайшие практические задачи.

Итак, вперед к практическому сближению и единению пролетариев всех стран! Пусть усиление национальных притеснений со стороны царского самодержавия и его стремление к возбуждению шовинистических страстей и взаимной ненависти подвластных ему народов — встретит удвоенное сопротивление со стороны состоящей из пролетариев всех национальностей единой социал-демократической рабочей партии, проповедующей на всех языках социальную революцию! Пусть наши товарищи, социал-демократы различных национальностей, придут на помощь Центральному Комитету РСДРП в начатой им работе.

Смерть самодержавию!

Да здравствует свобода народов!

Да здравствует международная социал-демократия!

**Центральный Комитет РСДРП**

# ՍՄԿԿ ՈՒԺԻ ԵՎ ՀԶՈՐՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

**Ռ. Լ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**

*Տակավին XX դարի արշալույսին Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի ազատագրական պայքարը ղեկավարող հեղափոխական կուսակցություն ստեղծելու անհրաժեշտության մասին Լենինը գրել է. «Տվե՛ք մեզ հեղափոխական կազմակերպություն— և մենք շո՛ւռ կտանք Ռուսաստանը» (Երկեր, հ. 5, էջ 622)։ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, Ռուսաստանի մարքսիստ հեղափոխականների տիտանային ջանքերի շնորհիվ, 1903 թ. ՌՍԴԲԿ II համագումարում ստեղծվեց այդ կազմակերպությունը։ Դա բոլշևիկների կուսակցությունն էր, նոր տիպի մարքսիստական հեղափոխական կուսակցությունը, այն հզոր ուժը, որի գլխավորությամբ Ռուսաստանի բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիության հետ դաշնակցած, տապալեց կալվածատերերի ու բուրժուազիայի տիրապետությունը։*

*Բոլշևիկյան կուսակցության հիմնադրումից անցել է 70 տարի, մարդկության հազարամյա պատմության մեջ թերևս մի ակնթարթ։ Բայց այդ ժամանակահատվածում բազմազգ Ռուսաստանի և համաշխարհային զարգացման ողջ ընթացքի վրա որևէ կուսակցություն, քաղաքական-հասարակական որևէ ուժ այնպիսի որոշիչ և վերափոխիչ, ներգործուն բախտորոշ ազդեցություն չի գործել, ինչպես կոմունիստների լենինյան կուսակցությունը։*

*Բարդ ու դժվարին է եղել լենինյան կուսակցության անցած 70-ամյա փառապանծ ուղին։ Այն անցել է դասակարգային դաժան մարտերի, ռուսական երեք հեղափոխությունների, քաղաքացիական կռիվների և Հայրենական մեծ պատերազմի, սոցիալիստական նոր հասարակարգի կառուցման դժվարին պայքարի բովով։ Աշխարհը վերափոխող համաշխարհային պատմական հաղթանակներով է պսակված նրա անցած ուղին։ Այդ հաղթանակներից ամենանշանակալին, բախտորոշն ու դարակազմիկը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն է, որը դրեց համաշխարհային մասշտաբով կապիտալիզմի կործանման, կապիտալիզմից սոցիալիզմին և կոմունիզմին անցնելու դարաշրջանի, մարդկության իսկական պատմության սկիզբը։*

*Յոթ տասնամյակի ընթացքում բոլշևիզմը, որպես քաղաքական մտքի հո-*

սանք, տարածվեց աշխարհում։ Բոլշևիկների լենինյան կուսակցության օրինակով, նրա մշակած գաղափարական, քաղաքական ու կազմակերպական սկզբունքներով հողագնդի բոլոր անկյուններում ստեղծվեցին մարքս-լենինյան հեղափոխական կուսակցություններ, որոնք դարձել են սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության դրոշակակիրները, համաշխարհային իմպերիալիզմի դեմ ժողովուրդների մղած անզիջում պայքարի, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման համար մարտնչողների առաջամարտիկները։

Այդ է պատճառը, որ սովետական ժողովուրդը, մեր հողագնդի բոլոր աշխատավորները կոմունիստների լենինյան կուսակցության մեջ են տեսնում «մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 327), իրենց շահերի, իղձերի ու ձգտումների աննկուն և միակ պաշտպանին, դեպի ազատություն, եղբայրություն և հավասարություն առաջնորդող իրենց նավավարին։

Վերոհիշյալ հանգամանքներն էլ հենց երկրի ռեակցիոն ու հետադիմական
բոլոր ուժերին ու հոսանքներին պայքարի մղեցին մարքս-լենինյան հեղափո-
խական կուսակցության դեմ։ Այդ իսկ պայքարում միավորվեցին և այժմ էլ
միավորվելով շարունակում են լենինյան կուսակցության դեմ դավել իմպե-
րիալիզմի և հակակոմունիզմի բոլոր սպասարկուները, բանվորական շարժ-
ման մեջ գոյություն ունեցող հակամարքսիստական-հակալենինյան բոլոր հո-
սանքները՝ «ձախ» և աջ ռևիզիոնիստները, դոգմատիկները ու նացիոնալ-շո-
վինիստները, օպորտունիստական բոլոր տարրերը։

Արդ, ո՞րն է աշխարհը վերափոխող լենինյան կուսակցության ուժը, որո՞նք են նրա հաղթանակների աղբյուրները։

* * *

Սովետական Միության կոմունիստական կուսակցության ուժի և հզորու-
թյան գլխավոր աղբյուրը, ամենից առաջ, այն է, որ նա իր ծննդյան օրից, ի
հակադրություն II ինտերնացիոնալի ռեֆորմիստական կուսակցությունների,
ձևավորվեց որպես սոցիալական հեղափոխության կուսակցություն։ Լինելով
բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից և կազմակերպված ջոկատը, նա
հավատարիմ մնաց պրոլետարիատի և բոլոր աշխատավորների դասակարգա-
յին շահերին և նրանց միացյալ ուժերն ուղղեց շահագործողական հասարակար-
գը հեղափոխական ճանապարհով ոչնչացնելուն ու նրա փլատակների վրա կո-
մունիստական հասարակարգ կառուցելուն։ Ընդ որում, կոմունիստական կու-
սակցության ուժի աղբյուրն այն է, որ նրա անդամները այդ երկարատև,
դաժան և բարդ պայքարի բոլոր փուլերում հանդես եկան և գալիս են իրենց
անձնվիրությամբ, կոմունիզմի գործին անսահման նվիրվածությամբ, հերո-
սությամբ, անձնազոհությամբ, հետևողականությամբ և աննկուն կամքով, չըն-
կրկելով վերջնական նպատակին հասնելու ճանապարհին առաջացած և ոչ մի
դժվարության, նույնիսկ պարտությունների առաջ։ Անդրադառնալով պրոլետա-
րական կուսակցության այդ առանձնահատկությանը, Վ. Ի. Լենինը գրել է.
«Միայն կոմունիստական կուսակցությունը, եթե նա իսկապես հեղափոխական
դասակարգի ավանգարդն է, եթե նա իր մեջ է առնում նրա բոլոր լավագույն
ներկայացուցիչներին, եթե նա բաղկացած է լիովին գիտակից և անձնվեր կո-
մունիստներից, որոնք համառ հեղափոխական պայքարի փորձով լուսավոր-
ված և կոփված են, եթե այդ կուսակցությունը կարող է իրեն անխզելիորեն



կապել իր դասակարգի ամբողջ կյանքի հետ, իսկ նրա միջոցով՝ շահագործվողների ամբողջ մասսայի հետ և ներշնչել այդ դասակարգին ու այդ մասսային լիակատար վստահություն,— միայն այդպիսի կուսակցությունն է ընդունակ ղեկավարելու պրոլետարիատին ամենաանողոք, վճռական, վերջին պայքարում՝ ընդդեմ կապիտալիզմի բոլոր ուժերի» (Երկեր, հ. 31, էջ 219—220)։

Հիրավի, մեր երկրի բազմազգ աշխատավորների վիթխարի նվաճումները արգասիք են միայն այն բախտորոշ իրողության, որ նրանց առաջնորդում ու ղեկավարում է հենց այնպիսի կուսակցություն, որպիսին կամենում էր ստեղծել և ստեղծեց հանճարեղ Իլյիչը։

Լենինյան կուսակցության ղեկավարությամբ Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատը կարողացավ ծավալել իր հեղափոխական գրոհի ամբողջ հզորությունը և տապալել կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը, պաշտպանել սոցիալիստական հեղափոխության նվաճումները ներքին ու արտաքին բազմաթիվ թշնամիներից։ Միայն ՍՄԿԿ ղեկավարության շնորհիվ սովետական ժողովուրդը կարողացավ դրսևորել իր աշխատանքային անսպառ եռանդը, կատարել զարմանահրաշ սխրագործություններ, մեր երկրում կառուցել զարգացած սոցիալիստական հասարակարգ և այժմ հաջողությամբ իրականացնում է կոմունիզմի կառուցման հոյակապ կանխագծումները։

ՍՄԿԿ-ն, որ այժմ դարձել է սովետական ողջ ժողովրդի ավանգարդը, իր շարքերում ունի գրեթե տասնհինգ միլիոն մարդ, որոնք բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության առաջավոր ներկայացուցիչներն են։ Բայց կուսակցության համար այժմ իր կազմի թվական աճը չէ գլխավորը։ Կոմունիստական շինարարության արդի փուլում նրա հոգատարության գլխավոր առարկան իր սոցիալական կազմի մշտական բարելավումն է, իր շարքերի համալրումը, ամենից առաջ, սոցիալիստական հասարակության առաջատար ուժի՝ բանվոր դասակարգի հաշվին, կուսակցությունը բախտախնդիրներից ու կարիերիստներից, անազնիվներից ու պորտաբույծներից մաքրելը. «Կուսակցության ցուցական անդամներ մեզ ձրի էլ հարկավոր չեն։— Գրել է Լենինը.— Աշխարհում միակ կառավարական կուսակցությունը, որը ոչ թե անդամների թվի մեծացման, այլ նրանց որակի բարձրացման, «խցկվածներից» կուսակցությունը զտելու մասին է հոգում, մեր կուսակցությունն է՝ հեղափոխական բանվոր դասակարգի կուսակցությունը» (Երկեր, հ. 30, էջ 60)։

Վերոհիշյալ հանգամանքը ժամանակակից պայմաններում չափազանց կարևոր է, որովհետև կուսակցության անդամների հեղինակությունը անչափ մեծ նշանակություն ունի մասսաներին առաջնորդելու, կուսակցության ղեկավարությունը հաջողությամբ իրականացնելու գործում։ Անդրադառնալով այդ խնդրին, դեռ 1902 թ. Լենինը գրել է, որ կուսակցությունը պրոլետարիատի հեղափոխական շարժման ղեկավարը կարող է մնալ «...ոչ թե իշխանության ուժով, այլ հեղինակության ուժով, էներգիայի, ավելի մեծ փորձառության, ավելի մեծ բազմակողմանիության, ավելի մեծ տաղանդավորության ուժով» (Երկեր, հ. 6, էջ 298)։ Որպիսի՜ խորիմաստ մտքեր, և որքա՜ն կենսական են հնչում դրանք այսօր։ Հազիվ թե կարելի լինի առարկել այն ճշմարտությունը, որ կուսակցական կազմակերպությունները ամեն մի բարդ ու դժվարին բնագավառում հաջողությամբ են իրականացնում իրենց ղեկավար դերը, երբ

նրանք ու նրանց առանձին անդամները վայելում են մասսաների վստահությունն ու հեղինակությունը։

Լենինյան կուսակցության ուժի և անպարտելիության, նրա ղեկավար դերի հաջող իրականացման մյուս կարևոր աղբյուրը ժողովրդական լայն զանգվածների հետ կուսակցության անխզելի կապի անընդմեջ ամրապնդումն է, ընդարձակումն ու կատարելագործումը։

*Վ. Ի. Լենինը նշում էր, թե բավական չէ, որ կուսակցությունն իրեն կոչի բանվորական, մշակի նրա շահերից բխող քաղաքականություն։ Պրոլետարիատին առաջնորդելու և ղեկավարելու համար նա պետք է օժտված լինի «...աշխատավորների ամենալայն մասսայի, առաջին հերթին, պրոլետարական* բայց նաև ոչ պրոլետարական *աշխատավոր մասսայի հետ կապվելու, մերձենալու, որոշ չափով, եթե կուզեք, ձուլվելու հմտությամբ» (Երկեր, հ. 31, էջ 9—10)։*

*Աղանդավորական կտրվածությունը մասսաներից խորթ է կոմունիստական կուսակցությանը։ Բայց խորթ է նաև նրանց առանձին շերտերի հետադիմական, քաղքենիական, եսասիրական տրամադրությունների նկատմամբ օպորտունիստական հարմարվողականությունը։ Կուսակցության ուժի, նրա ղեկավարության հաջողության գրավականն այն է, որ նա մասսաներին գլխավորում է, ժամանակին բացահայտում նրանց առանձին խավերի կամ խմբերի հետադիմական տրամադրություններն ու եսասիրական ձգտումները, վճռապես պայքարում դրանց դեմ։*

*Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ տեղի է ունենում դասակարգերի և սոցիալական բոլոր խմբերի, ազգերի ու ազգությունների դրության, շահերի ու նպատակների համահարթման և մերձեցման պրոցես, մասսաների հետ կուսակցության կապը ձեռք է բերում սոցիալական նոր բազա, ստանում նոր բովանդակություն և հետագա զարգացման ավելի մեծ հեռանկարների հնարավորություն։ ՍՄԿԿ XXIV համագումարը, անդրադառնալով կուսակցության ղեկավար դերի բարձրացման գործում այդ խնդրի հույժ կարևորությանը, հստակ մատնանշեց կուսակցության և ժողովրդի կապի է՛լ ավելի ամրապնդման հետագա ուղիներն ու եղանակները։ Դրա համար, նշեց համագումարը, անհրաժեշտ է կուսակցության տնտեսական քաղաքականության մեջ կատարել եռանդուն շրջադարձ հանուն ժողովրդական մասսաների կենսամակարդակի բարձրացման, նրանց նյութական և հոգևոր պահանջմունքների առավել լիակատար բավարարման։ Հարկավոր է, այնուհետև, ընդարձակել սովետական մարդկանց քաղաքական ու քաղաքացիական իրավունքները, թույլ չտալ դրանց մազաչափ ոտնահարում, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման միջոցով ժողովրդական մասսաներին ավելի լայնորեն ներգրավել հասարակական կյանքի տարբեր ոլորտների ղեկավարման մեջ, վարել այնպիսի քաղաքականություն, որ ներդաշնակորեն զուգորդվեն և միաձուլվեն սոցիալական բոլոր խավերի և ազգերի շահերը, վճռական պայքար մղել սոցիալիստական հասարակության բնույթին խորթ երևույթների դեմ և այլն։*

*Այս վերջին հանգամանքը կուզենայինք առանձնապես ընդգծել, նկատի ունենալով մեր հանրապետությունը։ Գաղտնիք չէ, որ հանրապետության աշխատանքային բոլոր կոլեկտիվները, ազնիվ քաղաքացիները ամենախիստ կերպով դատապարտում են այնպիսի չարիքները, ինչպիսիք են՝ կաշառակերությունը, պաշտոնը չարաշահելը, հանրօգուտ աշխատանքից խուսափելը, սպեկուլյացիան, մասնավոր սեփականատիրական տենդենցները, հասարակության ու պետության հաշվին, առանց հանրօգուտ աշխատանքի հարստանալու տենչը, բյուրոկրատիզմը, պետական կարգապահության խախտումները, կարիերիզմը, զրպարտությունը և այլն ու պահանջում են այդ չարագործությունները կատարողներին, սոցիալիստական համակեցության սրբազան կանոնները չարամտորեն խախտողներին ենթարկել ամենախիստ պատասխանատվության, արմատախիլ անել այդ երևույթները։ Եվ այնտեղ, որտեղ այդ երևույթների դեմ ավելի վճռական ու սկզբունքային պայքար են կազմակերպում կուսակցական ղեկավար մարմինները և սկզբնական կուսկազմակերպությունները, այնքան աշխատավորական զանգվածների շրջանում բարձրանում է կուսակցության հեղինակությունը, ուժեղանում նրա կապը մասսաների հետ։ Եվ, ընդհակառակը, որտեղ կուսակցական ղեկավար օրգանները և սկզբնական կուսկազմակերպությունները սոցիալիզմին խորթ երևույթների դեմ վճռական պայքար չեն կազմակերպում, հանդես են բերում հաշտվողականություն, այնտեղ մեծ հարված է հասցվում կուսակցության հեղինակությանը։*

Կոմունիստական կուսակցության անպարտելիության, հասարակական կյանքի բարդ պրոցեսներում նրա ճիշտ կողմնորոշման, ներքին և արտաքին հստակ գիտական քաղաքականություն մշակելու գլխավոր գրավականը մարքս-լենինյան տեսությամբ ղեկավարվելն է, դրա ստեղծագործական կիրառումն ու զարգացումը, տեսության ու պրակտիկայի միասնության պահպանումը։

*Տակավին Ռուսաստանում պրոլետարական կուսակցության գաղափարական նախապատրաստման շրջանում Լենինը գրել է. հեղափոխական պայքարում* «...առաջավոր մարտիկի դերը կատարել կարող է միայն այն կուսակցությունը, որ ղեկավարվում է առաջավոր տեսությամբ» *(Երկեր, հ. 5, էջ 488)։ Այդ տեսությունը մարքսիզմն է։ Հանրահայտ է, որ բոլշևիզմը առաջացավ մարքսիզմի տեսության ամենահաստատուն հիմքի վրա և դրանով ղեկավարվելով էլ հասավ սոցիալիստական հեղափոխության հաղթանակին և սոցիալիզմի կառուցմանը մեր երկրում։*

*Կոմունիստական շինարարության արդի փուլում մարքս-լենինյան տեսությամբ ղեկավարվելը և դրա ստեղծագործական զարգացումը կուսակցության համար շարունակում է մնալ կենսական անհրաժեշտություն։ Առանց մարքս-լենինյան տեսությանը տիրապետելու կուսակցությունը չի կարող իրականացնել կոմունիստական հասարակության կառուցման գիտական ղեկավարությունը։ Տեսությունն է նրան հնարավորություն ընձեռում բացահայտելու և ճանաչելու զարգացած սոցիալիստական հասարակության վերընթացի օբյեկտիվ օրինաչափությունները և, հենվելով դրանց վրա ու հաշվի առնելով դրանք, ճիշտ կողմնորոշվելու ներքին ու արտաքին իրադրության մեջ, ըմբռնելու միջազգային ասպարեզում ու երկրի ներսում տեղի ունեցող երևույթների և իրադարձությունների ներքին կապն ու զարգացման տենդենցները, օգնում անսխալ որոշելու կոմունիստական շինարարության արմատական խնդիրներն ու պրոբլեմները, մշակելու գիտական քաղաքականություն։ Տեսության միջոցով կուսակցությունը ժողովրդական մասսաների գործունեությանը տալիս է կազմակերպված, պլանաչափ և գիտակցական բնույթ։ Մարքսիզմ-լենինիզմը լուսավորում է դեպի կոմունիզմ կուսակցության և ժողովրդի դժվարին ուղին։*

*Բավական է նշել ՍՄԿԿ XXII, XXIII և XXIV համագումարների գիտական կանխագծումները՝ մեր երկրում կոմունիստական հասարակության բարձրա-*

գույն փուլի կառուցման խնդիրների և ուղիների մասին, և պարզ կդառնա, թե ինչպիսի վիթխարի դեր է կատարում մարքս-լենինյան տեսությունն ու նրա ստեղծագործական զարգացումն արդի փուլում: Խորապես հաշվի առնելով և վերլուծելով միջազգային զարգացման առանձնահատկությունները, զարգացած սոցիալիզմի կառուցման շնորհիվ, մեր երկրի ներքին կյանքում տեղի ունեցած տնտեսական, սոցիալական, քաղաքական, կուլտուրական, գաղափարական և այլ փոփոխությունները, կուսակցությունը գիտականորեն հիմնավորեց կոմունիզմի կառուցման համար անհրաժեշտ երեք բարդ խնդիրների լուծման կարևորությունը: Առաջին, ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազա սոցիալիստական ինդուստրիայի հզոր զարգացման, երկրի համատարած էլեկտրիֆիկացման, նյութական և հոգևոր կուլտուրայի բարիքների արտադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման, ավտոմատացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման և դրանց նվաճումները արտադրության մեջ ներդնելու, ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը սոցիալիզմի առավելությունների հետ սերտորեն զուգորդելու, հանրային արտադրության բոլոր պրոցեսները ինտենսիվացնելու և կառավարումը մշտապես կատարելագործելու ու ավելի գիտական դարձնելու միջոցով:

Երկրորդ, սոցիալիստական հասարակական հարաբերությունները կատարելագործելու և հասունացնելու միջոցով դրանց աստիճանական վերաճումը կոմունիստական հասարակական հարաբերությունների: Դրան հասնելու ուղիները կուսակցությունը համարում է միասնական կոմունիստական սեփականության ստեղծումը, քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերացումը, դասակարգերի տարբերությունների հաղթահարումը, ազգերի հետագա ծաղկումն ու մերձեցումը, սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացումը և այլն:

Երրորդ, ձևավորել կոմունիստական հասարակական գիտակցություն, դաստիարակել և կերտել կոմունիզմի նոր մարդուն: Դրան հասնելու ուղիներն են՝ հասարակության բոլոր անդամների կուլտուր-կրթական մակարդակի բարձրացումը, ժողովրդական մասսաներին կոմունիստական գիտական աշխարհայացքով զինելը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի արմատավորումը, մարդկանց գիտակցության մեջ և վարքագծում սոցիալիզմին խորթ բարքերի ու սովորույթների հաղթահարումը և այլն:

ՍՄԿԿ XXIV համագումարը վերջին տարիների կենսափորձի ընդհանրացմամբ նոր ուժով տեսականորեն իմաստավորեց ՍՍՀՄ ներքին զարգացման, կոմունիզմի կառուցման, ինչպես նաև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ու միջազգային զարգացման կարևորագույն պրոբլեմները, դրանով նշանակալից ներդրում կատարելով մարքս-լենինյան տեսության ընդհանուր գանձարանում:

Կոմունիստական կուսակցության ուժի և հզորության աղբյուրը նաև նրա կազմակերպական կուռ կառուցվածքն է, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներով ղեկավարվելը, ներկուսակցական դեմոկրատիայի ծավալումը, նրա շարքերի անսասան միասնությունը:

Դեմոկրատական ցենտրալիզմի էությունը, մի կողմից՝ կուսակցական բոլոր ղեկավար օրգանների ընտրելիությունն է, նրանց հաշվետու լինելը ընտրողների առաջ, մյուս կողմից՝ ըստ աստիճանականության վերադաս ղեկավար օրգանների որոշումների պարտադիր լինելը կուսակցական կոմիտեների,



սկզբնական կուսկազմակերպությունների, կուսակցության բոլոր անդամների համար, փոքրամասնության ենթարկումը մեծամասնությանը: Դեմոկրատական ցենտրալիզմը հետամուտ է կուսակցության միասնական կամքի և գործողությունների, նրա շարքերի միասնության ապահովմանը, նրա բոլոր անդամներին կուսակցության գործունեության համար պատասխանատու դարձնելուն: Անդրադառնալով դեմոկրատական ցենտրալիզմի էությանը, դեռ 1907 թ. Լենինը գրել է. «Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցությունը կազմակերպված է դեմոկրատորեն: Այդ նշանակում է, որ կուսակցության բոլոր գործերը վարում են, ուղղակի կամ ներկայացուցիչների միջոցով, կուսակցության բոլոր անդամները, հավասար իրավունքներով և առանց որևէ բացառության, ընդ որում կուսակցության բոլոր պաշտոնատար անձերը, բոլոր ղեկավար կոլեգիաները, բոլոր հիմնարկները— ընտրովի են, հաշվետու, փոփոխելի» (Երկեր, հ. 11, էջ 546):

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների վրա խարսխված ներկուսակցական դեմոկրատիայի խստագույն կիրառումը, նրա անընդհատ զարգացումը առավել կարևոր նշանակություն ստացավ, երբ կուսակցությունը դարձավ կառավարող կուսակցություն:

Ներկուսակցական դեմոկրատիայի ծավալումը կոմունիստական շինարարության արդի փուլում կուսակցության ղեկավար դերի բարձրացման կարևորագույն պայմանն է: ՍՄԿԿ XXIV համագումարը առանձնահատուկ ուշադրություն նվիրեց կուսակցության գործունեության ոլորտում կոմունիստների պատասխանատվության և ակտիվության բարձրացմանը և խնդիր առաջադրեց վճռականորեն հաղթահարել կուսակցության քաղաքականության մշակման և նրա պրակտիկ գործունեության նկատմամբ կոմունիստների որոշ մասի կողմից ցուցաբերվող անտարբերությունն ու պասսիվությունը:

Ներկուսակցական դեմոկրատիայի անկապտելի մասն է կուսակցության անդամների կանոնադրական իրավունքների պահպանումը՝ ազատորեն արտահայտվելու կուսակցության քաղաքականության և նրա գործունեության բոլոր բնագավառների մասին, քննադատելու կուսակցական բոլոր գործիչների գործունեությունը: Այդ կապակցությամբ անհրաժեշտ է ընդգծել այն վիթխարի դերը, որ ունեն սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը կուսակցության ղեկավար դերի բարձրացման գործում:

Քննադատությունն ու ինքնաքննադատությունը կոմունիստական կուսակցության ներքին զարգացման օբյեկտիվ օրինաչափությունն են, կուսակցությունն ամրապնդելու հզոր զենք: Քննադատության և ինքնաքննադատության միջոցով կուսակցությունը կարողանում է ժամանակին բացահայտել իր աշխատանքի թերությունները, սխալներն ու բացերը և ուղղել դրանք: Թերությունների ու սխալների բացահայտումը, ժողովրդական զանգվածներից դրանք չթաքցնելը ոչ թե թուլացնում, այլ ամրապնդում է կուսակցությունը, ոչ թե հեղինակազրկում, այլ բարձրացնում է նրա հեղինակությունը, ավելի է ամրապնդում նրա կապերը մասսաների հետ: «Քաղաքական կուսակցության վերաբերմունքը դեպի իր սխալները,— գրել է Լենինը,— կուսակցության լրջության և իր դասակարգի ու աշխատավոր մասսաների վերաբերմամբ իր պարտականություններն իրապես կատարելու ամենակարևոր և ամենաճիշտ չափանիշներից մեկն է: Բացահայտորեն ընդունել սխալը, բացահայտել նրա պատճառները, վերլուծել այդ սխալը ծնող իրադրությունը, ուշադրությամբ քննար-

կել սխալն ուղղելու միջոցները,— ահա դա է լուրջ կուսակցության հատկանիշը, ահա դա է իր պարտականությունների կատարումը նրա կողմից, ահա դա է դասակարգի, ապա նաև մասսայի դաստիարակումն ու ուսուցումը» (Երկեր, հ. 31, էջ 52)։

Բոլշևիկների լենինյան կուսակցությունը իր 70-ամյա գործունեության ընթացքում միշտ սուր է պահել իր այդ զենքը։ Սկզբունքային և անզիջում քննադատության վառ օրինակ է Ստալինի անձի պաշտամունքի և նրա վնասակար հետևանքների բացահայտումն ու վերացումը։ Սկզբունքային քննադատության լավագույն օրինակ էր ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թ. հոկտեմբերյան ու նոյեմբերյան, 1965 թ. մարտյան ու սեպտեմբերյան և հաջորդ պլենումներում կուսակցության ղեկավարության մեջ դրսևորված սուբյեկտիվիզմի ու վոլյունտարիզմի վնասակար երևույթների, ներկուսակցական կյանքում և ժողովրդական տնտեսության զարգացման գործում եղած լուրջ սխալների ու թերությունների բացահայտումն ու ուղղումը։ Սխալների և թերությունների բոլշևիկյան քննադատության և ինքնաքննադատության նշանաբանով անցավ ՍՄԿԿ XXIV համագումարի ողջ աշխատանքը։

Քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում անցավ ՀԿԿ Կենտկոմի 1973 թվականի ապրիլյան պլենումը, որտեղ լրջորեն բացահայտվեցին 9-րդ հնգամյակի առաջին երկու տարում հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ տեղ գտած թերություններն ու սխալները, նշվեցին դրանց վերացման ուղիները։ Իսկ դա գրավականն է այն բանի, որ Հայաստանի աշխատավորները, կուսակցության ղեկավարությամբ, կկարողանան լրացնել բացերը և հաջողությամբ կատարել հնգամյա պլանը։

Դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի մեջ արխիկարևոր նշանակություն ունի կուսակցության բոլոր անդամների միասնական, երկաթյա, գիտակցական կարգապահությունը։ Վ. Ի. Լենինը, առանց կուսակցության շարքերի երկաթյա կարգապահության, անհնարին էր համարում կուսակցության ղեկավար դերի իրականացումը, կուսակցության կամքի ու գործողությունների, նրա շարքերի միասնության ապահովումը։ Նա գտնում էր, որ եթե բոլշևիկները կարողացան գրավել իշխանությունը և այն իրենց ձեռքում պահել, ապա դա տեղի ունեցավ, ամենից առաջ, ներկուսակցական խստագույն կարգապահության շնորհիվ։ Լենինը կառավարող կուսակցության կարգապահությունը խախտողների մասին ասել է. «Ով թեկուզ չնչին չափով թուլացնում է պրոլետարիատի կուսակցության երկաթե կարգապահությունը (առանձնապես նրա դիկտատուրայի ժամանակ), նա փաստորեն օգնում է բուրժուազիային՝ ընդդեմ պրոլետարիատի» (Երկեր, հ. 31, էջ 36)։

ՍՄԿԿ XXIV համագումարը առանձնահատուկ ուշադրություն նվիրեց կոմունիստական շինարարության արդի փուլում կուսակցական, ինչպես նաև պետական կարգապահության ամենախիստ բարձրացմանը։ Նա կուսակցության ղեկավար դերի հաջող իրականացման և մեծացման կարևորագույն պայմաններից մեկը համարեց կուսակցական կարգապահության բարձրացումը նրա բոլոր անդամների համար, անկախ նրանց գրաված պաշտոնից։ Համագումարը պահանջեց ամենախիստ պատասխանատվության ենթարկել կուսակցական և պետական կարգապահությունը չարամտորեն խախտողներին, ինչպես նաև բոլոր նրանց, ովքեր դեմագոգիկ կերպով ներկուսակցական դեմոկրատիան փորձում են հակադրել կուսակցական կարգապահությանն ու պահանջկոտու-



թյանը և այդ քողի տակ արդարացնել իրենց անկարգապահությունն ու անարխիզմը։

Խոսելով դեմոկրատական ցենտրալիզմի մասին, անհրաժեշտ է ընդգծել նաև նրա երկու կողմերի փոխհարաբերակցությունն ու դրանց դիալեկտիկական փոխպայմանավորվածությունը։ Պետք է նշել, որ իսկական դեմոկրատիայի հետևողական կիրառումը ներկուսակցական կյանքի բոլոր ոլորտներում ոչ թե հակասում է ցենտրալիզմին, կամ թուլացնում այն, այլ, ընդհակառակը, ավելի է ամրապնդում վերջինս։ Ցենտրալիզմը ևս, եթե այն չի աղավաղվում, չի վերածվում բյուրոկրատիզմի, միայն նպաստում է ներկուսակցական դեմոկրատիայի ծավալմանը։ Այստեղից բխում է, որ չի կարելի ցենտրալիզմն ու դեմոկրատիզմը հակադրել միմյանց կամ առանձին-առանձին ֆետիշացնել։ Դեմոկրատիզմի ամեն բացարձակացում հանգեցնում է մանրբուրժուական անարխիզմի ու ինդիվիդուալիզմի, կուսակցությունը վեր ածում անառարկայական խոսարանի, իսկ ցենտրալիզմի բացարձակացումը հասցնում է ղեկավար գործիչների սանձարձակության, սուբյեկտիվիզմի, ինքնիշխանության, կուսակցական դեմոկրատիայի ոտնահարման։ Անդրադառնալով դեմոկրատիայի ու ցենտրալիզմի ճիշտ փոխհարաբերությանն ու դրանցում դրսևորվող աղավաղումներին, Լենինը գրել է. «...պետք է պարզ ըմբռնել, թե որքան շատ է տարբերվում դեմոկրատական ցենտրալիզմը, մի կողմից, բյուրոկրատական ցենտրալիզմից, մյուս կողմից՝ անարխիզմից... Չկա ավելի սխալ բան, քան դեմոկրատական ցենտրալիզմի շփոթումը բյուրոկրատիզմի և շաբլոնացման հետ» (Երկեր, հ. 27, էջ 243—244)։ Դեմոկրատական ցենտրալիզմի այդ երկու կողմերի ճիշտ ըմբռնումն ու կիրառումը, ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, կուսակցության ղեկավար դերի հաջող իրականացման և բարձրացման կարևորագույն պայմանն են։

Դեմոկրատական ցենտրալիզմի և ընդհանրապես ներկուսակցական դեմոկրատիայի անկապտելի մասն է նաև ղեկավարման կոլեկտիվության լենինյան սկզբունքը։ Ղեկավարման կոլեկտիվությունը կուսակցությանը հնարավորություն է ընձեռում ճիշտ հաշվի առնելու հասարակական զարգացման բազմազան և բարդ երևույթների ներքին կապը, դրանց առաջընթացի տենդենցները, դասակարգային ուժերի հարաբերակցությունը, ներքին ու արտաքին հանգամանքները և դրանց հիման վրա մշակելու հստակ քաղաքականություն, ընդունելու անսխալ որոշումներ, մշակելու պայքարի ու աշխատանքի ճիշտ ձևեր և այլն։ Վ. Ի. Լենինն այդ առթիվ ընդգծել է, որ կուսակցությունը չի կարող հաջողությամբ իրականացնել իր ղեկավար դերը «...առանց գործը վարելու որոշ ձևեր ու կանոններ կոլեկտիվորեն մշակելու» (Երկեր, հ. 4, էջ 272)։ Կուսակցության կոլեկտիվ իմաստությունը, ղեկավարման կոլեկտիվության լենինյան սկզբունքի պահպանումն ու դրա անշեղ կիրառումը ևս կուսակցության ղեկավար դերի բարձրացման կարևորագույն պայմանն են։

Ընդհանուր գծերով սրանք են այն կարևոր գործոնները, որոնք հանդիսանում են լենինյան կուսակցության ուժի և հզորության աղբյուրները, կոմունիստական շինարարության պրոցեսում նրա ղեկավար դերի բարձրացման պայմանները, նրա հաջողությունների գրավականը։

# ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՓԱՅԼՈՒՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

Հանրապետությունում ավարտված աշխատավորների դեպուտատների տեղական սովետների ընտրությունները, որոնք տեղի ունեցան հունիսի 17-ին, մեկ անգամ ևս ցույց տվին կոմունիստական կուսակցության և աշխատավորական ամենալայն մասսաների կուռ միասնությունը, համատեղ առաջ ընթանալու և կոմունիստական շինարարության խնդիրները հաջողությամբ լուծելու նրանց հաստատուն կամքը:

Քաղաքային, շրջանային, գյուղական և ավանային սովետների ընտրությունները անցան բանվորների, կոլտնտեսականների, մտավորականների, մեր բոլոր քաղաքացիների քաղաքական ու արտադրական բարձր ակտիվության պայմաններում: Սերտորեն համախմբված իրենց փորձված ավանգարդի՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը, հանրապետության աշխատավորները տեղական սովետների ընտրությունները դիմավորեցին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանով սահմանված առաջադրանքների կատարման ասպարեզում ձեռք բերված որոշակի հաջողություններով:

Ամրապնդելով հնգամյակի անցած երկու տարում ձեռք բերած նվաճումները, հանրապետության արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և մյուս բնագավառների աշխատողները, ջերմորեն արձագանքելով կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության որոշումներին ու հետևելով երկրի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների օրինակին, համամիութենական սոցիալիստական մրցություն են ծավալել հնգամյակի երրորդ՝ վճռական տարում ավելի նշանակալի հաջողությունների հասնելու համար: Իրենց անսպառ եռանդի, ստեղծագործական նախաձեռնության, կազմակերպված ու նպատակասլաց գործունեության միջոցով նրանք ձգտում են ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարել ընթացիկ տարվա պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները: Գոհունակությամբ պետք է նշել, որ նրանց ազնիվ ձգտումները, տված խոսքը կոնկրետ գործի են վերածվում: Այդ են ցույց տալիս տեղական սովետների ընտրությունների նախօրյակին աշխատավորական կոլեկտիվների ձեռք բերած հաջողությունները:



Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները տեղական սովետների ընտրություններին մասնակցեցին հնգամյակի երրորդ տարվա առաջին հինգ ամսվա համախառն արտադրանքի թողարկման և իրացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանների կատարումով: Նորանոր հաջողություններով ընտրություններին մասնակցեցին նաև գյուղի աշխատավորները. նրանք գերակատարեցին գարնանացանի պլանը և պետությանը անասնապահական մթերքների վաճառքի 5 ամսվա առաջադրանքները:

Քաղաքի և գյուղի աշխատավորների արտադրական ակտիվությունը ընթացակցում է քաղաքական ակտիվությանը, որն այնպես վառ կերպով դրսևորվեց տեղական սովետների ինչպես նախընտրական, այնպես էլ ընտրական կամպանիայի ժամանակ: Նրանք մեծ գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1973 թվականի ապրիլյան պլենումի որոշումները, որոնք կրկին հաստատեցին մեր կուսակցության լենինյան արտաքին քաղաքականության կենսունակությունը, աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու, ստեղծագործական խաղաղ աշխատանքով զբաղված սովետական ժողովրդի անվտանգությունն ապահովելու ուղղությամբ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի և անձամբ Լ. Ի. Բրեժնևի անդուլ ու հետևողական գործունեությունը: Մեր բոլոր աշխատավորները միահամուռ հավանություն տվին Լ. Ի. Բրեժնևի՝ ԳՖՀ կատարած այցի դրական արդյունքներին, որոնք ինչպես Եվրոպայի, այնպես էլ ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման համար պատմական կարևոր նշանակություն ունեն:

Երկրի տիրոջ վեհ զգացումով տոգորված և սեփական իշխանության մարմինների արդյունավետ աշխատանքով շահագրգռված մեր բոլոր քաղաքացիները տեղական սովետների ընտրություններին մասնակցեցին բարձր ակտիվությամբ, իրենց քաղաքացիական պարտականությունների կատարման խոր գիտակցությամբ: Դրա վառ ապացույցն այն է, որ ընտրություններին մասնակցեցին ընտրական իրավունք ունեցող քաղաքացիների 99,98 տոկոսը, որից 99,5 տոկոսը ձայն տվեց դեպուտատության առաջադրված թեկնածուների օգտին:

Ինչպես միշտ, այս ընտրություններում ևս մեր կուսակցությունը հանդես եկավ արհմիութենական, կոմերիտական և հասարակական մյուս կազմակերպությունների ու միությունների հետ համատեղ: Կոմունիստների ու անկուսակցականների սերտ բլոկը, որը մարմնավորում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական ողջ ժողովրդի անխախտ միասնությունը, շահերի ընդհանրությունը, իր կենսունակությունը դրսևորեց ինչպես դեպուտատության թեկնածուների առաջադրման, այնպես էլ ընտրությունների ընթացքում: Ընտրողներն իրենց ձայնը տալով առաջադրված դեպուտատության թեկնածուներին, դրանով իսկ քվեարկեցին կոմունիստական կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության, մեր սոցիալիստական ծաղկուն հայրենիքի հզորության ամրապնդման, ժողովրդի բարեկեցության բարձրացման և կոմունիզմի կառուցման օգտին:

Բարձր գնահատելով տնտեսական ու կուլտուրական շինարարության, ՍՄԿԿ XXIV համագումարի հոյակապ կանխագծումների իրագործման ասպարեզում իշխանության տեղական մարմինների դերը, հանրապետության աշխատավորները քաղաքային, շրջանային, գյուղական և ավանային սովետների

դեպուտատներ ընտրեցին իրենց լավագույն զավակներին, բոլորի կողմից ճա-
նաչված ու հարգված կոմունիստներին ու անկուսակցականներին: Դեպուտատ-
ների թվում կան անվանի բանվորներ, կոլտնտեսականներ, մտավորականներ:
Լինելով իրենց կոլեկտիվների առավել արժանի ներկայացուցիչները, նրանք
իրենց հարուստ փորձով, խոր գիտելիքներով, ընդհանուր գործին նվիրվածու-
թյամբ կարդարացնեն կուսակցության և ժողովրդի վստահությունը, պատվով
կկատարեն ժողովրդին ծառայելու իրենց պարտականությունները:

Այժմ, երբ ավարտվել են ընտրությունները և ամփոփվել դրանց ար-
դյունքները, ակնառու է դեպուտատների որակական կազմի բարելավումը: Դա
միանգամայն օրինաչափ երևույթ է, որը պայմանավորված է սովետական
ողջ ժողովրդի կուլտուր-տեխնիկական և կրթական մակարդակի բարձրաց-
մամբ:

Հանրապետության տեղական սովետների կազմում ընտրվել են 25.899
դեպուտատ, 1971 թվականին ընտրված 25.463-ի դիմաց: Դրանց թվում բան-
վորները կազմում են 41,9, կոլտնտեսականները՝ 25,8 տոկոս: Դեպուտատների
կազմում ավելացել է անկուսակցականների թիվը: Նրանք կազմում են ընտր-
ված դեպուտատների ընդհանուր թվի 56,4 տոկոսը:

Դեպուտատների թվում մեծ տեղ են գրավում կանայք, որոնք տղամարդ-
կանց հավասար աշխատանք են կատարում ժողովրդական տնտեսության,
կուլտուրայի, առողջապահության, լուսավորության և գիտության բնագավառ-
ներում: Նրանցից շատ շատերը ակտիվորեն մասնակցում են հասարակական
աշխատանքներին և տեղական կազմակերպություններին սիստեմատիկ օգնու-
թյուն ցույց տալիս՝ նրանց առջև դրված խնդիրների կատարման գործում:
Բարձր գնահատելով կանանց արտադրական և հասարակական աշխատանքը,
ժողովուրդը նրանցից առավել ակտիվիստներին ընտրեց տեղական սովետների
դեպուտատներ: Կին դեպուտատները կազմում են ընտրված բոլոր դեպուտատ-
ների 46,5 տոկոսը:

Դեպուտատների կազմում զգալի է երիտասարդների թիվը: Այսպես, եթե
նախորդ ընտրությունների ժամանակ տեղական սովետների դեպուտատների
թվում մինչև 30 տարեկանները 23,0 տոկոսն էին, ապա այժմ՝ 25,2 տոկոս:
Նրանք մեր այն խանդավառ երիտասարդներն են, որոնք գործելով միջին և
ավագ սերնդի մարդկանց հետ, կսովորեն պետական կառավարման բարդ
արվեստը, կդառնան իրենց հայրերի ու մայրերի արժանավոր փոխարինողները:

Ընտրված դեպուտատների ընդհանուր թվից 13.226-ը կամ 51,1 տոկոսը
անցյալ գումարման համապատասխան սովետների դեպուտատներ չեն եղել:

Աշխատավորների դեպուտատների քաղաքային, շրջանային, գյուղական
և ավանային սովետներում ընտրված դեպուտատներից շատերը հանրահանաչ
մարդիկ են: Նրանց գիտեն ու հարգում են ոչ միայն տվյալ ընտրական օկրու-
գի, այլև հանրապետության բոլոր աշխատավորները: Այդպիսիներից է աշ-
խատավորների Երևանի քաղաքային սովետի դեպուտատ, հայ ժողովրդի
պանծալի զավակ, պահեստի գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանը, որի գլխա-
վորած դիվիզիան սովետական բանակի կազմում Հայրենական մեծ պատե-
րազմի ահեղ տարիներին կովկասյան նախալեռներից հասավ Բեռլին և մաս-
նակցեց գերմանա-ֆաշիստական հորդաների վերջնական ջախջախմանը: Երե-



վանի քաղաքային սովետի դեպուտատներից է նաև ՍՍՀՄ ժողովրդական ար-
տիստ Բաբկեն Ներսիսյանը, որն իր գեղեցիկ խաղով հիացմունք է պատճա-
ռում հանդիսատեսներին, վայելում նրանց համակրանքը: Արտադրության մեջ
կատարած իր լավագույն աշխատանքի շնորհիվ սիրո և հարգանքի է արժա-
նացել էլեկտրամեքենաշինական գործարանի առաջավոր բանվորուհի Նեկտար
Աթոյանը, որին նույնպես տեսնում ենք Երևանի քաղաքային սովետի դեպու-
տատների կազմում: Մտնելով համամիութենական սոցիալիստական մրցու-
թյան մեջ՝ անվանի բանվորուհին օրական 10-ի փոխարեն հավաքում է 12 կոճ
և ընթանում մրցության առջևից: Աթոյանը խոստացել է հնգօրյակի առաջա-
դրանքը կատարել չորս օրում և ժամկետից երկու ամիս շուտ ապահովել հնգ-
ամյակի երրորդ տարվա պլանի կատարումը: Նա իր խոսքը գործի է վերածում
և օրինակ ծառայում մյուսների համար: Հանրապետության տեղական սովետ-
ների նորընտիր դեպուտատներից են նաև Կամոյի շրջանի Բադիկյանի սովխո-
զի վաստակաշատ կթվորուհի Արաքսյա Թադևոսյանը, Նոյեմբերյանի շրջանի
Ղոշղոթանի սովխոզի ծխախոտագործական օղակի օղակավարուհի Սուլթան
Հակոբյանը, Գորիսի № 21 մեքենայացված շարժական շարասյան արմատու-
րագործ Ռազմիկ Ալեքսանյանը, Հրազդանի շրջանի Հանքավանի սովխոզի
բանվոր Պանայոդ Կոնստանտինովը, կթվորուհի Զիլեյխան Ախմեդովան, Հոկ-
տեմբերյանի շրջանի Արմավիրի բուժական տեղամասի վարիչ Գ. Եփրեմյանը
և ուրիշներ, որոնք աշխատանքի նկատմամբ ցուցաբերում են կոմունիստա-
կան վերաբերմունք և վայելում ողջ կոլեկտիվի համակրանքը: Լենինականի,
Կիրովականի, Ղափանի քաղաքային, Մարտունու, Սիսիանի, Ամասիայի, Վար-
դենիսի, Երևանի Մյասնիկյանի, 26 կոմիսարների շրջանային և մյուս սովետ-
ների նորընտիր դեպուտատների շարքերում կան գիտության ու կուլտուրայի
գործիչներ, անվանի մանկավարժներ, ստեղծագործական ձեռներեցությամբ
օժտված ինժեներներ, տեխնիկներ, տնտեսվարներ, կուսակցական ու սո-
վետական աշխատողներ, որոնք գործնականում ցույց են տվել, որ պատվով
կարդարացնեն իրենց նկատմամբ ցուցաբերված վստահությունը, ջանք չեն
խնայի կուսակցության կողմից տեղական սովետների առջև դրված խնդիրների
հաջող լուծման համար:

Հանրապետությունում տեղական սովետների ընտրություններն անցան
դեմոկրատական լայն հիմունքներով: Ընտրություններն ամենուրեք դրսևորե-
ցին կուսակցության ու ժողովրդի անխախտ միասնությունը և վերածվեցին
կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջ մեր բոլոր աշ-
խատավորների սերտ համախմբվածության վառ ցույցի:

Ընտրությունների հաջող անցկացմանը մեծապես նպաստեց կուսակցա-
կան կազմակերպությունների ծավալած քաղաքական-մասսայական աշխա-
տանքը: Նոր լիցք տալով բանվորների, կոլտնտեսականների, մտավորական-
ների շրջանում տարվող գաղափարական, դաստիարակչական աշխատանքնե-
րին, կուսակցական կազմակերպությունները միաժամանակ ուժեղացրին պրո-
պագանդան ու ագիտացիան ընտրական տեղամասերում, բնակավայրերում,
բոլոր ընտրողների շրջանում: Հմտորեն գործադրելով գաղափարական ազ-
դեցության բոլոր միջոցները՝ դասախոսական պրոպագանդան, ագիտացիան,
քաղաքական ինֆորմացիան, մամուլը, ռադիոն ու հեռուստատեսությունը, կու-
սակցական կազմակերպություններն ընտրողների համար դասախոսություններ
ու զրույցներ էին կազմակերպում ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որո-

շումների, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ ընկեր Բրեժնևի զեկուցման մեջ արծարծված պրոբլեմների, կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ներքին և արտաքին քաղաքականության, միջազգային դրության, բուրժուական կեղծ դեմոկրատիայի, ժամանակակից էտապում կոմունիստական ու բանվորական շարժման ծավալման և այլ ակտուալ հարցերի մասին, որոնք սերտորեն կապվում էին աշխատավորական կոլեկտիվների առջև դրված խնդիրների և դրանց հաջող լուծման հետ:

Քաղաքային, շրջանային և գյուղական կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ խորացնել ու լայնորեն կիրառել ընտրությունների նախապատրաստման ու անցկացման ժամանակամիջոցում կուտակված քաղաքական- մասսայական աշխատանքի փորձը, բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներա-տեխնիկական անձնակազմին, մտավորականներին, բոլոր աշխատավորներին մոբիլիզացնել հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու: Դա է այն հիմնականը, գլխավորը, որով կգնահատվի յուրաքանչյուր կուսկազմակերպության գործունեությունը:

Զարգացած սոցիալիստական հասարակարգի պայմաններում, երբ ավելի են ընդարձակվում սովետական դեմոկրատիայի շրջանակները և ավելի մեծ թվով աշխատավորներ են ընդգրկվում պետական կառավարման ոլորտը, առավել մեծանում է իշխանության մարմինների և նրանց ամենամասսայական օղակը կազմող տեղական սովետների դերը: Դա պարզորոշ ընդգծվեց կուսակցության վերջին համագումարներում, «Աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թվականի մարտի 5-ի որոշման մեջ, որտեղ ասված է. Կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանում նոր, ավելի մեծ պահանջներ են ներկայացվում աշխատավորների դեպուտատների շրջանային ու քաղաքային սովետներին, որոնք տեղերում կուսակցության ու պետության քաղաքականության պրակտիկ իրագործումն ապահովող պետական մարմինների հանգուցային օղակ են:

ՍՄԿԿ Կենտկոմի տվյալ որոշման հիման վրա ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով և միութենական հանրապետությունների գերագույն սովետների օրենքներում վավերացված են աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների իրավունքներն ու պարտականությունները, օրենսդրականորեն հաստատված է դեպուտատների ստատուսը: Այդ ամենը օգնել է սովետների գործունեության բարելավմանը, բարձրացրել նրանց դերը տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների լուծման, սովետական օրինականության պահպանման, քաղաքների ու գյուղերի բարեկարգման, աշխատավորների նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի բարձրացման բնագավառներում: Մեր ամսագրի հունիսյան համարում տպագրված «Սովետների գործունեության նոր մեթոդները» հոդվածում այդ մասին է պատմում Ամասիայի շրջսովետի գործկոմի նախագահ Մ. Հակոբյանը: Նա հանգամանորեն ցույց է տալիս դեպուտատների, սովետների ու նրանց գործկոմների աշխատանքի փորձը, որն ուսանելի է ու ընդօրինակելի: Ուսանելի փորձ ունի նաև Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի սովետը: Նրա նախաձեռնությամբ ու օգնությամբ



գյուղում բացվել է կապի նոր բաժանմունք, կարի, կոշիկի արհեստանոցներ, բարեկարգվել է 5 փողոց, բոլոր բնակարաններում դրվել են գազօջախներ, բարելավվել է բնակիչների կուլտուր-կենցաղային սպասարկումը և այլն: Իր կատարած լավագույն աշխատանքի համար գյուղական սովետն արժանացել է Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի փոխանցիկ դրոշին:

Տեղական սովետների հաջող գործունեության վերաբերյալ նման օրինակներ շատ կարելի է բերել: Բայց, չնայած դրան, դեռևս կան առանձին սովետներ, որոնք ինչպես հարկն է չեն կատարում իրենց առջև դրված խնդիրները: Այսպես. Աշտարակի, Սպիտակի, Եղեգնաձորի շրջանների մի շարք գյուղական սովետներ անբավարար են զբաղվում տնտեսական շինարարության հարցերով, վատ են հետևում բնության պահպանությանն ու հողի արդյունավետ օգտագործմանը, գյուղատնտեսական ձեռնարկություններին անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս արտադրական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման, աշխատանքի արտադրողականության ու շահութաբերության բարձրացման համար: Դեռևս գոհացուցիչ չէ նրանց գործունեությունը նաև գյուղերի բարեկարգման, բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման, երիտասարդ սերնդի մտավոր ու ֆիզիկական դաստիարակության ասպարեզներում, ինչպես նաև առևտրի ու բուժսպասարկման ցանցում պատշաճ կարգ ու կանոնի հաստատման գործում: Նորընտիր սովետները, նրանց բոլոր դեպուտատները պետք է կտրուկ միջոցների դիմեն այդպիսի թերությունները վերացնելու և ընտրողների նակազը բարեխղճորեն կատարելու համար:

Շատ են ու բազմազան աշխատավորների դեպուտատների սովետներին ներկայացվող պահանջները: «Վիթխարի է այն դերը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— որ նրանք պետք է խաղան ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում արտադրության վերելքն ապահովելու գործում: Հոգատարություն բնակարանների, դպրոցների ու մանկական հիմնարկությունների շինարարության պլանների կատարման, տեղական բարեկարգման և աշխատավորներին անհրաժեշտ ապրանքներով ու ծառայություններով անխափան ապահովելու նկատմամբ, այս ամենը սովետների ուղղակի գործն է» (*Լենինյան կուրսով*, հ. 3, էջ 514):

Կուսակցության շրջկոմները, քաղկոմները և սկզբնական կազմակերպությունները պետք է սիստեմատիկ օգնություն ցույց տան տեղական սովետներին՝ նրանց առջև դրված խնդիրների կատարման և բոլոր բնագավառներում նորանոր հաջողությունների հասնելու գործում:



# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Ե. Թ. ԱՍԾԱՏՐՅԱՆ**

Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան (1972 թ.) պլենումի առաջադրած կարևոր խնդիրներից մեկը հանրային արտադրության արդյունավետության բարձրացումն է, որն իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման հիմնական պայմանն է։*

*ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում Հայաստանի աշխատավորները ևս մեծ եռանդ են գործադրել մեր հանրապետության հետագա առաջընթացն ապահովելու, ազգային հարստությունը մեծացնելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու և բնակչության կենսամակարդակը բարելավելու համար։*

*Հայաստանում, ինչպես եղբայրական մյուս հանրապետություններում, անցած տարին նշանավորվեց ժողովրդական տնտեսության հետագա վերելքով և զարգացմամբ։ Արդյունաբերության արտադրանքի իրացման աճի տեմպը 1972 թ., 1971 թ. համեմատությամբ, կազմել է 5,3 տոկոս։ Ընդլայնվել է մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը, որը բնակչության եկամուտների անշեղ աճի վկայությունն է։ Ավելացել է կարի առարկաների, մսեղենի ու կաթնեղենի, ինչպես նաև ժողովրդական սպառման այլ ապրանքների արտադրությունը։*

*1972 թ. հաջողությամբ են աշխատել Երևանի «Էլեկտրոն», Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանների, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի և ուրիշ շատ ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք, նախորդ տարիների համեմատությամբ, կատարել են արտադրանքի թողարկման ու պետական առաջադրանքները, բարձրացրել արտադրության աճի տեմպերը։*

*Հանրապետության աշխատավորները մեծ ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի «1973 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի աշխա-*



*տողների համամիութենական սոցիալիստական մրցությունը ծավալելու մասին» որոշումը։*

*Պաշտպանելով և հավանություն տալով ՍՍՀՄ առաջավոր կոլեկտիվների նախաձեռնությանը՝ հաջողությամբ կատարելու հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները, Հայաստանի աշխատավորները լի են վճռականությամբ՝ 1973 թ. դարձնելու հարվածային աշխատանքի տարի, արժանի ավանդ ներդնելու երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման և մեր ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրայի վերելքի ծրագրի հաջող իրականացման գործում։*

*Մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները սոցիալիստական պարտավորություն են վերցրել՝ արտադրությունն ինտենսիվացնելու, նոր գործարկվող կարողությունների յուրացման ժամկետները կրճատելու, արտադրության ռեզերվները հայտաբերելու և օգտագործելու միջոցով 1973 թ. համախառն արտադրանքի պլանը կատարել 103, աշխատանքի արտադրողականության աճի առաջադրանքները գերակատարել 15 տոկոսով, արտադրանքի աճի առնվազն 90 տոկոսն ապահովել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Շինարարները խոստացել են տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 27-ին, ժամկետից 10 օր շուտ գործարկել թեթև, սննդի և մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության բոլոր օբյեկտները, պլանից դուրս հանձնել 10.000 քմ ընդհանուր բնակելի տարածություն։ Արտադրության արդյունավետությունը բարձրացնելու և աշխատանքի արտադրողականության անշեղ աճն ապահովելու նպատակով մինչև 1973 թ. դեկտեմբեր ամիսը արմատավորվելու են 74 հոսքային-մեքենայացված և ավտոմատացված գծեր, կառավարման 9, ճյուղային ավտոմատացված և արտադրության կառավարման երկու ենթասիստեմներ։ Ծրագրված է տարվա ընթացքում յուրացնել նոր տեխնիկայի 183 միջոցառում, որոնցից 78-ը՝ արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման ոլորտում։*

*Գյուղի աշխատավորները, սոցիալիստական մրցության մեջ մտնելով Վրաստանի և Ադրբեջանի եղբայրական հանրապետությունների գյուղատնտեսության աշխատողների հետ, պարտավորվել են գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի ծավալը, 1972 թ. համեմատությամբ, մեծացնել 16,6 տոկոսով և մինչև նոյեմբերի 29-ը կատարել հողագործության և անասնապահական մթերքների պետական մթերումների տարեկան առաջադրանքները։*

*Նշելով 1972 թ. սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում ձեռք բերված նվաճումները, չի կարելի չխոսել մեր հանրապետության արդյունաբերության, կապիտալ շինարարության և գյուղատնտեսության մեջ տեղ գտած էական թերությունների մասին։*

*Այս տարվա ապրիլին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը, որը քննարկեց «1973 թվականի պետական պլանի և սոցիալիստական պարտավորությունների կատարման համար աշխատավորներին մոբիլիզացնելու ուղղությամբ հանրապետության կուսկազմակերպությունների քաղաքական և կազմակերպչական աշխատանքի մասին՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումների լույսի տակ» հարցը։ Պլենումը նշեց, որ հանրապետության արդյունաբերության մեջ դեռևս ցածր է արտադրության արդյունավետությունը, դանդաղ է աճում աշխատանքի արտա-*

դրողականությունը, լրիվ չեն օգտագործվում ներքին ռեզերվները, թույլ է ներդրվում նոր տեխնիկան, պակասում է ֆոնդահատույցը, որի հետևանքով հանրապետության ժողովրդական տնտեսության առանձին ճյուղեր ետ են մնում։ Շատ ձեռնարկություններում պատշաճ կերպով չի տարածվում ՍՄԿԿ Կենտկոմի կողմից հավանության արժանացած՝ երկրի առաջավոր ձեռնարկությունների՝ աշխատանքի գիտական կազմակերպման, արտադրության կառավարման ավտոմատացված սիստեմների մշակման ու ներդրման, էլեկտրոնային հաշվիչ տեխնիկայի և կառավարման ժամանակակից այլ սիստեմների կիրառման փորձը։

Ինչպես նշվեց պլենումում, արտադրության աճի տեմպերի դանդաղեցումը հետևանք է նաև այն բանի, որ առանձին մինիստրություններ, գերատեսչություններ, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարներ փոխանակ կազմակերպական աշխատանքով և տեխնիկա-տնտեսական միջոցառումներով ապահովելու պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարումը, ձգտում են «սրբագրել» արդեն հաստատված պլանները՝ դրանք ցածրացնելու նպատակով։

Նոր տեխնիկայի ներդրման պլանները սիստեմատիկորեն չկատարելու, ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման ցածր տեմպերի, աշխատաժամանակի մեծ կորուստների հետևանքով շատ ձեռնարկություններում չեն կատարվում տեխնիկատնտեսական կարևորագույն ցուցանիշները, որոնք բնութագրում են արտադրության զարգացման մակարդակն ամբողջությամբ։

Ոչ միշտ է գործնական պայքար մղվում նյութական ու ֆինանսական ռեսուրսների խնայողաբար օգտագործման, կորուստների և անարտադրողական ծախսերի կրճատման համար, որի պատճառով լինում են ապրանքանյութական արժեքների պակասորդներ և փչացման դեպքեր։

Հետպատերազմյան տարիներին Հայաստանի արդյունաբերությունը 1972 թ. առաջին անգամ է, որ չի կատարել համախառն արտադրանքի պլանը, իսկ արտադրության աճի տեմպերը ցածր էին միութենական միջին և շատ հանրապետությունների աճի տեմպերից։ Անցյալ տարի գործող 688 արդյունաբերական ձեռնարկություններից 97-ը չկատարեցին արտադրանքի իրացման պլանը և պետությանը պակաս տվեցին ավելի քան 60 մլն ռուբլու արտադրանք։ Այդ գլխավորապես հետևանք էր այն բանի, որ լիովին չէին օգտագործվել գործող արտադրական կարողությունները, նվազել էր աշխատանքի արտադրողականությունը, իջել էին որակային մի շարք ցուցանիշներ։ Եթե սոցիալիստական պարտավորություններով նախատեսվում էր արտադրանքի աճի 75 տոկոսն ստանալ աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, ապա փաստորեն ստացվեց միայն 43 տոկոս։ Հարկավոր է նշել, որ 1971 թ. 139 և 1972 թ. 200 ձեռնարկություններ չեն կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։

Մի շարք կարևորագույն առարկաների արտադրության պլանների թերակատարումը հանգեցրեց այն բանին, որ լարված վիճակ ստեղծվեց հանրապետության և երկրի տնտեսական մյուս շրջանների ժողովրդական տնտեսության պահանջները ժամանակին կատարելու գործում։ Այսպես, 1972 թ. նախատեսված պլանից պակաս են տրվել 300 հազար տոննա ցեմենտ, 259 հազար խմ հավաքովի երկաթ-բետոնե կոնստրուկցիաներ ու դետալներ, 11,7 հազար տոննա հանքային պարարտանյութ, 132 հազար հատ ավտոդող և այլն։ Ավելին, 1971 թ. համեմատությամբ, իջել է արտադրանքի մի քանի տեսակների արտադրության մակարդակը (գլված պղինձ, ծծմբաթթու, մետաղահատ հաստոցներ, բամբակյա ու բրդյա գործվածքներ, կաշվե կոշիկ և այլն)։

Ժամանակակից էկոնոմիկայի բնորոշիչն արտադրության բարձր մակարդակն է, որը արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացման, մասնագիտացման, կոոպերացման ու կոմբինացման արդյունք է։ Սակայն, երբ արտադրության մի օղակ թերակատարում է իր առաջադրանքները, դրանով իսկ նա ձախողում է մյուս օղակների աշխատանքը։

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման վրա վճռական ազդեցություն ունեցող գործոնների փաստական վերլուծությունից կարելի է եզրակացնել, որ ժողովրդական վերահսկիչների առջև դրված են լուրջ խնդիրներ՝ առավել գործուն զբաղվել արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական գործունեության բոլոր կողմերով, ուժերը մոբիլիզացնել արտադրության ռեզերվների հայտնաբերման ու օգտագործման համար։

Անհրաժեշտ է, որ ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերը արդյունավետ գործեն արդյունաբերական ձեռնարկությունների բոլոր արտադրամասերում, բաժանմունքներում, շինարարության ու տրանսպորտի կազմակերպություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում։

ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. դեկտեմբերյան պլենումում լուրջ քննադատվեցին մի շարք մինիստրություններ և գերատեսչություններ, որոնք երկրի տնտեսական աճի արագացման ռեալ հնարավորությունները չեն օգտագործել ՍՄԿԿ XXIV համագումարի նշած հիմնական առաջադրանքները կատարելու համար։ Պլենումի որոշման մեջ ասված է, որ այդ թերությունները վերացնելու նպատակով անհրաժեշտ է էապես բարելավել ժողովրդատնտեսական պլանավորման, էկոնոմիկայի ղեկավարման ոճն ու մեթոդները։

Թեև Հայաստանի արդյունաբերության մեջ որոշակի տեղաշարժեր կան գործող արտադրաֆոնդերի օգտագործումը բարելավելու համար, սակայն դրանց արդյունավետության բարձրացումը մնում է որպես մեր կարևորագույն խնդիրներից մեկը։ Ընդհանուր առմամբ, հանրապետությունում ֆոնդահատույցը 1971 թ. 1 ռուբլի 67 կոպեկից 1972 թ. իջել է մինչև 1 ռուբլի 55 կոպեկ։

Սահմանված առաջադրանքների թերակատարման հիմնական պատճառներից մեկն առկա արտադրակարողությունների լրիվ օգտագործման և նոր գործարկվողների յուրացման գործում եղած թերություններն են։ 1971—1972 թթ. ուսումնասիրված 27 ձեռնարկություններից միայն երեքում են արտադրակարողությունները լրիվ օգտագործվել։ Դրանք սիստեմատիկաբար լրիվ չեն օգտագործվում Ալավերդու լեռնամետալուրգիական, Կիրովականի քիմիական, Իջևանի գորգերի կոմբինատներում, Երևանի ավտոդողերի, Լենինականի կոնդենսատորների գործարաններում, Երևանի հրուշակեղենի-մակարոնի ֆաբրիկայում և այլ ձեռնարկություններում։ Կիրովականի քիմիական կոմբինատի կարբամինի արտադրակարողություններն օգտագործվում են 49, Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի եռացող շերտում վինիլացեցատինը՝ 50, Հայէլեկտրագործարանում տրանսֆորմատորներինը և Երևանի էլեկտրաշարժիչ գործարանում փոքր կարողության էլեկտրաշարժիչներինը՝ 48, Սևանի ապակեմեկուսիչ գործարանում անընդմեջ ապակեթելինը՝ 61, Ալավերդու կարի ֆաբրիկայում կարի արտադրանքներինը՝ 33 տոկոսով և այլն։ Մի շարք ձեռնար-

կությունններում դեռևս ցածր է հերթափոխայնության գործակիցը։ 1971 թ. մեքենաշինական ձեռնարկություններում, կատարված օրական դիտարկումների տվյալներով, մետաղամշակման սարքավորումների հերթափոխայնության գործակիցը կազմել էր 1,28։ Հետազոտման օրը տարբեր պատճառներով չէր գործում 2.500 միավոր սարքավորում։ Ընդհանուր քանակությունից տեղադրված սարքավորումների 67 տոկոսն օգտագործվում էր առաջին և միայն 33 տոկոսը՝ երկրորդ հերթափոխում։ Նույնն էր վիճակը նաև 1972 թվականին։ Նշելով երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գործում եղած թերությունները, Լ. Ի. Բրեժնևը «ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին» զեկուցման մեջ նշեց. «Դրանցից ամենաէականն այն է, որ ժողովրդական տնտեսության զարգացման մեջ մինչև օրս բավարար լիակատարությամբ և արդյունավետությամբ չեն օգտագործվում ներքին հարուստ ռեզերվները, ինտենսիվ, որակական գործոնները։ Մի շարք ճյուղերում, շատ ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում դանդաղ են նվազում աշխատանքային, ինչպես նաև հումքի և նյութերի ծախսումները։

Այժմ գլխավոր խնդիրն է շեշտակիորեն փոխել կողմնորոշումը, շեշտը դնել տնտեսության վարման ինտենսիվ մեթոդների վրա, դրանով իսկ ապահովել էկոնոմիկայի արդյունավետության լուրջ բարձրացումը։ Խոսքն այն մասին է, որ տնտեսական աճն ավելի ու ավելի մեծ չափով տեղի ունենա աշխատանքի արտադրողականության բարձրացման ու գիտատեխնիկական առաջընթացի արագացման, գործող արտադրական կարողությունների առավել լրիվ օգտագործման, տնտեսության մեջ ներդրված յուրաքանչյուր ռուբլու, օգտագործվող մետաղի, վառելիքի, ցեմենտի, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննայի փոխհատուցումը բարձրացնելու միջոցով» («Լենինյան ուղիով», 1973, № 1, էջ 44)։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի փաստաթղթերում ընդգծվում է, որ անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել արտադրության աճի տեմպերին, միաժամանակ կրճատել յուրաքանչյուր միավորի վրա կատարված նյութական ու ժամանակի ծախսումները, բարձրացնել արտադրանքի որակը։

Հանրապետության արդյունաբերության մեջ վերջին երկու տարում որոշ դրական տեղաշարժեր են նկատվել արտադրանքի որակի բարձրացման բնագավառում։ Հայկական ՍՍՀ-ում թողարկվող մի շարք արտադրատեսակներ արժանացել են որակի պետական նշանի։ Սակայն, ընդհանուր առմամբ, արդյունաբերության արտադրանքի որակը ցածր է։ Շատ արտադրատեսակներ բարոյապես հնացել են և սպառողների արդարացի դժգոհությունն են առաջացնում։ Անցյալ տարի շատ բողոքներ են ստացվել ավտոդողերի, կարի արտադրատեսակների, կոշիկի, Հայէլեկտրագործարանի թողարկած սառնարանների (12.600 բողոք) մասին. յուրաքանչյուր տասներորդ սառնարանը եղել է ցածրորակ։ Խոտանվել է 127 հազար գծամետր բամբակե գործվածք, 560 հազար զույգ գուլպա։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը քննադատեց կապիտալ շինարարության բնագավառում եղած լուրջ թերությունները։ Հաշվի առնելով համախառն արտադրանքի աճի արագացման տնտեսական նպատակահարմարությունը, նախատեսված է առաջիկա տարիներին կապիտալ ներդրումները հատկացնել նախ՝ գործարկելիք կառույցներին, որոնց շահագործումը կապահովի մեր էկոնոմիկայի զարգացման տեմպերն ու համամասնությունները։



Անցած տարիներին հանրապետությունում ձախողվել է արդյունաբերության առանձին ճյուղերի մի շարք օբյեկտների գործարկումը։ Շահագործման չեն հանձնված թեթև, փայտամշակման, սննդի, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության մի քանի օբյեկտներ։ Ձախողվել են նաև արտադրական օբյեկտների գործարկման պլանները գյուղատնտեսության մեջ։ Ֆինանսավորման կենտրոնացված աղբյուրների հաշվին հիմնական ֆոնդերի գործարկման պլանը 1972 թ. կատարվել է 66,3 տոկոսով։ Ավելին, 1971 թ. համեմատությամբ, այն պակասել է 20,6 տոկոսով։ Լիովին չեն գործարկված Երևանի քիմկոմբինատի ացետիլենի, Չարենցավանի լիզինի գործարանի, Կիրովականի ու Հոկտեմբերյանի կահույքի ֆաբրիկաների կարողությունները։ Թույլ տեմպերով է ընթանում Արարատի ոսկեզտիչ ֆաբրիկայի, Մասիսի ատաղձագործական առարկաների, Շինուհայրի ռետինե կոշիկի և Նոյեմբերյանի պանրի գործարանների շինարարությունը։

Հետևողականորեն լուծելով ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նշված՝ աշխատավորների բնակարանային պայմանները բարելավելու վերաբերյալ խնդիրը, առաջիկա տարիներին մեր հանրապետությունում շահագործման է հանձնվելու ավելի քան 4 մլն քմ ընդհանուր բնակելի տարածություն։ Ըստ հաշվետվության, բնակարանային շինարարության 1971 թ. պլանը կատարվել էր, սակայն, այսպես կոչված, շինարարական «թերավարտություններով», ավելի շիտակ ասենք՝ հավելագրումներով։ Այդ թերությունների վերացման համար անցյալ տարի վատնվեց ավելի քան 4 ամիս։ Բնակարանային շինարարության պլանը չկատարվեց նաև 1972 թ. և շահագործման չհանձնվեց գրեթե 200 հազար քմ բնակելի տարածություն։ Չկատարվեց նաև հանրակրթական դպրոցների ու մանկական նախադպրոցական հիմնարկությունների շենքերի կառուցման պլանը։

Կապիտալ շինարարության ծրագրի թերակատարման հիմնական պատճառները շինարարական կազմակերպություններում եղած կազմակերպական թերություններն են, չկարգավորված նյութատեխնիկական մատակարարումը, պատշաճ ակտիվության և նախաձեռնության բացակայությունը պատվիրատուների և շինարարական կազմակերպությունների կողմից, ինչպես նաև նախագծային ինստիտուտների ու կազմակերպությունների աշխատանքում եղած մի շարք թերությունները։ Բնակարանային շինարարության պլանի թերակատարման հիմնական պատճառներից մեկը կապալային կազմակերպությունների անբավարար աշխատանքն է՝ արտադրական կարողություններն ավելացնելու և ինդուստրիալ բազա ստեղծելու գործում։

Ինչպես ցույց են տալիս ժողովրդական վերահսկողության մարմինների ստուգումները, շինարարական կազմակերպությունների տնտեսական ղեկավարները միշտ չէ, որ մտահոգվում են կառուցվող օբյեկտները ժամանակին շահագործման հանձնելու հարցով. հետևողականորեն չեն պայքարում աշխատաժամանակի, շինանյութերի կորուստների դեմ, մեքենաների ու մեխանիզմների ավելի լավ օգտագործման, աշխատանքների բարձր որակի համար։

Արտադրանքի համախառն արտադրության ավելացման նպատակով ՍՄԿԿ XXIV համագումարի նշած բնագծերը նվաճելու վճռական պայմանն է հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը։ Իսկ դա, իր հերթին, անհնար է առանց բարձր արտադրողական մեքենաներ ու մեխանիզմներ, առաջադիմական տեխնոլոգիա արմատավորելու։ Հանրապետության ժողովրդական

տնտեսության տարբեր բնագավառներում 1972 թ. ներդրված է 23 հոսքային
ավտոմատացված գիծ և կոնվեյեր, 25 կոմպլեքսային մեքենայացված և 6
կոմպլեքսային ավտոմատացված արտադրամաս ու տեղամաս։ Այդ միջոց-
առումների արմատավորումից ստացված տարեկան պայմանական տնտեսա-
կան արդյունքը կազմեց ավելի քան 12 մլն ռուբլի։
Միաժամանակ նոր տեխնիկայի ներդրման համար պլանով նախատեսված
449 միջոցառումներից փաստորեն արմատավորվել է 382-ը, կամ պլանը կա-
տարվել է 84,9 տոկոսով։ Մի քանի գիտական հետազոտությունների արժեքա-
վոր արդյունքներ չեն կիրառվում արտադրության մեջ՝ դրանց նկատմամբ մի-
նիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների կողմից պատշաճ
ուշադրության բացակայության պատճառով։ Այսպես, ՀՍՍՀ մթերումների մի-
նիստրության օբյեկտներում չի արմատավորվել արտադրապրոցեսների կոմպ-
լեքսային մեքենայացումը. պահեստներում, երկաթուղային վագոններում հա-
ցահատիկն ու ալյուրը տարաներով բեռնելու և դասավորելու համար չկան մե-
քենայացված սարքեր։ Արդյունաբերական շինարարության մինիստրությունը
զոդման աշխատանքների պրոգրեսիվ մեքենայացված եղանակների ներդրման
պլանը կատարել է միայն 36, արդյունավետ արմատուրային պողպատի կի-
րառմանը (հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ և արտադրանքներ
պատրաստելիս)՝ 64,1 տոկոսով։
Հաշվի առնելով տեխնիկական առաջընթացն ապահովող միջոցառումների
մեծ նշանակությունը հնգամյակի առաջադրանքների կատարման գործում,
պետք է բարձրացնել ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկա-
վարների պատասխանատվությունը նոր տեխնիկայի ներդրման պլանների կա-
տարման համար, խիստ պատասխանատվության ենթարկելով նրանց, ովքեր
կձախողեն այդ գործը։
Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդ-
ման նպատակով նախատեսված միջոցառումները ռեալ նախադրյալներ են
ստեղծում 1972 թ. անբարենպաստ եղանակի հետևանքները հաղթահարելու
համար։ Դրա հետ մեկտեղ, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավար-
ները պետք է ավելի շատ ուշադրություն նվիրեն եղած ներքին խոշոր ռեզերվ-
ների մոբիլիզացմանը, հողատարածությունների, հատկապես ոռոգելի հողերի,
ինչպես նաև տեխնիկայի, կերի, պարարտանյութերի և այլ ռեսուրսների ռա-
ցիոնալ օգտագործմանը, ձգտեն՝ իջեցնելու գյուղատնտեսական արտադրանքի
ինքնարժեքը, բարելավելու հիմնական ֆոնդերի օգտագործումը։ Չի կարելի
հաշտվել այն բանի հետ, երբ առանձին ղեկավարների անփութության և անհո-
գության պատճառով կոլտնտեսությունների և սովխոզների հիմնական հարըս-
տությունը՝ հողը, օգուտ չի տալիս։
Գյուղատնտեսության մեջ մեծ մասշտաբներով կապիտալ ներդրումների
պայմաններում դրանց օգտագործման արդյունավետությունն անբավարար է,
գյուղատնտեսական արտադրության շահավետությունը ցածր, որի հետևանքով
տարեցտարի աճում է երկրի այլ շրջաններից հանրապետություն ներմուծվող
գյուղատնտեսական մթերքների քանակը։ 1972 թ. 365 սովխոզներից վնասով
են աշխատել 169-ը։ Վնասների չափը կազմում է ավելի քան 15 մլն ռուբլի
կամ երկու անգամ ավելի, քան 1971 թվականին։ Տնտեսությունների մեծ մասի
վնասաբեր գործունեությունը բացատրվում է ոչ այնքան օբյեկտիվ պատճառ-
ներով, որքան առանձին ղեկավարների անտնտեսվարությամբ ու անգործու-



թյամբ, որի հետևանքով աճեցրած բերքը լրիվ չափով չի հասնում սպառող-
ներին, մասամբ փչանում է կամ հափշտակվում է։
«ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին» զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն
ասաց. «Այս տարվա փորձը ցույց տվեց, որ եղանակի փոփոխականություն-
ներից առավել փոքր վնաս կրեցին այն տնտեսությունները, որտեղ պահպան-
վում են ագրոտեխնիկայի բոլոր պահանջները, լավ հիմքերի վրա է դրված
սերմնաբուծությունը, ճիշտ են օգտագործվում պարարտանյութերը և ջրատըն-
տեսական կառուցվածքները։ Մի խոսքով, որտեղ գործը լավ են կատարել, այն-
տեղ էլ երաշտի հետևանքները այնքան ծանր չեն եղել։ Այնպես որ, ընկերներ,
բնությունը՝ բնություն, բայց աշխատանքն էլ՝ աշխատանք, և տարերքի ար-
հավիրքների դեմ մղվող պայքարում լավագույն զենքը տնտեսավարման բարձր
կուլտուրան է, ակտիվ, անձնվեր աշխատանքը» («Լենինյան ուղիով», 1973,
№ 1, էջ 43)։ Տնտեսավարության կուլտուրայի բարձրացման վերաբերյալ այս
խոսքերը լիովին վերաբերում են նաև մեր հանրապետության գյուղատնտե-
սության աշխատողներին։
Երկրի ազգային հարստության անշեղ աճը, հանրային արտադրության
բարձր մակարդակը, արտադրակարողությունների զարգացումը և գյուղատըն-
տեսական արտադրանքի ավելացումը, ինչպես նաև խոշոր մասշտաբների կա-
պիտալ շինարարության իրականացումը կանխորոշում են ապրանքանյութա-
կան արժեքների ու դրամական վիթխարի միջոցների առկայությունը շրջանա-
ռության և սպառման մեջ։
Աշխատավորների ստեղծած ազգային հարստությունը կբազմապատկվի,
եթե կատարվի ապրանքանյութական արժեքների վիթխարի մասսայի շարժ-
ման ճիշտ և ամենօրյա հաշվառում, վերացվեն ամեն կարգի անարտադրո-
ղական ծախսերն ու կորուստները։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմը կու-
սակցական, սովետական, վարչական և տնտեսական օրգանների առջև շատ
լուրջ դրեց սոցիալիստական սեփականության պահպանման հարցը։ Մինչդեռ
Հայկական ՍՍՀ շատ կազմակերպություններ ժամանակին անհրաժեշտ հետե-
վություններ չարեցին ՍՄԿԿ Կենտկոմի պահանջներից և պատշաճ միջոցներ
չձեռնարկեցին դրանք կատարելու համար։ Դրա հետևանքով պետական և կոո-
պերատիվ սեփականության պահպանումը շատ ձեռնարկություններում, կա-
ռույցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում դեռևս անբավարար է։
Հնգամյակի կատարման նպատակով հանրապետության ժողովրդական
վերահսկողության մարմինների այսօրվա ամբողջ պրակտիկ աշխատանքը
պայմանավորված է ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. դեկտեմբերյան և Հայաստանի
Կոմկուսի Կենտկոմի 1973 թ. ապրիլյան պլենումների որոշումներով։ Անհրա-
ժեշտ է ամբողջ ուշադրությունը նվիրել, առաջին հերթին, պետական կարգա-
պահության ամրապնդման, ժողովրդական տնտեսության զարգացման իննե-
րորդ հնգամյա պլանի, հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա պլանի ու սո-
ցիալիստական պարտավորությունների կատարման ու գերակատարման հա-
մար մղվող պայքարին։ Ընդսմին, հարկավոր է ղեկավարվել ՍՄԿԿ Կենտկոմի
այն ցուցումներով, որ արտադրության պլանները, աշխատանքի արտադրողա-
կանության առաջադրանքները կատարվեն յուրաքանչյուր ճյուղի, ձեռնարկու-
թյան, արտադրամասի, տեղամասի կողմից՝ ժողովրդական տնտեսության բո-
լոր օղակներում։
Հնգամյակի երրորդ տարում նոր, պատասխանատու խնդիրներ են ծառա-

նում աշխատանքային բոլոր կոլեկտիվների և յուրաքանչյուր աշխատավորի առջև։ Այս տարվա աշխատանքների արդյունքներով մեծապես պայմանավորված կլինի հնգամյա պլանի հաջող կատարումը։ Չնայած դրան, հանրապետության արդյունաբերության 1973 թ. առաջին եռամսյակի արդյունքները գոհացուցիչ չեն։ Համախառն արտադրանքի պլանը կատարվել է 102 տոկոսով, բայց արտադրության աճի տեմպերը, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, 6-ի փոխարեն կազմել են միայն 1,6 տոկոս, իսկ աշխատանքի արտադրողականությունն իջել է 1,2 տոկոսով։

Մի շարք մինիստրություններ իրենց պլանները գերակատարել են, սակայն արտադրության ծավալի մակարդակը, 1972 թ. նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, իջել է։ Հաճախ, ակներևույթ բարեհաջողություն ստեղծելու նպատակով, պլանները փոխադրվում են հաջորդ ամիսները։ 1972 թ. արտադրության ընդհանուր պլանից փոխադրվել էր չորրորդ եռամսյակ, ապա բոլորովին հանվել 100 մլն ռուբլու արտադրանք։ Հարկավոր է նշել, որ արտադրության նախատեսված ծավալները փոխադրելու և տարվա վերջին հանելու արատավոր պրակտիկան գոյություն ունի և ներկայումս։

Ժողովրդական վերահսկողության հանրապետական, քաղաքային և շրջանային կոմիտեները, արդյունաբերական ձեռնարկությունների ու կազմակերպությունների ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերը կուսկազմակերպությունների ղեկավարությամբ մեծ աշխատանք են կատարում տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում կուսակցական և սովետական մարմիններին օգնություն ցույց տալու՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների, պետական պլանների ու առաջադրանքների կատարման, պետական կարգապահության ամրապնդման համար պայքարի գործում։

Հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի և նրա տեղական մարմինների կողմից Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություններում անցկացվել է արտադրության ռեզերվների բացահայտման և օգտագործման ստուգում։ Ստուգումն ընդգրկել էր 13 մանածագործական, 12 տրիկոտաժի, 9 կարի և 9 կաշվի ու կոշկեղենի ձեռնարկություն։ Դրան մասնակցել են մոտ 1.000 ժողովրդական վերահսկիչ։

Ստուգվել է Արարատի ցեմենտաշիֆերային կոմբինատը, որը վերջին ժամանակաշրջանում չի ապահովել արտադրական կարողությունների լրիվ օգտագործումը, սիստեմատիկաբար չի կատարել պետական պլանը և վառելանյութի մեծ գերածախս ունի։

Խմբերի և պոստերի, «Կոմերիտական լուսարձակ»-ի և արհմիության ակտիվիստների շուրջ 5 հազար անդամներ մասնակցեցին ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների 150 ձեռնարկություններում անցկացված՝ սև մետաղների, էլեկտրական և ջերմային էներգիայի ու վառելանյութի օգտագործման ստուգմանը։

Այժմ վերահսկողության մարմինները, պետպլանը, նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչությունը և կենտրոնական վիճակագրական վարչությունն անցկացնում են հանրապետության ժողովրդական տնտեսությունում նյութական ռեսուրսների օգտագործման մասսայական ստուգում։ Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի ստուգումներից պարզվում է, որ առանձին ձեռնարկություններում, կարծեցյալ բարեհաջողություն ստեղծելու նպատակով, կատարում են հավելագրումներ և խաբում պետությանը։ Օրինակ, կիսահաղորդչային տեխնիկայի հատուկ նախագծային-կոնստրուկտորական բյուրոյում, 1971 թ. և 1972 թ. առաջին եռամսյակի արտադրության պլանների կատարման մասին պետական հաշվետվության մեջ ընդգրկված էին 1.162 հազար ռուբլու անավարտ արտադրատեսակներ։ Նույն տեղում, առանց պետական կարգն ու օրինականությունը պահպանելու, ֆինանսական կարգապահությունը խախտելով, երկրորդ հերթափոխի աշխատանքի մեջ ներգրավել են ուրիշ կազմակերպությունների մասնագետներ։ Պետական հաշվետվության մեջ համանման հավելագրումներ են հայտնաբերվել նաև Արթիկի վակուումային էլեկտրավառարանների գործարանում։



Արտադրական կարողությունների գործարկման հարցում պետությանն ուղղակի խաբել և հավելագրումներ են կատարել Երևանի էլեկտրասարքատների գործարանի, ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության կառուցվող ձեռնարկությունների, ավտոտրանսպորտի մինիստրության կապիտալ շինարարության բաժնի և այլ կազմակերպությունների ղեկավարները։

Արտադրական ցուցանիշների գունազարդման մեջ նկատում ենք շահամոլության տարրեր՝ պարգևատրվելու միտումով։ Դրանք «անմեղ» խախտումներ չեն, քանի որ իջեցնում են արտադրության արդյունավետությունը, արատավորում տնտեսական ռեֆորմի սկզբունքները։

Անհրաժեշտ է բարձրացնել պաշտոնատար անձանց պատասխանատվությունը՝ նրանց ղեկավարած տեղամասի գործերի վիճակի համար, խստորեն պատժել նրանց, ովքեր ոտնձգություններ են անում հասարակական սեփականության նկատմամբ, զբաղվում աչքակապությամբ, կոպիտ կերպով խախտում են պետական կարգապահությունը և սոցիալիստական օրինականությունը։ Այժմ, ավելի քան երբեք, ՍՄԿԿ Կենտկոմն ամենայն սրությամբ դնում է այն հարցը, որ բարձրացվի պահանջկոտությունը պետական ու տնտեսական ապարատի բոլոր օղակների ղեկավարների նկատմամբ՝ նրանց աշխատանքի պրակտիկ արդյունքների համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ապրիլյան պլենումը հանրապետության կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, մինիստրությունների, գերատեսչությունների, տնտեսական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է համարում՝ շեշտակի բարձրացնել արտադրության արդյունավետությունը, կոնկրետ միջոցներ ձեռնարկել 1973 թ. պետական պլանը, սոցիալիստական պարտավորություններն ու հնգամյակի առաջադրանքներն անվերապահորեն կատարելու համար։

Անհրաժեշտ է, որպեսզի ժողովրդական վերահսկողության մարմիններն ավելի հետևողականորեն բացահայտեն արտադրության ռեզերվները և հասնեն այն բանին, որպեսզի դրանք լիովին օգտագործվեն, մշտապես ամրապնդվի պետական կարգապահությունը, բարձրացվի կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի, կուսակցության և կառավարության ցուցումների անշեղ կատարման համար։

Հնգամյակի երրորդ տարվա ժողովրդատնտեսական պլանը հաջողությամբ կատարելու համար հարկավոր է համառ աշխատանք։ Եվ որքան ավելի շատ, որքան ավելի բարդ են մեր առջև ծառացած խնդիրները, այնքան ավելի բարձր պետք է լինի կազմակերպվածությունը, ավելի ամուր՝ պետական ու աշխատանքային կարգապահությունը կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում։



# ՌԱԶՄԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Հ. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո անասելի չափերի են հասել իմպերիալիստական երկրների էկոնոմիկայի ռազմականացումը և դրան համապատասխանող ռազմական սպառումը։ ՍՄԿԿ XXIV համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասված է, որ «միայն 1970 թվականին ՆԱՏՕ-ի երկրները պատերազմի նախապատրաստման մեջ ներդրել են 103 միլիարդ դոլար։ Ռազմականացումը առավել վտանգավոր բնույթ է ստացել ԱՄՆ-ում։ Վերջին հինգ տարում այդ երկրում ռազմական նպատակների վրա ծախսվել է մոտավորապես 400 միլիարդ դոլար» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 20)։

Ժամանակակից իմպերիալիստական երկրներում միլիտարիզմի ուժեղացման ամենից ավելի ընդհանուր պատճառը արտադրության կապիտալիստական եղանակի ներքին և արտաքին հակասությունների սրումն է։ Մինչմոնոպոլիստական կապիտալիզմի ժամանակաշրջանում միլիտարիզմի դրսևորման առավել զարգացած և վառ արտահայտված ձևը եղել է ռազմական ուժի կիրառումը իբրև դասակարգային պայքարի գործիք՝ իր երկրի ներսի հեղափոխական ուժերի դեմ, ինչպես նաև այլ երկրների ժողովուրդներին կողոպտելու և ճնշելու համար կիրառվող գործիք։

Իմպերիալիզմը բնութագրվում է մոնոպոլիաների անսահման իշխանության ուժեղացմամբ, որը տեղի է ունենում կապիտալի համակենտրոնացման և կենտրոնացման աննախընթաց աճի հիման վրա, միջազգային մոնոպոլիաների առաջացմամբ և ազդեցության ոլորտների ու վաճառահանման շուկաների, գաղութների ու նոր տերիտորիաների գրավման համար նրանց մղած կատաղի պայքարով։ Իմպերիալիզմի օրոք ուժեղանում է նաև մոնոպոլիստական պետության պայքարը (ռազմական միջոցներով) ընդդեմ իր իսկ երկրի պրոգրեսիվ ուժերի։ Միլիտարիզմն այսօր էլ շարունակում է մնալ պայքարի զենք՝ ուղղված սոցիալիզմի հզորացող սիստեմի, ինչպես նաև նախկին կախյալ ու գաղութային երկրների ազգային-ազատագրական շարժման դեմ։

Էկոնոմիկայի ռազմականացման չթուլացող աճի հիմնական պատճառը



կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացումն է, որը թեական է դարձրել կապիտալիզմի՝ որպես հասարակական-տնտեսական ֆորմացիայի գոյությունը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո իմպերիալիստական զարգացած երկրների էկոնոմիկայում զգալիորեն աճել է ռազմական սեկտորը։ Ստորև բերվող աղյուսակի տվյալները ցույց են տալիս ռազմական արտադրանքի բաժինը ԱՄՆ-ի, Անգլիայի, ԳՖՀ-ի և Ֆրանսիայի արդյունաբերական արտադրության մեջ (1950—1966 թթ.)։

| Թվական | ԱՄՆ | | | Անգլիա | | | ԳՖՀ | | | Ֆրանսիա | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Արդյունաբերական արտադրանքը (մլրդ դոլար) | Ռազմական արտադրանքը (մլրդ դոլար) | Ռազմական արտադրանքի բաժինը ամբողջ արդյունաբերական արտադրանքի մեջ (տոկոս) | Արդյունաբերական արտադրանքը (մլրդ ֆ. ստ.) | Ռազմական արտադրանքը (մլրդ ֆ. ստ.) | Ռազմական արտադրանքի բաժինը ամբողջ արդյունաբերական արտադրանքի մեջ (տոկոս) | Արդյունաբերական արտադրանքը (մլրդ մարկ) | Ռազմական արտադրանքը (մլրդ մարկ) | Ռազմական արտադրանքի բաժինը ամբողջ արդյունաբերական արտադրանքի մեջ (տոկոս) | Արդյունաբերական արտադրանքը (մլրդ ֆր.) | Ռազմական արտադրանքը (մլրդ ֆր.) | Ռազմական արտադրանքի բաժինը ամբողջ արդյունաբերական արտադրանքի մեջ (տոկոս) |
| 1950 | 138,7 | 22,3 | 15,8 | 77,5 | 0,7 | 10,3 | 51,4 | 4,6 | 8,9 | — | — | — |
| 1958 | 205,8 | 46,4 | 22,1 | 12,8 | 1,5 | 11,4 | 177,1 | 7,0 | 3,9 | 9,4 | 1,5 | 15,8 |
| 1961 | 238,3 | 51,2 | 21,1 | 15,7 | 1,7 | 10,8 | 185,4 | 8,8 | 4,7 | 199,6 | 17,8 | 8,9 |
| 1962 | 256,6 | 52,8 | 20,6 | 16,3 | 1,8 | 10,8 | 210,0 | 13,3 | 6,3 | 220,3 | 17,6 | 8,0 |
| 1963 | 269,9 | 55,3 | 20,5 | 17,2 | 1,8 | 10,4 | 212,8 | 15,4 | 7,2 | 243,3 | 18,5 | 7,6 |
| 1964 | 285,6 | 54,5 | 19,1 | 18,4 | 2,1 | 11,2 | 234,5 | 16,7 | 7,1 | 269,9 | 19,8 | 7,3 |
| 1965 | 306,4 | 57,7 | 18,8 | 20,6 | 2,1 | 10,4 | 255,6 | 15,9 | 6,3 | 290,6 | 20,8 | 7,2 |
| 1966 | 326,9 | 70,2 | 21,5 | 21,4 | 2,1 | 9,6 | 268,6 | 17,2 | 6,4 | 312,2 | 22,0 | 7,4 |

Հաշվարկված է ըստ Մ. Ի. Բուրդակովի «Военное потребление и капиталистическое воспроизводство» գրքի (М., «Мысль», 1969, стр. 79, 80, 81)։

Էկոնոմիկայի ռազմականացումը առավել մեծ թափ է ընդունել ԱՄՆ-ում, որտեղ 1950—1966 թթ. ռազմական արտադրանքի բաժինը ամբողջ արդյունաբերական արտադրանքի մեջ կազմել է միջին հաշվով մոտ 20 տոկոս, այն ժամանակ, երբ Անգլիայում այն կազմել է մոտ 10,6, Ֆրանսիայում՝ մոտ 9, ԳՖՀ-ում՝ միջին հաշվով 6,4 տոկոս։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ը դարձավ միջազգային ռեակցիայի ու միլիտարիզմի կենտրոնը։ Օգտագործելով իր տնտեսության զարգացման համար երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ստեղծված բարենպաստ պայմանները, ԱՄՆ-ը սկսեց ավելի արագորեն մեծացնել իր ռազմական հզորությունն ու զարգացնել ռազմական էկոնոմիկան։ Ստորև բերված աղյուսակում ցույց են տրված ԱՄՆ-ի ֆեդերալ ռազմական ծախսերը 1945—1972 թթ. և դրանց բաժինը ազգային համախառն արտադրանքի մեջ (մլրդ դոլար)։

| Թվական | Ընդհանուր ֆեդերալ ծախսերը | Ռազմական ծախսերը | Ռազմական ծախսերի բաժինը ընդհանուր ծախսերում (տոկոս) | Ռազմական ծախսերի բաժինը համախառն ազգային արդյունքում (տոկոս) |
|---|---|---|---|---|
| 1945 | 95,2 | 81,6 | 85,7 | 38,3 |
| 1950 | 43,1 | 13,1 | 30,4 | 4,6 |
| 1955 | 68,5 | 40,2 | 58,7 | 10,2 |
| 1960 | 92,2 | 45,9 | 49,8 | 9,3 |
| 1965 | 118,4 | 49,6 | 41,9 | 7,6 |
| 1970 | 196,6 | 80,3 | 40,8 | 8,3 |
| 1971 | 211,4 | 77,7 | 36,7 | 7,7 |
| 1972* | 236,6 | 78,0 | 33,0 | 7,2 |

Աղբյուր. „Statistical Abstpact of the Unit d States", 1972, p. 248.

ԱՄՆ-ի ֆեդերալ ռազմական ծախսերը 1972 թվականին, 1950 թվականի համեմատ, աճել են գրեթե 6 անգամ։ Ռազմական ծախսերի բաժինը 1950—1971 թվականների ընդհանուր ֆեդերալ ծախսերի մեջ կազմել է միջին հաշվով 44,4 տոկոս։ Ռազմական ծախսերի բաժինը ԱՄՆ-ի 1955—1971 թթ. ազգային համախառն արդյունքի մեջ միջին հաշվով մոտ 9 տոկոս է։ Եթե հաշվի առնենք նաև «անուղղակի» ֆեդերալ ռազմական ծախսերը, ապա այդ բաժինը կկազմի մոտ 11 տոկոս։ Համեմատության համար բերենք համանման տվյալներ Արևմտյան Եվրոպայի զարգացած մի քանի կապիտալիստական երկրներից։ Այսպես, ռազմական ծախսերի բաժինը 1966—1969 թվականների վերջնական հանրային արդյունքի մեջ միջին հաշվով կազմել է՝ Անգլիայում 5,4, Ֆրանսիայում՝ 4,8, ԳՖՀ-ում՝ 3,9 տոկոս («Экономическое положение капиталистических и развивающихся стран. Приложение к журналу «МЭ и МО»», № 8, 1971, стр. 76)։

Պատասխանելու համար այն հարցին, թե ինչու իմպերիալիստական երկրները և, առաջին հերթին, ԱՄՆ-ը, առանձնահատուկ ուշադրություն են նվիրում էկոնոմիկայի ռազմականացմանը, հարկավոր է կանգ առնել զարգացած ռազմական էկոնոմիկայի պայմաններում կապիտալիստական վերարտադրության առանձնահատկությունների վրա։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի դարաշրջանում արտադրության վրա կապիտալիստական արտադրահարաբերությունների ներգործության գլխավոր դրսևորումներից մեկը էկոնոմիկայի ռազմականացումն է։ Գրեթե լրիվին ռազմական է արդյունաբերության ատոմային ճյուղը (95 տոկոս). նավաշինության և ռադիոէլեկտրոնիկայի մարզում ռազմական արտադրանքի արտադրությունը համապատասխանաբար՝ 60 և 50 տոկոս է, սարքաշինությանը՝ 52, կապի միջոցների արտադրությանը՝ 69 տոկոս։ Գործնականորեն դժվար է գտնել հանրային արտադրության ստորաբաժանման մեջ մտնող արդյունաբերության որևէ նշանակալի ճյուղ, որը այս կամ այն չափով կապված չլինի ռազմական արտադրանքի արտադրության հետ։ Էկոնոմիկայի ռազմական և քաղաքացիական սեկտորների այսպիսի միահյուսումը անհրաժեշտ է դարձնում դրանք քննության առնել հանրային վերարտադրության միասնական համակարգում։ Այլապես չեն բացահայտվի փոխադարձ բնորոշ կապերը քաղաքացիական և ռազմական արտադրության միջև։

Մենք աննպատակահարմար ենք գտնում ռազմական արտադրությունը

* Գնահատում։



համարել հանրային արտադրության առանձին ստորաբաժանում։ Դա, մեր կարծիքով, նախ՝ կխախտեր հանրային արտադրությունն արտադրամիջոցների արտադրության և սպառման առարկաների արտադրության բաժանման մարքսիստական դրույթը։ Իսկ հանրային վերարտադրության սխեմում վերջնական ռազմական սպառման առարկաների արտադրությունը առանձին ստորաբաժանումներում դասելիս, անջատվում են ռազմական արտադրության երկու մասերը՝ ռազմական սպառման միջոցների արտադրության համար արտադրամիջոցների և վերջնական ռազմական սպառման առարկաների արտադրությունը։ Երկրորդ, «ռազմական արտադրանքը» դուրս չի մնում կապիտալիստական ռեալ վերարտադրությունից։ Այն մասնակցում է բուրժուական արտադրահարաբերություններին, լրացնում է արտատնտեսական, զինված բռնությամբ դասակարգային հարկադրանքի անմիջական տնտեսական հիմքերը (որոնք արտացոլված են վերարտադրության վերացական սխեմաներում) տիրապետության և ենթարկման արտադրահարաբերությունների անընդհատությունն ապահովող նյութական տարրով» (Политическая экономия современного монополистического капитализма, изд-во «Мысль», М., т. 2, стр. 30)։ Երրորդ, չնայած սպեցիֆիկ գծերին, ռազմական արտադրությունը և սպառումը հանրային վերարտադրության բաղկացուցիչ մասերն են, և դրանց անջատումը I և II ստորաբաժանումներից, մեր կարծիքով, բացասաբար կանդրադառնար տնտեսական ամբողջ սիստեմի վերլուծության վրա։

I և II ստորաբաժանումների շրջանակներում հանրային վերարտադրության վերացական սխեմաները կոնկրետացնելու համար անհրաժեշտ է առանձնացնել ռազմական արտադրության ենթասիստեմները՝ պատրաստի ռազմական արտադրանք թողարկող արտադրամիջոցների արտադրություն (I ստորաբաժանման ռազմական ենթասիստեմ) և վերջնական ռազմական արտադրանքի արտադրություն (II ստորաբաժանման ռազմական ենթասիստեմ)։ Այսպիսի մոտեցումը հնարավորություն է տալիս հանրային վերարտադրությունը դիտելու իբրև միասնական տնտեսական սիստեմ և բացահայտելու տնտեսության ռազմական ու քաղաքացիական սեկտորների միջև եղած փոխադարձ կապերը։

Ժամանակակից կապիտալիստական ընդլայնված վերարտադրության վերլուծությամբ, բավական խոշոր ռազմական սեկտորի առկայության պայմաններում, կարելի է անել հետևյալ եզրակացությունները. նախ՝ ժամանակակից կապիտալիստական ընդլայնված վերարտադրությունը, էկոնոմիկայի ռազմական խոշոր սեկտորի հետ մեկտեղ, բնութագրվում է հանրային արդյունքի առանձին մասերի առավել բարդ փոխադարձ կապերով. երկրորդ, հնարավորություն է ստեղծվում տարփոխելու կուտակման և սպառման տեմպերը էկոնոմիկայի ռազմական և քաղաքացիական սեկտորներում. երրորդ, ռազմական արտադրության ընդլայնումը իրականացվում է խաղաղ ժամանակաշրջանի սպառման և կուտակման հարաբերական, իսկ որոշ սահմաններից դուրս նաև բացարձակ մասշտաբները կրճատելու հաշվին։

Ռազմական արտադրանքի արտադրությունը, ըստ էության, նշանակում է վերարտադրության պրոցեսից հանել արտադրողական կապիտալի զգալի մասը, իսկ դա տնտեսական առումով հավասարազոր է այն բանին, որ ազգը կամովին ջուրն է նետում հասարակական աշխատանքի այդ մասը (տե՛ս

(Архив Маркса и Энгельса, Партиздат, М., 1935, т. 15, стр. 124).

*Ժամանակակից բուրժուական տեսաբաններն ու քաղաքագետները ձգտում են «հիմնավորել» էկոնոմիկայի ռազմականացման միջոցով տնտեսական ճգնաժամերը կանխելու հնարավորությունը։ «Ելնելով մոնոպոլիաների շահերից, բուրժուական տնտեսագետներն ու ռեֆորմիստները պնդում են (երբեմն բացահայտ, իսկ ավելի հաճախ՝ քողարկված), որ կապիտալիստական էկոնոմիկայի ռազմականացումը լուծում է զբաղվածության պրոբլեմը, ավելացնում ժողովրդական զանգվածների սպառումը, ստեղծում է վաճառահանման լրացուցիչ շուկա և դրանով, իբր, ապահովում կապիտալիզմի «անընդմեջ բարգավաճումը»* (Покровский А. И., Французская буржуазная политическая экономия, Изд-во ИМО, 1961, стр. 124)։

*Ժամանակակից կապիտալիստական ցիկլի վրա ռազմականացման ազդեցության հարցը քննարկելիս, անհրաժեշտ է հաշվի առնել այդ ազդեցության կարճաժամկետ և երկարաժամկետ ասպեկտները։ Ռազմականացման ուռճացման հետևանքով աճող ռազմական արտադրությունն ու սպառումը որոշ շրջանում խթանում են կապիտալիստական արտադրությունը։ Ռազմական վիթխարի ծախսերի շնորհիվ ժամանակակից սպառազինության և ռազմական տեխնիկայի նկատմամբ գոյանում է պետական-մոնոպոլիստական մշտական պահանջարկ։ Սպառազինության արտադրությունը հիմնականում խարսխվում է հանրային արտադրության ստորաբաժանման վրա։ Որքան շատ է ընդլայնվում սպառազինության և ռազմական տեխնիկայի արտադրությունը, այնքան ուռճանում է I ստորաբաժանումը։ Դա լրացուցիչ պահանջարկ է ստեղծում I ստորաբաժանման արտադրանքի շատ տեսակների՝ աշխատանքի գործիքների, հումքի, էլեկտրաէներգիայի նկատմամբ։ Ռազմական սեկտորում փոփոխական կապիտալի վրա կատարվող ծախսերի ավելացումը նպաստում է II ստորաբաժանման արտադրական կարողությունների ավելի լրիվ ծանրաբեռնմանը. դրանով իսկ ավելանում է զբաղվածությունը։ Եթե վերոհիշյալ փոփոխությունները տեղի են ունենում գերարտադրության հասունացած ճգնաժամի պայմաններում, դրանք ունակ են ձգձգելու վերջինի սկիզբը և ժամանակավորապես թուլացնելու դրա հետևանքները։ Ռազմական արտադրության և սպառման այդպիսի կարճատև ներգործությունը բուրժուական տնտեսագետները համարում են «ճգնաժամերի դեմ պայքարի կարևոր գործիք»։ Ահա թե այդ առթիվ ինչ է գրում ամերիկյան տնտեսագետ Ա. Հանսենը. «Երբեմն մենք կարծիքներ ենք լսում այն մասին, թե մեր երկիրը գտնվում է սնանկացման եզրին։ Դա ճշմարիտ չէ։ Ռազմական ծախսերը մեզ ավելի չաղքատացրին։ Դրանք մեզ ապահովեցին աշխատանքով»* (A. Hansen. The American Economy. New York, *1957*, p. *31*)*։ Նման պնդումները հիմնազուրկ են։ Անշուշտ, ռազմական արտադրությունը և սպառումը զգալի ազդեցություն են ունենում ժամանակակից կապիտալիստական ցիկլի վրա։ Դրանք ձևախախտում են այն, ներգործում վերջինիս խորության և տևողականության վրա։ Բայց նման կարճատև խթանող ազդեցությունը չի կարող վերացնել այն հակասությունները, որոնք հատուկ են արտադրության կապիտալիստական եղանակին։ Արտադրության հասարակական բնույթի և մասնավոր կապիտալիստական յուրացման միջև եղած հակասությունները տնտեսական ճգնաժամերի հիմնական պատճառներն են։ Այդ հակասություններով է պայմանավորված նաև մասսաների գնողունակության կրճատումը՝ ճգնաժամի վերջնական պատճառը։*



*Այդ երկու պատճառներն անխզելիորեն կապված են կապիտալիզմի արտադրահարաբերությունների հետ։ «Ռազմական արտադրության ընդլայնումը ճգնաժամային փուլում չի կարող լիովին զսպել տնտեսական ճգնաժամի խորացումը։ Այն միայն կարճ ժամանակով ընդհատում է արտադրության անկումը հանրային արտադրության առաջին ստորաբաժանման ճյուղերում։ Ըստ որում, անհամամասնությունների ուժեղացումը տնտեսական կառուցվածքում և անձնական սպառման նեղացումը ո՛չ միայն թուլացնում, այլ, ընդհակառակը, ավելի են սրում տնտեսական ճգնաժամը»* (Покровский А. И., Французская буржуазная политическая экономия. Изд-во ИМО, М., 1961, стр. 128)։

*Էկոնոմիկայի ռազմականացումը կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի փուլում արգելակում է հանրային արտադրության վերելքը։ Դրա հետևանքով էլ կապիտալիստական էկոնոմիկայում կրճատվում են արտադրության տեմպերն ու մասշտաբները, ներքին շարժիչ ուժերը։ Այսպիսով, կապիտալիզմի նեխման վառ արտահայտություններից մեկը տնտեսության ռազմականացումն է, որը և կապիտալիստական էկոնոմիկայի կարգավորման յուրահատուկ ձև է։*

*Կապիտալիստական առանձին երկրների զարգացման կոնկրետ հանգամանքները պայմանավորեցին էկոնոմիկայի պետական-մոնոպոլիստական կարգավորման տարբեր ձևեր։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի օրոք բարձրանում է պետության դերը երկրի տնտեսական կյանքում։ Էկոնոմիկայի պետական սեկտորի մեծացման շնորհիվ ժամանակակից կապիտալիստական պետությունն անմիջական մասնակցություն է ունենում ինչպես հանրային վերարտադրության պրոցեսին, այնպես էլ ազգային եկամտի վերաբաշխմանը, դրա համար օգտագործելով էկոնոմիկայի կարգավորման ու ծրագրավորման բազում լծակներ ու ձևեր։ ԱՄՆ-ում, օրինակ, օգտագործվում են էկոնոմիկայի վրա ներգործելու տարբեր անուղղակի լծակներ ու ձևեր։ Եվ, պատահական չէ, որ կարգավորման ամենատարբեր ձևերից առաջատարը տնտեսության ռազմականացումն է։ Չէ՞ որ ռազմական արդյունաբերությունը տնտեսության այն միակ ոլորտն է, որտեղ կապիտալիստական պետությունը հանդես է բերում արտադրությունը կարգավորելու ամենից ավելի մեծ ունակություն։ Հանրային վերարտադրության ամբողջ սիստեմի վրա տնտեսության ռազմական սեկտորի ունեցած հարաճուն ազդեցության պայմաններում էկոնոմիկայի ռազմականացումը ԱՄՆ-ում դառնում է տնտեսական սիստեմի վրա ներգործելու ավելի կարևոր ձև, քան իմպերիալիստական մյուս երկրներում։*

*Սպառազինությունների մրցավազքի բացասական ազդեցությունը ԱՄՆ-ի էկոնոմիկայի վրա սկսեց ավելի պարզորոշ դրսևորվել 60-ական թվականների վերջերին։ Վիթխարի ռազմական ծախսերը լուրջ ցնցումներ առաջացրին ամերիկյան էկոնոմիկայում. ընկավ արդյունաբերական արտադրությունը, սկսվեց ինֆլյացիա, սպառողական ապրանքների գների աճ, վարկա-ֆինանսական ճգնաժամ և այլն։ Ռազմական ծախսերի բեռն ամենից ավելի ծանրացավ աշխատավորների ուսերին։ Բավական է ասել, որ ԱՄՆ-ում ապրուստի արժողությունը 1968—1972 թթ. ավելացավ 27 տոկոսով, ֆեդերալ հարկերն աճեցին 50 տոկոսով* («МЭ-МО», № 3, 1973, стр. 82)*։ 1971 թվականին բացարձակ գործազուրկների թիվը հասավ 5,8 միլիոնի, որ ինքնագործ բնակչության մոտավորապես 6,2 տոկոսն է։*

*Տնտեսության ռազմականացման խթանիչ ազդեցության շրջանակները*

սահմանափակ են։ Ռազմական արտադրության ուռճացմամբ խթանումը աստիճանաբար դառնում է տնտեսական սիստեմի վրա երկարատև ներգործության ձև, այսինքն՝ ազգային եկամտի անարտադրողական ծախսերի հետևանքով էկոնոմիկայի վրա կործանարար ներգործության ձև։

Ինչպես ռազմականացմամբ կատարվող կարգավորումը, այնպես էլ տնտեսական ծրագրավորումն ունեն իրենց օբյեկտիվ սահմանները, որոնք պայմանավորված են ժամանակակից կապիտալիզմի հակասություններով։ Ինչպես ընդգծել է Վ. Ի. Լենինը. «...կատարյալ պլանայնություն տրեստները, իհարկե, չեն տվել, մինչև այսօր էլ չեն տալիս և չեն կարող տալ» (Երկեր, հ. 25, էջ 574)։ Չնայած արտադրության հանրայնացման վիթխարի չափերին, իմպերիալիստական երկրներում մոնոպոլիաներից բացի կան նաև բազմաթիվ մանր ու միջին ձեռնարկություններ։ Մոնոպոլիան չի վերացնում մրցակցությունը, այլ գոյություն ունի դրանից վեր ու դրա կողքին, ուստի և ծնում է առավել սուր ու խիստ հակասություններ, բախումներ, կոնֆլիկտներ։

Արժեքի օրենքի և դրանից բխող գների մեխանիզմի գոյության պայմաններում, երբ առաջանում են մրցակցությունն ու արտադրության անարխիան, չի կարող խոսք լինել կապիտալիստական տնտեսության «պլանաչափության» մասին։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի օրոք շարունակում է գոյություն ունենալ կապիտալիզմի հիմնական հակասությունը՝ արտադրության հասարակական բնույթի և նրա արդյունքների յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև եղած հակասությունը։

Կապիտալիստական էկոնոմիկայի հիմքը մասնավոր մոնոպոլիաներն են, ուստի և պետական սեփականության աճը, պետության դերի բարձրացումը տնտեսական կյանքում ունեն իրենց սահմանները և այդ սահմաններն անցնելը չափազանց վտանգավոր է կապիտալիստական սիստեմի գոյության համար։

Տնտեսական ծրագրավորումը դրսևորում է ժամանակակից կապիտալիզմի ամենասուր հակասություններից մեկը։ «Արտադրության հանրայնացումը հասել է այնպիսի աստիճանի, որ մի կողմից մասնավոր կապիտալիստական սեփականության և շուկայի տարերային ուժերի տիրապետության վրա հիմնված հասարակարգի շրջանակներում օրինաչափորեն ծագել է էկոնոմիկայի կենտրոնացված պլանավորման մի յուրատեսակ մեխանիզմ, մյուս կողմից՝ այդ մեխանիզմը, որը համապատասխանում է միայն սոցիալիստական հասարակարգին, մոնոպոլիստական կապիտալն օգտագործում է ընդդեմ աշխատավորական զանգվածների, հօգուտ իր շահերի։ Այդ է պատճառը, որ պետական-մոնոպոլիստական ծրագրավորումը դասակարգային սուր պայքարի առարկա է» (Экономическое программирование в странах Западной Европы, изд-во «Наука», М., 1969, стр. 14)։

Ժողովրդական տնտեսության գիտական պլանավորումը հնարավոր է միայն սոցիալիստական հասարակարգում, ուր վերացվել են կապիտալիստական սիստեմի հետ անխզելիորեն կապված և մասնավոր-սեփականատիրական տնտեսության հակասությունների անմիջական հետևանքը հանդիսացող, պլանավորումն արգելակող օբյեկտիվ խոչընդոտները։ Սոցիալիզմը, ի տարբերություն նախորդ հասարակական-տնտեսական ֆորմացիաների, իր առջև դնում է գիտակցորեն ընտրված նպատակներ և համապետական մակարդակով, գիտականորեն կազմակերպում դրանց իրականացումը։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԴԻ ԷՏԱՊՈՒՄ

Լ. Ջ. ԱՆԱՆՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

Կոմունիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում նոր, առաջընթաց քայլ կլինի իններորդ հնգամյա պլանի հաջող կատարումը։ Ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքի ապահովումը, որը հնգամյակի գլխավոր խնդիրն է, սերտ կապի մեջ է հասարակական արտադրության արդյունավետության և, ամենից առաջ, աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ։ Վերջինիս լուծման կարևոր ուղիներից մեկը համաժողովրդական սոցիալիստական մրցության կազմակերպումն է։

Նկատի ունենալով մրցության կարևորությունը, կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր փուլերում պատշաճ ուշադրություն են նվիրել աշխատավորների նախաձեռնությունների ծավալմանը։ Դրա վառ ապացույցն են նաև 1971 թ. սեպտեմբերին և 1973 թ. հունվարին ընդունված որոշումները, որոնցում մատնանշվում են սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման ուղիները, մասնավորապես իններորդ հնգամյակի վճռական տարում մրցության ծավալման անհրաժեշտությունը։

* * *

Սոցիալիստական մրցությունը արտադրության աճի և կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոն է։ Ինչպես նշված է «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «Մրցությունը միշտ էլ ծառայել է որպես արտադրաուժերի վերելքի, արտադրահարաբերությունների կատարելագործման, աշխատավորության դաստիարակության, արտադրության կառավարման գործում նրանց ներգրավելու արդյունավետ մեթոդ», սոցիալիստական կոլեկտիվիզմը ձևավորելու հուժկու միջոց։

Տարիների ընթացքում փոխվել են մրցության կազմակերպման ձևերն ու մեթոդները, սակայն դրա էությունը մնացել է նույնը։ Դա առաջավորներին հասնելու, ետ մնացողներին օգնելու և ընդհանուր վերելք ձեռք բերելու ձգտումն է։

Ժողովրդական տնտեսության վերակառուցման շրջանում առաջին կոմունիստական շաբաթօրյակներին փոխարինեց հարվածայինների և հարվածային

բրիգադների շարժումը, երկրորդ հնգամյակի տարիներին ծնունդ առավ ստախանովյան շարժումը, իսկ հետպատերազմյան ժամանակաշրջանում մրցություն ծավալվեց աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակության համար։ Վերջինս մինչև այժմ հայտնի մրցության ձևերից ամենազանգվածայինն է, որն իրոք համաժողովրդական բնույթ է կրում։ «Մեր երկրում,— նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում, հաշվետու զեկուցման մեջ,— սոցիալիզմի հաղթանակը ծնունդ տվեց մասսայական աշխատանքային խանդավառության՝ մարդկության պատմության մեջ նախկինում չտեսնված այնպիսի դրսևորումների, ինչպիսիք են ստախանովյան շարժումը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը և այլն։ Անցած հնգամյակն այս առումով տվեց նոր շատ բան։ Աշխատանքային մրցությունն իսկապես համաժողովրդական թափ ստացավ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110—111)։

Ներկայումս ՍՍՀՄ-ում մրցության տարբեր ձևերում ընդգրկված են մոտ 80 մլն մարդ։ Մրցողների մոտ 60 տոկոսը մասնակցում է կոմունիստական աշխատանքի շարժմանը։ Մեր հանրապետությունում ավելի քան 700 հազար մարդ ընդգրկված են մրցության տարբեր ձևերում, այդ թվում 250 հազարից ավելին պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչմանն արժանանալու համար։

Նախորդ ձևերի համեմատությամբ կոմունիստական աշխատանքի համար շարժումն ընդգրկում է հարցերի ավելի մեծ շրջանակ (տնտեսական ու սոցիալական բնույթի)։

Կոմունիստական աշխատանքի բնորոշ գծերից մեկը բարձր կարգապահությունն է։ Հայտնի է, թե ինչպիսի նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը այդ հարցին. «Աշխատանքի նոր կարգապահություն հաստատել, մարդկանց միջև հասարակական կապի նոր ձևեր հաստատել, մարդկանց աշխատանքի ներգրավելու նոր ձևեր ու եղանակներ հաստատել— դա շատ տարիների և տասնամյակների գործ է։

Դա շատ շնորհակալ և շատ ազնիվ գործ է» (Երկեր, Հ. 30, էջ 662)։

Կոմունիստական աշխատանքին հատուկ է բարձր արտադրողականությունը։ Ուստի, շարժումն աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի համար, որի սկիզբը դրվեց դեռ 1958 թ. Մոսկվա-Սորտիրովոչնայա դեպոյում, ամենից առաջ նշանակում է պայքար բարձր արտադրողական աշխատանքի համար։ Այդ շարժման մասնակիցների նշանաբանն է՝ «Սովորել, ապրել և աշխատել կոմունիստաբար»։

Մրցության կազմակերպման միջոցով լուծվում են տնտեսական և սոցիալ-հոգեբանական բնույթի շատ խնդիրներ։ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումը մրցության սոցիալ-հոգեբանական ֆունկցիայի հիմնական բովանդակությունն է։ Առանձնապես կարևոր են մըշտապես առաջ շարժվելու ձգտումը, նորի անդադար որոնումը և, ինչպես հաճախ է նշվում գրականության մեջ, «կոմունիստական անհանգստությունը»։

Արդի փուլում մրցության կազմակերպմանը բնորոշ են մի շարք առանձնահատկություններ։ Դրանք են՝ մրցության զանգվածայնությունը և ձևերի հսկայական բազմազանությունը, վառ արտահայտված նպատակաուղղվածությունը, մրցողների ստանձնած պարտավորությունների համալիր բնույթը և այլն։



Մոսկվացիների և լենինգրադցիների նախաձեռնությամբ միութենական հանրապետություններում մրցություն է սկսվել իններորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։ Լայն տարածում են ստացել անհատական և կոլեկտիվ ստեղծագործական պլանների մշակումը, ըստ մասնագիտությունների մրցությունը, բազմահաստոցայինների շարժումը, վարպետության մրցույթները, արտադրության ռեզերվների հայտնաբերման հասարակական ստուգատեսները և այլն։

Իններորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու կոչին առաջինը մեր հանրապետությունում արձագանքեցին Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի և Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի աշխատողները։ Այստեղ, կոմունիստներ Ռ. Մովսիսյանի և Ե. Առաքելյանի նախաձեռնությամբ, մրցություն է սկսվել հնգամյակը 3,5 տարում կատարելու համար։

Հնգամյակի վճռական տարում հանրապետության կոմերիտականները հանդես են եկել «Կոմերիտական տարին— 11 ամիս» նախաձեռնությամբ։ 1973 թ. սկզբին Հայկական ՍՍՀ մի խումբ առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվներ «Մեր հարվածային աշխատանքը՝ հնգամյակի երրորդ տարվան» կոչով դիմեցին մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվներին և ստանձնեցին բարձր պարտավորություններ։ Մրցությունը մեծ թափ է ստացել նաև մյուս ձեռնարկություններում ու կազմակերպություններում։

Երևան քաղաքի աշխատավորները պայքարում են արդյունաբերական արտադրանքի իրացման ծավալի և կարևորագույն արտադրատեսակների մեծ արտադրանքի իրացման ծավալի 1973 թ. պլանը դեկտեմբերի 25-ին կատարելու, պլանից մասի թողարկման 1973 թ. պլանը դեկտեմբերի 25-ին կատարելու, պլանից դուրս 25 մլն ռուբլու արտադրանք իրացնելու, իսկ հնգամյա պլանը Հայաստանում սովետական կարգերի հաստատման 55-ամյակի օրը կատարելու համար։

* * *

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում առանձնահատուկ նշանակություն ունի ռացիոնալիզատորների և գյուտարարների շարժումը, որը, ըստ էության, սոցմրցության նոր, կատարելագործված ձև է։ Ռացիոնալիզատորներն ու գյուտարարները սոցիալիստական մրցության առաջամարտիկներն են, նորի ու առաջադիմականի համար պայքարողները։ Նրանք նշանակալից ավանդ են ներդնում տեխնիկայի զարգացման և տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման բնագավառում։ ՍՍՀՄ մասշտաբով տարեկան ստացվում է ավելի քան 4 մլն առաջարկություն, որոնց մոտ 80 տոկոսն արմատավորվում է արտադրության մեջ։ Ներկայումս երկրի գիտատեխնիկական, ինչպես նաև ռացիոնալիզատորների ու գյուտարարների ընկերություններն ընդգրկում են 11 մլն մարդ։ Ութերորդ հնգամյակում նրանց ուժերով մշակվել են ավելի քան 780 հազար հանձնարարականներ, որոնք վերաբերել են արտադրության և կառավարման այժմեական պրոբլեմներին։ Ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են 15,7 մլն գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկություն, որոնցից ստացված պայմանական օգուտը կազմել է 12,6 մլրդ ռուբլի։

Մեծ է նաև մեր հանրապետության նորարարների վաստակը։ Միայն «Պոլիվինիլացետատ» գործարանում անցած հնգամյակում արտադրության մեջ ներդրվել են 2.780 ռացիոնալիզատորական առաջարկություն և 9 գյուտ, որոն-

ցից ստացված օգուտը կազմել է 9,4 մլն ռուբլի։ Ընթացիկ հնգամյակում ևս գործարանի նորարարները պարտավորվել են ռացիոնալիզատորական առաջարկությունների և գյուտերի ներդրումից ստանալ այդքան օգուտ։ 1972 թ. «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման ձեռնարկություններում ներդրվել է 212 ռացիոնալիզատորական առաջարկություն, որից ստացված տնտեսական օգուտը կազմել է մոտ 440 հազար ռուբլի։ Էլեկտրամեքենաշինական գործարանում մեքենաների կոնստրուկցիաների կատարելագործման նպատակով ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման շնորհիվ կրճատվել է գեներատորների և ուժային տրանսֆորմատորների համար սև մետաղների ծախսման նորման։ 1972 թ. խնայվել է 460 տոննա սև մետաղ։ Երևան քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվել են ընթացիկ տարում նորարարական առաջարկությունների արմատավորման շնորհիվ ստանալ ավելի քան 15 մլն ռուբլու պայմանական տնտեսական օգուտ։

Գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության IV համագումարում նշվեց, որ արտադրության նորարարների ջանքերով վերջին երկու տարում (1971—1972 թթ.) տնտեսվել է մոտ 6,5 մլրդ ռուբլի։

Փաստորեն ռացիոնալիզատորները և գյուտարարները գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար ծավալված մրցության նախաձեռնողներն են։ Նրանք մեծապես նպաստում են հասարակական արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Վերջին շրջանում լայն թափ է ստացել աշխատատեղերում աշխատանքի արտադրողականության բարձրացման համալիր պլանների հիման վրա արտադրական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու շարժումը։ Այստեղ նախատեսվում են ինչպես տեխնիկական, այնպես էլ կազմակերպական բնույթի միջոցառումներ։ Այդ պլաններն ընդգրկում են սարքավորումների արդիականացման, բարձր արտադրողական գործիքների կիրառման, տեխնոլոգիայի կատարելագործման, աշխատաժամանակի տնտեսման, աշխատանքի գիտական կազմակերպման արմատավորման, հարակից մասնագիտությունների տիրապետման և այլ հարցեր։ Դրանք արտադրության ռեզերվների հայտնաբերմանը աշխատավորների մասնակցության, նրանց մրցության արդյունավետ միջոց են։ Նման պայմաններում մրցությունը կոչված է օժանդակելու աշխատանքի գիտական կազմակերպման (ԱԳԿ) առաջադիմական ձևերի զարգացմանը։

Բանն այն է, որ արտադրության կառավարմանը, ինչպես նաև մրցության ծավալմանը գիտական մոտեցումը աններևակայելի է առանց աշխատանքի ռացիոնալ կազմակերպման։ Միայն այդ պարագայում է հնարավոր օգտագործել արտադրության ռեզերվները, վերացնել պարապուրդները, գրոհայնությունը, աշխատանքի վատ պայմանները, զարգացնել աշխատողների նախաձեռնությունը։ Մյուս կողմից, շատ ձեռնարկություններում աշխատանքի և արտադրության կազմակերպումը ետ է մնում դրանց տեխնիկական մակարդակից։ Այլ խոսքով, աշխատանքի տեխնիկական հագեցվածությունն առաջ է անցնում արտադրողականությունից։ ԱԳԿ-ի համար մրցության ծավալումը կօժանդակի վերացնելու այդ անհամամասնությունը։ Սոցիալիստական մրցությունը և աշխատանքի գիտական կազմակերպումը չի կարելի անջատել մեկը մյուսից։ Պատահական չէ, որ «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա



բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվում է. «Մրցությունը պետք է նպաստի աշխատանքի գիտական կազմակերպման բարելավմանը, որպես աշխատանքային բարձր ցուցանիշների համար պայքարի իսկական ստեղծագործական ոգի ստեղծելու պարտադիր պայման»։ Այդ որոշմամբ խնդիր է դրվում աշխատողների ջանքերը, արտադրության համալիր մեքենայացման ու ավտոմատացման, տեխնիկայի կատարելագործման հետ միասին, ուղղել ԱԳԿ ներդրմանը։

Պրակտիկան ցույց է տալիս, որ միայն աշխատատեղերի կազմակերպման կատարելագործման շնորհիվ բանվորների աշխատանքի արտադրողականությունը կարելի է բարձրացնել 10—12 տոկոսով (տե՛ս «Социалистический труд» ամսագիրը, 1972, № 2, էջ 57)։ Թե ինչպիսին է ԱԳԿ ներդրման արդյունավետությունը, բերենք հետևյալ փաստը։ 1971 թ. երկրի արդյունաբերության մեջ ներդրվել է ԱԳԿ 607 հազար միջոցառում, որի շնորհիվ ձեռնարկությունները հնարավորություն ունեցան աշխատանքային ռեսուրսների պահանջը կրճատելու մոտ 316 հազար մարդով, նախորդ տարվա 282 հազարի դիմաց, ինչպես նաև տնտեսելու 336 մլն ռուբլու աշխատավարձի ֆոնդ, 1970 թ. 220 մլն ռուբլու դիմաց (տե՛ս նույն տեղը, 1973, № 2, էջ 11)։

ԱԳԿ հիմնական սկզբունքը աշխատաժամանակի առավել ռացիոնալ օգտագործումն է։ Աշխատաժամանակի կորուստը նշանակում է հասարակական աշխատանքի վատնում, իսկ հասարակական աշխատանքը նյութական և հոգևոր բարիքների ստեղծման միակ աղբյուրն է։ Տեխնիկայի զարգացմանը և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը զուգընթաց աճում է աշխատաժամանակի յուրաքանչյուր միավորի «գինը»։ Այսպես, ներկայումս ՍՍՀՄ ժողովրդական տնտեսությունը մեկ րոպեում թողարկում է ավելի քան 1,3 մլն ռուբլու արտադրանք, իսկ մեկ օրում՝ 2 մլրդ ռուբլու կամ 10 անգամ ավելի, քան 1930-ական թվականների վերջերին (նույնպես 1 օրում)։ Արտադրության նման մասշտաբների պայմաններում դժվար չէ պատկերացնել, թե ինչպիսի վնաս են հասցնում աշխատաժամանակի կորուստները երկրի էկոնոմիկային։ Արդյունաբերական շատ ձեռնարկություններում դրանք կազմում են հերթափոխության ժամանակի 15—20 տոկոսը։ Մինչդեռ այդ կորուստների վերացումը տնտեսական առաջընթացի ապահովման հսկայական ռեզերվ է։

Հետևաբար, չափազանց կարևոր է աշխատաժամանակի կորուստների վերացման, ընդհանրապես ԱԳԿ հետևողական ներդրման համար ծավալված մրցությունը։

Այս ասպարեզում որոշակի հաջողություններ են ձեռք բերել մեր հանրապետության ձեռնարկությունների կոլեկտիվները։ Օրինակ, 1971—1972 թթ. Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում իրականացվել է ԱԳԿ 215 միջոցառում, որից ստացված տնտեսական օգուտը կազմել է 329,6 հազար ռուբլի։ Նույն ժամանակահատվածում «Հայէլեկտրալույս» միավորման ձեռնարկություններում իրականացվել է 153 միջոցառում՝ 288,4 հազար ռուբլի տնտեսական օգուտով։ Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատում ԱԳԿ բաժնի մշակումներով 1971—1972 թթ. կատարելագործվել և էժանացվել է կառավարչական ապարատը, դրանց շնորհիվ ստացվել է 0,3 մլն ռուբլուց ավելի տարեկան պայմանական տնտեսում։

Մրցության կազմակերպման արդի փուլին բնորոշ է պայքարը արտադրանքի բարձր որակի համար։ Ներկայումս ծավալվել է արտադրանքի անթերի

պատրաստման և առաջին ներկայացնելով հանձնման համակարգի ներդրման մրցություն, որի հիմքում ընկած է յուրաքանչյուր կատարողի անձնական պատասխանատվությունը՝ սկսած նախագծողից մինչև հանգույցը պատրաստող բանվորը: Արտադրանքի հուսալիության ապահովման, որակի պետական նշանի արժանանալու համար ծավալվող մրցությունն առանձնահատուկ թափ է առնում ընթացիկ հնգամյակի երրորդ, վճռական տարում:

Արտադրության աճող մասշտաբները, գիտատեխնիկական առաջընթացի բնագավառում կատարվող տեղաշարժերը հարուցում են թողարկվող արտադրանքի որակի բարձրացման նոր խնդիրներ: Հնգամյակի գլխավոր խնդրի իրագործումը ևս անքակտելի կապի մեջ է բարձրորակ արտադրանքի թողարկման, հասարակական աշխատանքի առավելագույն տնտեսման, արտադրանքի նյութատարության իջեցման հետ: Տարեցտարի մեր հանրապետությունում ավելանում է որակի նշանի արժանացող արտադրանքի տեսականին, մեծանում ծավալը: Եթե 1971 թ. Հայկական ՍՍՀ-ում թողարկվող արդյունաբերական արտադրանքի 15 տեսակներ են ատեստավորվել որակի նշանով, ապա 1972 թ.՝ երեք անգամ ավելին: Որակի նշանով արտադրանք են թողարկում Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, կոնյակի գործարանները, մետաքսի, ծխախոտի կոմբինատները, Արզնու «Բյուրեղ» արտադրական միավորումը և այլ ձեռնարկություններ:

Սակայն շատ արտադրատեսակներ իրենց որակով դեռևս ետ են մնում դրանց ներկայացվող պահանջներից: Ցածրորակ արտադրանքի համար ձեռնարկությունները կրում են հսկայական վնասներ: Վերջիններիս մի մասը գոյանում է ուրիշ ձեռնարկություններին ու կազմակերպություններին վճարվող տուգանքների միջոցով: Միայն 1971—1972 թթ. հանրապետության պետարբիտրաժը քննարկել է մոտ 5.000 գործ՝ ցածրորակ արտադրանք առաքելու կապակցությամբ: Ձեռնարկությունները և կազմակերպությունները տուգանվել են ավելի քան 3,8 մլն ռուբլով: Ամեն տարի հանրապետության ձեռնարկություններն ու կազմակերպությունները սպառողներին առաքում են 10 մլն ռուբլու ցածրորակ արտադրանք:

Հնգամյակի վճռական տարում, երբ առավել սրությամբ է դրվում քիչ ծախսումներով բարձրորակ ու շատ արտադրանքի թողարկման հարցը, ձեռնարկությունների կոլեկտիվները պետք է ամեն կերպ մոբիլիզացնեն իրենց ջանքերը՝ որակը բարելավելու, սպառողի պահանջներին ու ճաշակին գոհացում տալու համար:

* * *

Մրցության կազմակերպման բնագավառում գոյություն ունեն նաև որոշակի թերություններ: Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում, «Սոցիալիստական մրցությունը, լինելով մասսաների կենդանի ստեղծագործությունը, պահանջում է ո՛չ միայն ակտիվորեն աջակցել և խրախուսել առաջավորներին, այլև ի հայտ բերել նրանց, ովքեր ետ են մնացել կամ բավարար բարեխղճությամբ չեն աշխատում: Եվ դա հարկավոր է անել հրապարակայնորեն, ի լուր ամենքի, որպեսզի մարդիկ իմանան ոչ միայն նրանց մասին, ովքեր աշխատում են ուժերի լիակատար նվիրումով, այլև նրանց մասին, ովքեր աշխատում են առանց եռանդի, առանց լարվածության» («Լենինյան ուղիով», 1973, № 1, էջ 46):



Մրցության կազմակերպման թերություն է հաճախ նկատվող ձևականությունը պարտավորությունների ստանձնման, կատարման և ստուգման բնագավառում: Դրանք առկա են նաև առաջավոր փորձի ուսումնասիրման և տարածման պրակտիկայում: Երբեմն վերջինս կրում է ձևական բնույթ այն առումով, որ առաջավոր փորձի թերթիկներում տրվում է ո՛չ թե նորարարի փորձի էությունը, այլ հիմնական տեղը հատկացվում է մրցողների լուսանկարներին, կենսագրությանը:

Թերևս մրցության կազմակերպման բնագավառում եղած թերությունների հետևանք էր այն, որ հանրապետության ավելի քան 100 արդյունաբերական ձեռնարկություններ մոտ 27 մլն ռուբլով թերակատարեցին 1971 թ. արտադրանքի իրացման պլանը, իսկ 1972 թ. 97 ձեռնարկություններ պլանից պակաս իրացրին ավելի քան 63 մլն ռուբլու արտադրանք: Անցյալ տարի թերակատարվեց նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը:

1972 թ. Երևանի բրդյա նուրբ գործվածքեղենի կոմբինատն արտադրանքի թողարկման պլանը թերակատարել է 15, ավտոդողերի գործարանը՝ 6, մահուդի ֆաբրիկան՝ 3 մլն ռուբլով: Ավտոդողերի գործարանում թերակատարվել են նաև տեխնիկատնտեսական այլ ցուցանիշները: Դրանց պատճառները բազմաթիվ են. գործարանը զգում է առաջատար մասնագիտությունների, բարձր որակավորում ունեցող կադրերի պակաս, չափազանց մեծ է կադրերի հոսունությունը: Թերություններ կան արտադրամասերի տեխնիկական վերազինման, աշխատանքի կազմակերպման, նորմավորման, արտադրական ու աշխատանքային կարգապահության պահպանման, սոցիալիստական մրցության կազմակերպման բնագավառում: Միայն 1972 թ. գործարան է ընդունվել 1.518, ազատվել՝ 1.456 մարդ: Նշված տարում պարապուրդները կազմել են մոտ 12 հազար մարդ-օր: Ինչ վերաբերում է սոցիալիստական մրցության կազմակերպմանը, ապա այն կրել է ձևական բնույթ: Ճիշտ է, բանվորներին տրվել են անձնական պարտավորությունների հատուկ ձևեր, սակայն դրանց կատարումը չի ստուգվել, չեն ամփոփվել արդյունքները, բնականաբար, չեն խրախուսվել մրցության հաղթողները: Հնգամյակի վճռական տարում գործարանում որոշակի աշխատանք է կատարվում նման անցանկալի երևույթներից խուսափելու համար:

Լուրջ թերություններ կան նաև մրցության մասնակիցների նյութական և բարոյական խրախուսման բնագավառում: Առանձին ձեռնարկություններում նյութական խրախուսման ֆոնդի օգտագործումը չի կապակցվում մրցության կազմակերպման պայմանների ու ստացված արդյունքների հետ: Հաճախ էլ թերագնահատվում են բարոյական խթանները: Մի դեպքում առաջնությունը տրվում է նյութական, մի այլ դեպքում՝ բարոյական խթաններին: Մինչդեռ հարկավոր է ճիշտ զուգակցել դրանք:

Ելնելով մրցության կազմակերպման բնագավառում տեղ գտած թերությունների վերացման անհրաժեշտությունից՝ ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական, արհմիութենական, կոմերիտական ու տնտեսական մարմիններին պարտավորեցրել է մրցության կազմակերպման և ղեկավարման պրակտիկայից վճռականորեն արմատախիլ անել ձևամոլության, բյուրոկրատական աղավաղումների տարրերը, անշեղորեն իրագործել մրցության կազմակերպման լենինյան սկզբունքները:



# ՀՈՒԶՈՂ ՄԻ ՀԱՐՑԻ ՄԱՍԻՆ

Սովետական ժողովրդի վիթխարի հասումներում արժանավայել տեղ ունի և լեզվաշինարարությունը։ Սովետական կարգերի օրոք այս բնագավառում ամբարված հարստությունը որքան մեծանշանակ, նույնքան և ոգևորիչ է։ Հանրահայտ ճշմարտություն է, որ կոմունիզմի կառուցման դարաշրջանում սովետական ազգերի փարթամացող լեզվական ատաղձը լավ է օգնում միլիոնավոր մարդկանց՝ հաղորդակցվելու և արագ առաջ մղելու օրավուր բարդացող գիտությունները, լեռնացող տեխնիկան, ճոխացող կուլտուրան և առհասարակ հանուր կյանքի արմատական վերափոխման հեղափոխական պրոցեսը։

Ակնբախ է պարբերական մամուլի խոշոր դերը ՍՍՀՄ պատմական վերընթացում, մի դեր, որը միշտ էլ բարձր է գնահատվել ՍՄԿԿ և սովետական իշխանության վերադաս մարմինների կողմից։ Բայց մեզ վայել չէ հանդչել դափնիների վրա, թեկուզ այն պատճառով, որ ստեղծարար տենդի թուլացումը և իմացատենչ հետաքրքրասիրության մարումը սովետական ժուռնալիստին դարձնում են ծուլամիտ «ծառայող», որի հետևանքով և մամուլի տարբեր օրգաններում աչք է ծակում լեզվական կուլտուրայի գորշությունը։ Այնինչ, լենինյան կուսակցությունը մեզ կոչել է մշտապես սովորել, փորձելով սովորել։ Գաղտնիք չէ, որ մեր ձեռք բերած դպրոցական ու բուհական երեկվա գիտելիքները բավարար չեն՝ պատշաճ խորությամբ ըմբռնելու և, մանավանդ, լուսաբանելու մեր առջև ծառացող և՛ բարդ, և՛ շատ խնդիրները։

Գիտատեխնիկական հեղափոխության հարուցած մարդկային կյանքի արագընթաց փոփոխությունների, կոսմիկական անհուն տարածությունների գրոհման այս օրերում, ժուռնալիստը չպետք է ալեկոծվող իրականության լուսանկարչական ստատիկ անդրադարձնողը լինի։ Նրան պետք են ո՛չ միայն գրելաձիրք, այլև գիտելիքների մեծ պաշար և, որ հույժ կարևոր է, մտահորիզոնի անվերջ ընդլայնում։ Հնարավոր չէ պատկերացնել սովետական ժուռնալիստ, որը զերծ լինի համաշխարհային գիտության ու կուլտուրայի անսպառ նվաճումների տիրապետման ձգտումից։

Բանն այն է, որ հանրապետության մամուլի զարգացմանն ու կատարելագործմանը զգալիորեն խոչընդոտում է այն իսկությունը, որ դեռ կան լրագրողներ, ովքեր չեն հաղթահարել այն թյուր ու վնասակար ըմբռնումը, թե աղքատիկ լեզվով հնարավոր է արծարծվող հարցում լիովին բացահայտել ճշմարտությունը, սևեռվող գաղափարը։ Այսպես մտողները, հավանաբար, չգիտեն,



որ մարդկային լեզուն ու միտքն օրգանապես զոդված են և կազմում են միասնական մի պրոցես։ Ուստի, աղարտված բառապաշարով հնարավոր չէ ընթերցող զանգվածներին համոզել, թե որն է խնդրի էությունը կամ ճշտությունը։ Ակներև է, որ լեզվական արատները մշտապես հարուցում են մտքի աղավաղումներ։

Օրինակ, չի՞ աղճատվում միտքը, երբ գրում ենք՝ «հողը մարդկանց տրվում է իբրև ռոճիկ», «Ձուլարանն ուներ վեց փուռ... հալվում էր պղնձը... վերածվում թիթեղների», «...գործավոր-սեփականատեր արհեստավորի փոխանցումը վարձու բանվորի», «...ապրելու իրավունքից զրկված կենդանիներ» և այլն։ Իրականում այս օրինակները վկայում են, որ գրիչը չգիտե, թե հողը ռոճիկ լինել չի կարող, իսկ հողով հատուցումն այլ կերպ է կոչվում. ձուլվող պղինձը թիթեղի չի վերածվում և ոչ էլ արհեստավորն է փոխանցվում բանվորի։ Իրավագիտական և ոչ մի գիտելիք չունեցող հազարավոր մարդիկ գիտեն, որ կենդանական աշխարհն իր տերմիններն ունի և համենայն դեպս զերծ է իրավական հարաբերություններից։

Այստեղից հետևում է, որ աստիճաններն ու կոչումները ոչինչ չեն ավելացնում մեր մտավոր գանձերի, լեզվաիմացության վրա։ Ահա թե ինչու ժուռնալիստը պարտավոր է անվերջ հարստացնել իր բառապաշարը, կատարելագործել ու հղկել ոճը, հետևել լեզվի նորագույն նվաճումների ընթացքին, ընթեռնել գեղարվեստական գրականության լավագույն երկերը և կատարելագործել գրչի վարպետությունը։

Մեզ թվում է, թե ժուռնալիստական պրոֆեսիան ևս կոչում է, ստեղծագործական հակում, առանց որի դժվար է կայուն հետքեր թողնել մամուլի էջերում։ Ի դեպ, ժուռնալիստի անհանգիստ զբաղմունքը թելադրում է՝ կատարյալ աշխատասիրություն, անդուլ հետաքրքրասիրություն, առտնին հասարակական կյանքի հետ համաքայլ ընթանալու, բայց և նրանից սովորելու ունակություն։ Արդ, այս խորհրդածությունից հետո, չենք կարող անտեսել այն իրողությունը, երբ հանրապետության որոշ ժուռնալիստներ տակավին տառապում են ստեղծագործական անհոգությամբ և անգամ վատ գիտեն մայրենի լեզուն։

Հայտնի է, որ վատ գրված հոդվածը, բրոշյուրը կամ գիրքն արժանանում են ընթերցողների արհամարհանքին։ Չէ՞ որ շատ է բարձրացել զանգվածային ընթերցողների կուլտուրայի մակարդակը, նրանցից շատերը մեզ հետ մրցում են իրենց գիտելիքներով ու ո՛չ միայն մայրենի, այլև օտար լեզուների իմացությամբ։ Սա այն «արգելքն» է, որի վրայից չես ցատկի գլուխ պահելով։ Գիտելիքով և հոգևոր հարուստ պաշարով միայն կարող ես հաղթահարել այդ «պատնեշը»։

Մի առիթով Մ. Գորկին գրել է. պայքարը հանուն լեզվի մաքրության, իմաստային ճշգրտության ու սրության, դա պայքար է. կուլտուրայի զենքի համար։ Հանճարեղ գրողի սույն պատգամի հետևողական կիրառումը մամուլի աշխատողների բարոյական պարտքն է, որը պետք է հատուցվի խղճի մտոք։

Ժամանակն է, որպեսզի հանրապետության մամուլի կոմիտեն, ԳԱ լեզվագիտության ինստիտուտը, տերմինաբանական կոմիտեն, համապատասխան մինիստրությունները և շահագրգռված այլ մարմիններ միացյալ ուժերով ու հաստատուն պլանով, տևական գործունեությամբ նպաստեն լեզվաշինարարության կենսահույզ խնդիրների լուծմանը։ Որակյալ թարգմանիչների պատրաստումն ու բազմաբնույթ բառարանների ամենամյա հրատարակումն այսօր ան-

հետաձգելի հարց է։ Հասունացած է տերմինների ու նոր բառերի մշակման և միասնական կիրառման խնդիրը, որի լուծումը պահանջում է լեզվաշինարարության ամենամսյա բյուլետենի հրապարակում, որը մեծապես կօգնի մեզ ճիշտ գրելու և ճիշտ գործածելու նոր տերմիններն ու նոր բառերը։

Լեզվի կուլտուրայի քամահրման երևույթներ կան նաև լույս տեսնող գրքերում, բրոշյուրներում, տեղեկագրերում, տպագրվող դիսերտացիաներում, նույնիսկ որոշ դասագրքերում։ Մերկախոս չլինելու համար ստորև հրապարակում ենք սույն հոդվածը պարբերական մամուլի տարբեր օրգաններից ու տպագիր աղբյուրներից քաղված լեզվական խեղաթյուրումների մասին։

## ԳՐԵՆՔ ՃԻՇՏ ԵՎ ԱՐՏԱՀԱՅՏԻՉ ԼԵԶՎՈՎ

> Եվ լեզուն, որ ուրիշ բան չէ, եթե ոչ մտքի ճայտարարը, բնականաբար պիտի նմանի մտքին, նրա ձևը ուրիշ բան չէ կարող լինել, եթե ոչ մտքի ձևի արտացոլումը։
>
> Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Ամեն գործավոր իր գործիքն ունի, գրողն ու ժուռնալիստը՝ գրիչ։ Հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում, մանավանդ ստեղծագործական աշխատանքի ոլորտում, անհրաժեշտ են ունակություններ ու ձիրք, երևակայություն ու մտքի թռիչք, բնական ու հասարակական երևույթները խորապես ըմբռնելու, ճիշտ հետևությունների հանգելու իմացություն, հաստատուն աշխարհայացք, համոզմունք, սկզբունքայնություն... Գրողին, ժուռնալիստին, խմբագրական, գրական աշխատանքով զբաղվողին այս ամենից զատ անհրաժեշտ է լեզվի խոր, բազմակողմանի իմացություն, քանի որ նրանց, այսպես ասած՝ արտադրամիջոցը՝ բանելու գործիքը, միայն լեզուն է։ Լեզվի անբավարար գիտակը վատ ժուռնալիստ է։

Պարզ, ճիշտ, ասացվածքներով, թևավոր խոսքերով ու ասույթներով, գրական կերպարներով համեմված կենդանի լեզուն այն զորավոր միջոցն է, որը կարող է ընթերցողին մտավոր սնունդ տալ։ Մեր խորին համոզմամբ, ընթերցողի շահերի ոտնահարում է նշանակում մամուլում հրապարակվող որոշ գրքերի ու բրոշյուրների սխալաշատ լեզուն։ Ծագելով մտքի հետ, լեզուն մտածողության արտահայտչամիջոց է. ինչպես անիմաստ, փքուն պերճախոսությամբ անհնար է սքողել մտքի աղքատությունը, այնպես էլ ամենաճիշտ, խոր միտքը, ամենաբուռն զգացմունքը հնարավոր չէ արտահայտել աղքատիկ լեզվով, չգտնված բառերով... Նման լեզվով գրված նյութն ամենևին չի հուզի ընթերցողին, չի ազդի նրա վրա։

Հանրահայտ է, թե որպիսի՜ կարևորություն էր տալիս Վ. Ի. Լենինը ժուռնալիստի պրոֆեսիոնալ հմտությանը, ոճին, լեզվին, դրանք համարում ժուռնալիստի մարտական զենքը։ Ժուռնալիստիկան, ըստ Իլյիչի, ո՛չ միայն հասարական-քաղաքական, այլև գրական բնագավառ է։ Ինչպիսի՜ ջանադրությամբ էր նա մշակում ստացված հոդվածներն ու նյութերը, միշտ աչքի առաջ ունենալով բանիմաց ընթերցողին, ամենևին չանտեսելով հեղինակին։ Իլյիչը շատ էր մտահոգվում, հիշում է Ն. Կ. Կրուպսկայան, որ պահպանվի թղթակցության ոգին, ոճը, ինքնուրույնությունը, չգունաթափվի այն, պահպանի իր ուրույն դեմքը։ Նա խստագույնս քննադատում էր «Свобода» ամսագիրը, որն այնպիսի տպավորություն էր թողնում, ասես ամբողջը մեկ մարդ էր գրել։



Լեզվի պարզությունը (ոչ պարզունակությունը) մտքի խորության հետ համատեղելու լենինյան պահանջն այժմեական է և մեր օրերում։ Շատերն են ուսումնասիրել Լենինի ժուռնալիստական գործունեությունը, հիացել նրանով, գրքերով ու գրքույկներով ներկայացրել նրա հույժ ուսանելի, բանիմաց խմբագրության բազմաթիվ օրինակներ։ Ծանոթանալով Լենին-ժուռնալիստին նվիրված աշխատություններին՝ մտածում ես. հիրավի, ամեն մի ժուռնալիստ պետք է իրազեկ լինի նրա խմբագրական հարուստ փորձին, ուսանի նրանից։ Այդ անհրաժեշտ է և մեծ չափով կօգնի մեր մամուլի աշխատողներին՝ տպագիր խոսքը դարձնելու ավելի հարուստ, գրական առումով՝ ավելի կատարյալ։ Կարդում ես մեր պարբերական մամուլը և պատահում է՝ հոդվածը, ակնարկը գրված են քերականորեն ճիշտ, լեզվական սխալներ գրեթե չկան, կամ սակավ են, բայց լեզո՜ւն... հյութազերծ, ճզմած լիմոն լինի ասես։ Ու մտածում ես. մի՞թե սա այն լեզուն է, որով ստեղծագործել և ստեղծագործում են մեր մեծ արձակագիրներն ու պոետները, որով մամուլում և առանձին աշխատություններով բազմիցս հանդես են եկել և հանդես են գալիս կուսակցական, քաղաքական-գրական շատ գործիչներ, հրապարակախոսներ...

Մի առիթով հարկ եղավ հանգամանորեն ծանոթանալու 1972 թ. լույս ընծայված մի քանի գրքույկների ու որոշ ամսագրերում հրապարակված հոդվածների։ Ու, թեև, անկեղծ ասած, մեր նպատակը շատ հեռու էր լեզվական սխալներն ուշադրության առնելուց, սակայն դրանք այնքա՜ն շատ ու այնպե՛ս բազմազան էին, որ չանդրադառնալ դրանց չկարողացանք։ Ապա, երբ վերանայեցինք մեր ընդգծումները, վերստին մեր առջև հառնեց հանճարեղ լռեցին՝ իր ջինջ ու բարի հայացքով, լսեցինք նրա հումորով ու մորմոքով լի ձայնը. «Ասում ենք հայերեն չգիտեն, ընթերցողն էլ կկարծի, թե խոսքը Վրաստանի հայերի վրա է»։ Թող թույլ տրվի մեզ էս ավելացնել՝ կամ՝ արտասահմանում ապրող հայերի։ Ո՛չ, հազար անգամ ո՛չ, հարգելի ընթերցող. նրա խոսքը հայ ուսուցիչների, մերը՝ նրանց այն աշակերտների մասին է, որոնց մասնագիտությունը գրելն է, ժուռնալիստիկան։ Քանզի, եթե հոդվածագիրները լրագրողներ չեն, այլ ամենատարբեր բնագավառների աշխատողներ, ապա նրանց գրածները տպագրության պատրաստողները, անտարակույս, ժուռնալիստներ են։

Այժմ բերենք մի շարք արտառոց օրինակներ, որոնց ուղղումը համարեցինք անիմաստ։ Ի դեպ, անիմաստ է նշել բերված օրինակների աղբյուրները, որովհետև այդպիսիք սպրդում են մամուլի շատ օրգաններում։

«Ադրբեջանի բնական պայմանների բազմազանությունը ըստ բարձրության օրինաչափ կերպով ենթակա է ուղղաձիգ գոտիականության», «...հեռանկարը եզրափակվում է... համայնապատկերով», «...տեխնիկական կուլտուրաների մշակությունը ճանդիսանում են միութենական մասնագիտացման նյուղերը», «Հացահատիկի բաժինն, ընդհակառակը, նվազում է, քանի որ նրանք նահանջում են բարձր, դեպի լեռները, գրավելու համար բամբակենու համար աննպաստ հողեր», «Թուրքմենստանի ժողովրդական տնտեսության արտադրած ապրանքների ներքին փոխադրումները, արտահանումը, ինչպես և կարիք զգացվող ապրանքների ներմուծումը և ուղևորների փոխադրումները կատարվում են հիմնականում քաղաքային ճանապարհներով», «...որոնք (ճանապարհները) անցնում են... վիթխարի ուղղորդ ժայռերի եզրին փորված նեղլիկ քիվերով, որտեղից մի անզգույշ շարժումը

կարող էր գրատախին ու հեծվորին զվարճավինեչ անուկի խորխորատը», «Հանրապետության հարթություններում ուրվագծված են աղի լճեր, որտեղ աղերի ինքնանստեցում է կատարվում», «Ղազախական ՍՍՀ ընդարձակ տերիտորիայում բնությունը օրինաչափորեն ենթակա է զոնայականության՝ հարավից հյուսիս հարթավայրերում և ցածրից վեր՝ լեռներում», «Հայաստանում բողարկվում է մետաղահատ հաստոցների լայն նոմենկլատուրա», «...ցուցադրվել է ծրագրային կառավարման սիստեմներով հանդերձված սարքավորում», «Ձեռնարկությունը արդեն յուրացրել է էլեկտրաշարժիչի հիմնական կառուցումները», «Ներկայումս գուլպեղենի արտադրության համար ստեղծվել են թելի հսկողության, գուլպաների ձգման և որակի ստուգման պրոցեսի ավտոմատացումով կլոր գուլպեղեն գործող մեքենաներ: Ստեղծվել են մեխանիզմներ, որոնք թույլ են տալիս ավտոմատացնել ուժեղացված թելի ավելցուկի հեռացումը», «Սարքի համար տվիչ է ծառայում փոփոխական հոսանքի տախոգեներատորը, որը գծային կախվածություն ունի խարսխի պտտման արագության և գեներացող լարվածության միջև: Տախոգեներատորի աշխատանքային օրգանը միանում է իլին...», «Տախոգեներատորից եկող լարումը մատուցվում է կիսահաղորդչային ռելեի մուտքին, և նայած մուտքային ազդանշանի մեծությանը, աշխատեցնում է ժամանակի ռելեներից որևէ մեկին, համապատասխան հաշվիչի մուտքին տալով թույլտվություն», «Հարվածային աղմուկից ձայնամեկուսացումը չափելիս օգտագործվող ստանդարտային հարվածային մեքենայի աղմուկը միշտ չէ, որ լավ կոռալյացիա ունի ծածկի վրայի քայլերի աղմուկի հետ», «Թուրքալեզու տարրերի մակարդվելով առաջացան թուրքմենական ցեղերը», «Այսպես օրինակ, միայն մեկ պարամետրի՝ տնտեսողաբերության, գնահատման համար մտցված են մի շարք գործակիցներ, որոնց անհրաժեշտությունը մեկնաբանվում է լեռնային ճանապարհներում ավտոմոբիլի շարժումով», «Աշխատանքային անվի կունդերի մաշվելու ինտենսիվությունը 3—4 անգամ ավելի մեծ է նրա մակերևույթի մաշվածքից, որը մաշվում է ազատ լողացող հղկանյութով և կավիտացիայով», «..բարձրացվել են տվյալ սովխոզում և այլ գյուղատնտեսական ձեռնարկությունում ըստ մասնագիտության աշխատող տրակտորիստ մեքենավարներին աշխատանքի սաժի համար տարվա վարձատրության նկատմամբ տրվող հավելման տոկոսները», «Բելովեժյան անտառի սահմանի ընդհանրությունը արգասավորում է սովետական և լեհ գիտնականների համատեղ աշխատանքը», «Խաղողի այգիները, եթե դիտելու լինենք այգեթաղի տեսանկյունից...», «Այգիները բերվեն կուլտուրական տեսքի»...

Բերենք մի քանի օրինակներ մեր ուղղումներով.

| Գրված է | Ճիշտ կլիներ |
|---|---|
| Այստեղ միմյանց ներքափոխում են տափաստաններն ու անտառատափաստանները... | ...միմյանց հաջորդում են... |
| Ջրանցքն սկսվում է... գյուղի մոտ... ինքնահոսով անցնում է ... | Ջրանցքն սկսվում է... գյուղի մոտ... հոսում... |
| Ավտոմոբիլային ճանապարհների ընդհանուր ձգվածությունը անցնում է 110 հազար կմ-ից... | Ավտոմոբիլային ճանապարհների երկարությունն ավելի քան 110 հազար կմ է... |
| ...անհրաժեշտ է օգտագործել մեքենա-հաշվողական բյուրոները (ՄՀԲ), որոնք պետք է հանդերձված լինեն... հաշվապահական և գումարող մեքենաներով: | ...որոնք պետք է համալրված լինեն... մեքենաներով: |
| Քաղաքների լանդշաֆտային տեսքի, նրանց | Քաղաքների լանդշաֆտի, գեղարվեստա- |



| | |
|---|---|
| էսթետիկայի ձևավորման մեջ կարևոր տեղ են տրվում... | կան ձևավորման առումով կարևոր են... |
| ...ավտոմոբիլային արդյունաբերությունը... կարող է թողարկել ավտոմոբիլներ, որոնք բավարարում են բազմապիսի աշխարհագրական պայմանների կողմից ավտոմոբիլին ներկայացվող շահագործական պահանջները... | ...կարող է թողարկել աշխարհագրական բազմապիսի պայմաններին համապատասխան ավտոմոբիլներ: |
| ...սովխոզն զբաղվում է նաև կաթնամսային ուղղություն ունեցող տավարաբուծությամբ, խոզաբուծությամբ և նույնիսկ ճագարաբուծությամբ: | ...զբաղվում է տավարաբուծությամբ, խոզաբուծությամբ և նույնիսկ ճագարաբուծությամբ: |
| «Այո, սեփական աչքերով բոլորն ականատես եղան, թե ինչպես կարելի է էրոզացված սարալանջը վերածել գեղեցիկ կանաչ փարթամության»: | Բոլորն ականատես եղան, թե ինչպես կարելի է հողմահարված սարալանջը փարթամորեն կանաչապատել: |
| Մսուրում գտնվող կովերի օրգանիզմում վիտամին ա են սրսկում: | Մսուրային շրջանում կովերին սրսկում են վիտամին A: |
| ...բուծվել է տեղական տավարը, որը կենդանի քաշով ու մթերատվությամբ չափազանց բարձր մակարդակի վրա է գտնվում: | շատ բարձր են՝ բուծված տեղական տավարի կենդանի քաշը և մթերատվությունը: |
| ...բարձր արտադրողական աշխատանքին արգելակում են մի քանի ազդակներ: | ...արգելակում են մի քանի հանգամանքներ: |
| Ագրեգատն աշխատում է տարբեր բանվորական օրգաններով... Այդպիսի բանվորական օրգաններն են՝ գութանները, փխրեցուցիչը... | ...տարբեր բանող մասերով... այդպիսի բանող մասերն են՝ գութանները, փխրեցուցիչը: |
| անընդհատ փոփոխվող ծովի մակարդակը բարդ տեխնիկական պրոբլեմներ է դնում մարդու առջև: | ծովի մակարդակի հարափոփոխությունը տեխնիկական բարդ խնդիրներ է հարուցում: |
| տիրապետում են կաղնին, հացենին, շագանակենին... | գերակշռում են... |
| Կիրգիզիայում ստեղծվել է նաև խողովակաշարային տրանսպորտը, որով փոխադրվում է այրվող գազ: | ...ստեղծվել են նաև գազատար ուղիներ: |
| Ի մի հավաքեցին կիրգիզ ժողովրդի բաղադրիչ բոլոր էթնիկ տարրերը: | Միավորեցին կիրգիզ ժողովուրդը կազմավորող էթնիկական բոլոր խմբերը: |

Հապա նորամույծ բառակապակցություննե՞րը... Ընթերցողը թող չկարծի, թե ընդհանրապես դեմ ենք նորամուծություններին, նոր դարձվածքների, բառակապակցությունների ստեղծմանը. ամենևին. երբ խորհում ենք նորաստեղծ բառերի, նոր փոխառությունների, լեզվական ձևերի անխուսափելիության մասին, հիշում ենք մեր մեծ մտածողներից Մ. Նալբանդյանին. հիրավի, «Լեզուն որևէ ուսմունք, այսինքն՝ դոկտրինա չէ... լեզուն օրենք չէ, չի հրամանագրվում, որևէ մտքի արտահայտման լավագույն ձևը եթե գտնենք որևէ գավառում, մենք այդ պետք է մտցնենք լեզվի մեջ, բայց ոչ պարտադրաբար, կամ պաշտոնապես...» (Հատվածներ Աշխարհաբարի քերականության ներածությունից, Ընտիր երկեր, ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1953, էջ 647): Ճիշտ է, լեզուն օրենք չէ, բայց այն կանոնարկվել, կանոնարկվում է, ունի իր օրենքներն ու օրինաչափությունները, ավանդույթներն ու ավանդախախտումները... Ոչ ոք իրավունք չունի պարտադրելու անպայման այս բառերով ու դարձվածքներով շարադրելու իր մտքերը. բայց և ոչ ոք նման բառակապակցություններ, դարձվածքներ ստեղծելու իրավունք չունի. «Չյունաթուխչք լեռներ», «թարմ թեմա», «հզոր անտառներ», «լույս տեսավ... կինոնկար», «էֆեկտավոր է ասվում», «դեմագոգիայի որոշակի աստիճանով», «հերոսավորվել», «հում փաստ»,

«պոդվալային հոդված», «համաճարակ հիվանդություններ», «տեսական մարզանքները մեղանչում են», «բնաջինջ պատերազմներ», «տեղի է ունեցել հետադիմություն, քայքայում», «կապիտալիզմի գայլի օրենք», «Դարվինի գոյության պայքարի թեորիան», «անտառային համակցությունների պուրակներ», «մթնոլորտային ճակատ», «ոսկու հանքերի բնակավայրեր», «պրիմիտիվ հողեր», «գետաբերանների նստեցման շրջաններ», «բուսաաշխարհագրական պրովինցիաներ», «սելավային հեղեղներ», «ստեղծագործական կառուցման աղբյուր», «անհանգիստ ռելիեֆ», «ընդլայնված մատուցման մեծացումը հանգեցնում է...», «սենաժը իրեն ցույց տվեց ամենալավ կողմերով», «պտղամսի նպաստավոր մեխանիկական կազմ»...

Փորձենք տալ նաև նման սխալներից մի քանիսի ճիշտ ձևը.

| Գրված է | Ճիշտ կլիներ |
| --- | --- |
| անտիցիկլոնային հոսանքների շրջանառություն. | ...շրջապտույտ. |
| ոռոգչական ջրանցքներ | ոռոգիչ ջրանցքներ |
| աղաջուր լիճ | աղի լիճ |
| պարոմային նավեր | լաստանավեր |
| առաջ անցնող տեմպեր | առաջանցիկ տեմպեր |
| դրամատիկ տարիներ | ծանր, դժվարին տարիներ |
| մարդկանց պատմական ընդհանրություն | ...հանրություն |
| աշխատանքային մակերևույթներ | աշխատամակերես |
| իր մեջ ընդգրկել | ընդգրկել |
| ետ նահանջել | նահանջել |
| բարձրացել է գյուղատնտեսության մեքենայացումը | ...մեքենայացման մակարդակը |
| դաշլիճում թագավորում էր տոնական մթնոլորտ | ...տիրում էր տոնական մթնոլորտ |
| ...գյուղատնտեսական կուլտուրաների փոխադրման վրա աշխատող ավտովարորդներ | գյուղատնտեսական կուլտուրաներ փոխադրող ավտովարորդներ |
| Ս. Մ. Կիրովը... Ա. Պ. Սերեբրովսկին խոր կերպով թափանցում էին շմիդտցիների կարիքների մեջ | ...խորապես մտահոգված էին... կարիքներով |

Ինչպես այլ լեզուների, նույնպես և հայերենի բառապաշարի հարստության վկայությունն են հոմանիշները— նույնիմաստ կամ իմաստով իրար շատ մոտ բառերը, որոնց գործածությունը հույժ կարևոր է՝ հոդվածում, պարբերությունում, նույն նախադասության մեջ միևնույն բառը կրկնելուց խուսափելու համար։ Մի քանի օրինակներով ցույց տանք, թե ինչպես մի շարք բառեր անհարկի գործածվում են, դառնալով բառապաշարի աղքատության ակընբախ վկայություններ։ Այսպես.

| Գրված է | Ճիշտ կլիներ |
| --- | --- |
| ...գործարանում սկսել է գործել | ...սկսել են բանել |
| Տարբեր ռեժիմներում աշխատող սարքավորման աշխատանքի տևողությունը | ...գործող սարքավորման աշխատանքի տևողությունը |
| ամբողջ տեխնիկան աշխատեց անխափան | ...գործեց անխափան |

Ասես հայերենն իսպառ չի ունեցել բանել, դառել, գործել, ջանալ, տքնել, վաստակել և այլ հոմանիշները, որոնց բոլորի տեղը հափշտակում են լցնել



միայն աշխատել բառով։ Ոմանց մոտ նույնիսկ աշխատանքը ոտքեր է առել ու՝ «արհեստանոցներում հարվածային աշխատանք է գնում»։ Իսկ գնալ բայն ամենուր է. «զարգացումը գնում է (զարգանում է), «քայքայումը գնում է» (քայքայվում է), «մասնագիտացումը պետք է գնա» (պետք է մասնագիտացվի), «աշնանացանները ձյան տակ են գնում» (աշնանացանը ձնածածկվում է)... Այդպես էլ տալ բայը. «վարձատրություն տալ» (վարձատրել), «թույլտվություն տալ» (թույլատրել), «խոստում տալ» (խոստանալ)...

Նույն վիճակում է և աճել բայը. աճում է ամեն ինչ և՛ մարդը, և՛ բույսը, և՛ բարեկեցությունը, և՛ աշխատանքը, և՛... ավելի լավ կլինի դիմենք օրինակների. «Աճել է նաև գյուղատնտեսական կադրերի որակավորումը» (թերևս բարձրացել է), «թողարկումը կաճի» (կավելանա), «ավելացել է ավելի քան 2 անգամ» (ավելի քան կրկնապատկվել է), «եկամուտի աճը կկազմի» (եկամուտը կավելանա), «արդյունաբերությունը աճել է» (զարգացել է), «փարթամ աճ ունեն տնկարանի առաջին դաշտում աճեցրած ծիրանի ու խնձորի վայրակները» (փարթամացել են... դաշտում աճեցրած...)։ Փակագծում առնված, ինչպես և մեծանալ, եռապատկվել քառապատկվել, բազմապատկվել բառերի փոխարեն, օգտագործվում է միայն աճելը...

Ահա և կապերի, կապական բառերի սխալ գործածության օրինակներ.

| Գրված է | Ճիշտ կլիներ |
| --- | --- |
| մետաղների մեծ մասի գծով արտադրության լրիվ ցիկլ է սկսվել | սկսվել է մետաղների մեծ մասի արտադրության լրիվ ցիկլ |
| մորթեղենի ու մուշտակեղենի արտադրության գծով | մորթեղենի ու մուշտակեղենի արտադրությամբ |
| էներգետիկական պոտենցիալի գծով | էներգետիկական պոտենցիալով |
| պրոֆեսիայի գծով | պրոֆեսիայով |
| գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության գծով | ...բերքատվությամբ |
| Հետևողական աշխատանքներն այդ ուղղությամբ... պետք է տարվեին երկու ուղղությամբ | Հետևողական աշխատանքներն այդ ասպարեզում... |
| Հանրապետության ձեռնարկությունները պետք է գործնական միջոցառումներ նախաձեռնեն այդ պլանների իրացմանը և արտադրության ու աշխատանքի կազմակերպման մակարդակի բարձրացմանը նպաստող միջոցառումներ անցկացնելու ուղղությամբ: | Հանրապետության ձեռնարկությունները պետք է ամեն ինչ անեն այդ պլանների կատարմանը և արտադրության ու աշխատանքի կազմակերպման մակարդակի բարձրացմանը նպաստող միջոցառումների կենսագործման համար։ |

Մի քանի օրինակ տակ ետադրության այսպիսի նորաձև գործածության. «Դաշտային կերաճայթայթման տակ են դրվելու... ոռոգելի հողեր», «...հացահատիկի ցանքի տակ դրվել է 15 հեկտար տարածություն» (ցանքին հատկացվել է), «Բամբակենու տակ դրեցինք... հողատարածություն» (հատկացրինք)։

Ինչպես բոլոր, այնպես էլ կապական բառերն արտահայտում են դրական և բացասական երանգ. երբ բացասականի մասին է խոսքը, երբեք չի ասվի շնորհիվ, արդյունքով, իսկ երբ դրականի մասին է՝ հետևանքով, պատճառով... Մինչդեռ մեր քաղած օրինակները ցույց են տալիս, որ ամենևին չեն տարբերակվում այս կապական բառերը։ Այսպես.

| Գրված է | Պետք է լինի |
|---|---|
| «տարած հաղթանակի նետևանfով» | ...հաղթանակի շնորհիվ |
| «որի հետևանքով սկսվեց արտադրողական ուժերի վերելքը և զարգացումը | ...որի շնորհիվ սկսվեցին... վերելքը և զարգացումը |
| ռեֆորմի նետևանfով գյուղացիները ստանում են հողամասեր | ռեֆորմի շնորհիվ... |
| Սոցիալիստական ինդուստրիայի նետևանfով | ...շնորհիվ |
| ...որի նետևանfով ձևակերպվեց ազգային պետականությունը | ...որի շնորհիվ կազմավորվեց ազգային պետականությունը |

Նույնպիսի շատ օրինակներ կարելի է բերել նաև մոտ, դեպի, շուրջ (այն էլ ոչ թե շուրջ, այլ շուրջը) կապերի սխալ գործածության: Մոռացվել են՝ թերևս, հավանաբար, գրեթե եղանակավորող բառերը: Մեր կարծիքով, բառապաշարի աղքատության հետևանք է և՛ ցույց է տալիս, թույլ է տալիս (և՛ շնչավորը, և՛ անշունչը) արտահայտությունների համատարած գործածությունը. չէ՞ որ կան դրանց հոմանիշները— արտացոլել, բացահայտել, արտահայտել, վերհանել, ներկայացնել, նկարագրել, դրսևորել, հնարավորություն ընձեռել...

Մեր լեզվի հարստացման լավագույն միջոց են հոմանիշները: Ա. Սուքիասյանի կազմած Հոմանիշների բառարանը, մեր շատ այլ բառարանների հետ մեկտեղ, պետք է լինի ամեն մի ժուռնալիստի սեղանի գիրքը:

Մամուլի աշխատողներին լավ հայտնի է, թե ինչ է նշանակում տեղի սղություն. հաճախ հարկ է լինում ամենալավ հոդվածն իսկ կրճատել, մինչդեռ կարելի է պարզ, հակիրճ, ճիշտ գրելով զգալի տեղ խնայել: Մեկի փոխարեն օգտագործվում է 2—3 բառ, ձգձգվում, խճողվում են և նախադասությունը, միտքը: Այսպես. «մասնակցություն է ունենում» (մասնակցում է), «լայն տարածում ունեն» (ամենուր տարածված են), «զարգացում են ստացել» (զարգացել են), «գործողության մեջ դրվեցին» (գործադրվեցին), «ակտիվ մասնակցություն բերեցին» (ակտիվ մասնակցեցին), «լայն տարածում կստանա» (կտարածվի), «գործողության մեջ կմտցվեն» (կգործադրվեն), «ստուգման ու քննարկման ենթարկելով» (ստուգելով և քննարկելով), «բարեկամները պարբերաբար կատարում են հանդիպումներ» (հանդիպում են), «կիրառության մեջ դրվել» (կիրառվել): Կամ ինչո՞ւ ասել— «լեռնահանքային արդյունաբերությունը... բացակայում է» (չկա), «բացակայում է տեղական մետաղաձուլական բազան» (չկա), «կղզիներում երկաթուղիները բացակայում են» (երկաթուղիներ չկան), «ըստ էության բացակայում էր էլեկտրաէներգիան» (չկար):

Ինչպես հայտնի է, նախադասության անդամների այն կապակցությունը, երբ որևէ լրացում ընդունում է իր լրացյալի թելադրած ձևը, կոչվում է խնդրառություն կամ հոլովառություն: Ահա այս հոլովառությունն է, որն այնպես հաճախ խախտվում է մամուլում.

| Գրված է | Պետք է լինի |
|---|---|
| «Դրավականն են... կոմունիստական հասարակության կառուցման համար» | գրավականն են (ինչի՞) ...կառուցման |
| մեծ ուշադրություն է դարձվում արդյունաբերության այս ճյուղի զարգացմանը, որի համար հատկացվելու է... | մեծ ուշադրություն է նվիրվում... զարգացմանը, որին հատկացվելու է |
| Այստեղ նրանք մոտ են գտնվում երկրի մակերեսից | ...նրանք մոտ են երկրի մակերևույթին |
| Դա հնարավորություն կտա բարձրացնել | ...հնարավորություն կընձեռի բարձրացնելու: |



Իսկ համաձայնության խախտումներն այնքան շատ են (ենթակայի և ստորոգյալի, բայի ժամանակների և այլն), որ հարկ չենք համարում օրինակներ բերել: Լեզվական կուլտուրայի նման վիճակում դեռ վաղ ենք համարում կետադրությանն անդրադառնալ:

Համեմատությունները, խոսքի գեղարվեստական պատկերները լեզուն դարձնում են արտահայտիչ, տպավորիչ ու գեղեցիկ: Դրանց տեղին ու ճիշտ գործածությունը ևս նույնքան կարևոր է, որքան բառերինը: Սակայն շատ հաճախ կարելի է հանդիպել նման «գեղարվեստական համեմատությունների», անհարկի, տգեղ գեղեցկախոսությունների, արտահայտչաձևերի. «Հացը հիմա, ասես լեռնային գետակ հոսել է կալը», «Երկնքի կապույտն էլ գարնան կաթնագույն ամպի մի կտոր չէ, պարզ է՝ կռունկի աչքի նման», «...լեռների մեջ թառած Տաջիկստանը ևս ապրում էր պատերազմի հոգսերով ու նրա հասցրած տառապանքներով»:

Ցավով նշում ենք, որ մեր քաղած օրինակների միայն թվարկումը կկրկնապատկեր այս հոդվածի ծավալը. ուստի, սահմանափակվենք, եզրակացնելով. լեզվական քարացած ձևերը մտքի ոչ ճկունության, սահմանափակ զարգացման հետևանք են: Մի՞թե այդպես կգրի Տերյան, Դուրյան, Մեծարենց, Վարուժան, Իսահակյան, Բակունց, Չարենց կարդացած մարդը. գրողներ, որոնց լեզվին մշտապես հաղորդակցվելն ինքնին բառապաշարի հարստացման, ոճի կատարելագործման լավագույն միջոց է: Թող սխալ չհասկանան մեզ: Մենք չենք պահանջում գյուղատնտեսության, արդյունաբերության կամ գիտական-տեսական հոդվածները գրել պոետական լեզվի պատկերավորությամբ, նրանց մտահնարներով. քա՛վ լիցի: Ուզում ենք ասել, որ նրանց կարդացած մարդը չի գրի նման աղավաղված, սխալաշատ, աղքատիկ լեզվով, իսկ մշակողի կարողությունը եթե այդքան է, գրիչը ցած կդնի ու կզբաղվի ավելի օգտակար, և՛ իր ուժերին, և՛ կարողություններին համապատասխան գործով:

Ինչպես ամենուր, ժուռնալիստիկայի ասպարեզում ևս իր տեղում լինելը շատ կարևոր է: Այստեղ արդեն նրբացուցիչ դեպք հանցանաց չի կարող լինել: Երբ ասում ենք գեղարվեստական, քաղաքական գրականություն, լրագրային, ամսագրային լեզու, այդ պետք է ընդունել պայմանականորեն:

Լեզուն մի անգամ չեն սովորում ու հաշիվները մաքրում դրա հետ: Գրեցինք այս խոսքերը և նորից հիշեցինք Մ. Նալբանդյանին, որ, հիրավի, տեղին է քաղվածաբար բերում Բեկոնի հետևյալ միտքը. «Կարդալը հարստացնում է մարդու միտքը, խոսելու մեջ վարժվելը հաջողագյուտ է անում նորան, իսկ գրելը սովորեցնում է ճշտությյան»:

Այսքանից հետո էլ երբեմն մտածում ենք՝ պե՞տք են արդյոք այսքան շատ բանասերները, լեզվաբանությամբ, գրականությամբ զբաղվողները: Նրանք պե՛տք են. պետք են լեզվին լավ տիրապետելու, ապա այն ուսուցանելու, հրատարակչություններն ու խմբագրությունները գրական-խմբագրական բանիմաց աշխատողներով ապահովելու համար: Անհրաժեշտ է ինչպես հարկն է օգտագործել նրանց՝ սխալները տեսնելու, ի հայտ բերելու, շտկելու կարողությունը: Հացը հացթուխին տուր, մի հաց էլ՝ ավելի: Դարերի փորձն է ժողովրդին հանգեցրել այս համոզման. ուրեմն փոխ առնենք այդ փորձը:

Ժուռնալիստներն այն զինվորներն են, ովքեր մշտապես պետք է ջանան (եթե բանավորը դեռ հնարավոր չէ) մաքրել գոնե գրավոր լեզուն նման մոլախոտերից:

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

6. «Լենինյան ուղիով», № 7

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՐԱՇԽԻՔՆ Է

*Առօրյա գործով գտնվում էի հարստացուցիչ ֆաբրիկայի հանքաքարի մանրացման տեղամասում։ Աղացներից մեկը չէր բանում։ Նորոգող փականագործները փոխում էին պողպատյա երեսպատման զրահները, որոնք մաշվել էին։ Ի դեպ, դրանց ծառայության ժամկետը վեց ամիս է, որից հետո զրահները պարտադիր պետք է փոխվեն։ Այդ պահին փականագործների մոտ կանգնել էր կոմբինատի գլխավոր մեխանիկ, կոմունիստ Գ. Մարտիրոսյանը և մտորում էր։ Իմ հարցին, թե ինչի մասին է մտածում, նա պատասխանեց նույնպես հարցով.*

*— Իսկ ի՞նչ կլինի, եթե պողպատե զրահի սալիկները փոխարինվեն ուրիշ, ավելի դիմացկուն նյութից պատրաստված սալիկներով...*

*Նրան հասկացա. ինժեներ-մեխանիկի մտքում ինչ-որ նոր, խելացի առաջարկություն էր ծնվում։ Հետևյալ օրը նա ներկայացրեց սալիկները փոխելու իր սխեման։ Նա առաջարկում էր պողպատե սալիկները փոխարինել ռետինե սալիկներով, որոնք հայրենական լեռնարդյունաբերության մեջ փորձարկման են նախապատրաստված։ Այս դեպքում, նախնական հաշվումներով, դրանց ծառայության ժամկետը կավելանա երկու ամսով, և ձեռնարկությունը վեց ամսում կունենա 3.950 ռ. խնայողություն։*

*Գ. Մարտիրոսյանի առաջարկությունն արժանացավ ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպության ուշադրությանը և հավանություն ստացավ նրա կողմից։ Նույն հարցին անդրադարձավ նաև կոմբինատի կուսկոմիտեն և որոշեց պաշտպանել կոմունիստի նախաձեռնությունը։ Անցյալ տարի այդ առաջարկությունը փորձարկվեց մեկ աղացի վրա և տվեց հիանալի արդյունք։ Դրա միջոցով նախ՝ 20 տոննայով նվազեց աղացի մեռյալ քաշը, որը հնարավորություն ընձեռեց նույնքանով մեծացնելու դրա օգտակար բեռնատարողությունը, ապա՝ մեկ տոննա աղացված հանքաքարի ինքնարժեքը 5,7 կոպեկից իջավ 4,8 կոպեկի։ Հաշվի առնելով արված առաջարկության արդյունավետությունը՝ կուսկոմիտեն խորհուրդ տվեց ընթացիկ տարում ևս երկու աղացների զրահապատումը կատարել նույն նյութից։*

*Կոմունիստի նախաձեռնության նման օրինակը հարստացուցիչ ֆաբրիկայում եզակի չէ։ Անցյալ տարի, հերթական աղացի տեղադրման նախօրյակին, ծնվեցին բազմաթիվ խելացի առաջարկություններ, որոնք, կուսկազմակերպությունում ուշի-ուշով քննարկվելուց հետո, արժանի պաշտպանություն գտան։ Այդ նախաձեռնություններից մեկի հեղինակային կոլեկտիվը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի 1972 թ. օգոստոսին ընդունած «Արտադրական հրապարակների ռացիոնալ օգտագործման մասին» որոշմանը համապատասխան, առաջարկեց նոր աղացը տեղադրել գլխավոր մասնաշենքի ներսում, առանց նախագծով որոշված նոր կառույցների։ Դրա շնորհիվ անհրաժեշտություն չեղավ քանդել ֆաբրիկայի պատը, կատարել ավելորդ աշխատանք, որը կապված էր զգալի միջոցների ծախսման հետ։ Բացի այդ, նոր աղացի տեղադրումը հնարավորություն ընձեռեց մշակելու նաև համեմատաբար աղքատ հանքանյութ ունեցող հանքաքարը, որը չէր պլանավորված, ինչպես նաև փոխելու ֆաբրիկայի աղացների տեխնոլոգիական սխեման՝ 1,5 : 1-ի հարաբերությամբ։ Այս նախաձեռնության իրականացումը անցյալ տարի ձեռնարկությանը տվեց մոտ 190 հազար ռուբլու խնայողություն։*

*Բաց հանքում ծնվել են լավ նախաձեռնություններ, որոնք պաշտպանվել և հավանության են արժանացել լեռնային արտադրամասի սկզբնական կուսկազմակերպության կողմից։ Օրինակ՝ մի խումբ աշխատողներ առաջարկեցին լեռնային բաց արտադրապրոցեսներում օգտագործել ջրակայուն պայթուցիկ նյութեր ու ամենուրեք մեքենայացնել հորատանցքերի լիցքավորումը։ Առաջարկությունը փորձարկվեց 240 հազար խմ հանքաքարի պայթեցման վրա։ Արդյունքը գոհացուցիչ էր։ Միայն այդ պայթեցումից ստացվեց 5 հազար ռուբլու օգուտ։ Մինչև հնգամյակի վերջը հանքի բոլոր հորիզոնականներում կկիրառվի պայթեցման նշված մեթոդը, որը հնարավորություն կընձեռի՝ կրկնակի անգամ կրճատելու պայթեցման ծախսերը։*

*Ես թվարկեցի կոմունիստների ստեղծագործական նախաձեռնությունների, դրանց պաշտպանության ու արմատավորման միայն մի քանի օրինակներ։ Սակայն դրանք բազմաթիվ են կոմբինատի ինչպես լեռնային արտադրամասում և հարստացուցիչ ֆաբրիկայում, այնպես էլ օժանդակ տեղամասերում։*

*Կոմունիստների նախաձեռնություններն առանձնապես շատ են նոր տեխնիկայի արմատավորման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ասպարեզում։ Դրանց ներդրման շնորհիվ միայն անցյալ տարի տնտեսվել է շուրջ 313.400 ռուբլի։ Այժմ առաջ է տարվում հարստացուցիչ ֆաբրիկայի ընդլայնման ու վերակառուցման գործը։ Դրանք հնարավորություն կընձեռեն ավելի կատարելագործելու տեխնոլոգիական պրոցեսները, բարձրացնելու մետաղների կորզման տոկոսը։ Այդ աշխատանքները գլխավորում է ֆաբրիկայի պետ, կոմունիստ ինժեներ Ն. Շարիպովը։ Արտադրամասի սկզբնական կուսկազմակերպությունն այս կարևոր բնագավառում է գործուղել արտադրության հմուտ մասնագետներ, կոմունիստներ Վ. Կոստինին, Օ. Հովհաննիսյանին, երիտասարդ կոմունիստ, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ Է. Սարգսյանին և այլոց, որոնք ջանք չեն խնայում հնգամյակի երրորդ, վճռական տարին արտադրական բարձր ցուցանիշներով փակելու համար։*

*Ուշագրավ է հարստացուցիչ ֆաբրիկայի կոմունիստների կոլեկտիվ նախաձեռնությունը, որը ծնվեց կուսակցական ժողովում, «Արտադրության տեխնիկական առաջընթացի և վերազինման մասին» հարցի քննարկման ժամանակ։ Կուսակցական ժողովը որոշեց այսուհետև պղնձի խտանյութը երկաթգծի*

վագոններով պատվիրատուին ուղարկել միայն հատուկ ապրանքամաններով: Դրանով զգալիորեն կրճատվում են խտանյութի կորուստները՝ բաց վագոններով տեղափոխելու համեմատ և, որ գլխավորն է, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատում հումքի բեռնաթափումը մեքենայացվում է, եռակի անգամ կրճատվում վագոնների պարապուրդը բեռնաթափման ժամանակ:

Նորույթի ներդրումը հանձնարարվեց պղնձի խտանյութերի ֆիլտրացման արտադրամասի պետ, ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Հ. Պետրոսյանին: Բանն այն է, որ արտադրամասի խտանյութերի բեռնման հանգույցում պահանջվում է կատարել վերակառուցման բավականաչափ աշխատանքներ, որոնք, անհնար էր իրագործել առանց նախագծային կազմակերպությունների միջամտության: Իսկ մինչև նոր նախագիծ կազմելը և այդ հարցի տեխնիկական լուծումը Հ. Պետրոսյանը արտադրամասի մեխանիկական ծառայության բանվորների հետ միասին ժամանակավորապես մոնտաժեց վերամբարձ հարմարանքներ՝ բեռնարկղների (կոնտեյների) բեռնման համար:

Արդեն մեկ տարուց ավելի է, ինչ պղնձի խտանյութի ֆիլտրացման տեղամասում արտադրանքի բարձումը կատարվում է բեռնարկղներով: Ճիշտ է, այս միջոցառման իրականացմամբ կոմբինատը անմիջապես օգուտներ չի ստանում, ընդհակառակը, ավելանում են աշխատատար պրոցեսները, սակայն պատվիրատուն՝ Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը, զգալիորեն էժանացնում է բեռնաթափումը:

Պղնձի խտանյութի բեռնման ու բեռնաթափման այս առաջադեմ մեթոդը խրախուսելի է և օգտավետ: Կոմբինատի կուսկոմիտեն ու դիրեկցիան ջանում են ամեն ինչ անել՝ այն արտադրության մեջ արմատավորելու համար:

Կոմունիստների նախաձեռնությունների զարգացման գործում կարևոր նշանակություն ունի տեղամասերին, աշխատանքային մեծ ու փոքր կոլեկտիվներին տրված ինքնուրույնությունը: Նրանք ազատորեն քննարկում են այդ ասպարեզում ծագած հարցերը, ընդունում համապատասխան որոշումներ և իրենց առաջարկները ներկայացնում կուսկոմիտեին ու կոմբինատի ադմինիստրացիային: Արժեքավոր է Լենինի շքանշանակիր, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, կոմունիստ Օ. Ղազարյանի ղեկավարած էքսկավատորավարների բրիգադայի անդամների նախաձեռնությունը, որը վերաբերում է մեքենաների անխափան աշխատանքի ապահովմանը, խնայողության ռեժիմի կիրառմանը, արտադրողականության բարձրացմանը:

Բրիգադայի անդամների փորձն ուշի-ուշով ուսումնասիրվեց սկզբնական կուսկազմակերպության կողմից և արմատավորվեց բոլոր բրիգադաներում: Եվ ահա արդյունքը. շատ էքսկավատորավարներ ու ավտովարորդներ հասան բարձր ցուցանիշների և երկու ամսում կատարեցին վեց ամսվա առաջադրանք: Երիտասարդ կոմունիստ, էքսկավատորավար Բ. Անդրեասյանը հանդես է եկել հնգամյակը 4,5 տարում ավարտելու առաջարկությամբ, որին արձագանքել են նաև բաց հանքի հորատողների, հանքաքար տեղափոխող ավտովարորդների բրիգադաների անդամները:

Հասկանալի է, որ աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունները մեխանիկորեն կյանքի չեն կոչվում: Դրանք ծնվելուց հետո հեշտությամբ կարող են մարել, եթե անհրաժեշտ պաշտպանություն չգտնեն ադմինիստրացիայի և կուսկազմակերպության կողմից: Այդ պատճառով էլ մեծ



նշանակություն ունի աշխատողների, մասնավորապես առաջատար մասնագետների՝ ինժեներների ու տեխնիկների հետ տարվող կուսակցական-կազմակերպական աշխատանքը, նրանց նախաձեռնությունների խթանումը:

Կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները ամենօրյա ուշադրություն և հոգատարություն են ցուցաբերում կոմունիստների, բոլոր կադրերի նկատմամբ, զարգացնում նրանց ակտիվությունը, տեսական ու գործնական պատրաստականությունը, հետևում տեխնիկական ու տնտեսական գիտելիքների ուսուցմանը, զբաղվում նրանց արդյունավետ տեղաբաշխմամբ: Որպես կանոն ղեկավար աշխատանքի ենք առաջ քաշում բանիմաց, տեսական ու գործնական բարձր հատկանիշներով օժտված անձնավորությունների: Անհրաժեշտության դեպքերում, արտադրության շահերից ելնելով, կատարում ենք տեղափոխություններ: Արտադրության վճռական տեղամասերի ղեկավարումը վստահում ենք հմուտ ինժեներների ու տեխնիկների: Առանձնակի կարևորություն ենք տալիս երիտասարդ կադրերի ուժերի օգտագործմանը, նրանց վստահորեն առաջ ենք քաշում, զբաղվում նրանց դաստիարակությամբ: Կուսկազմակերպությունն այդպես է վարվել, օրինակ, կոմունիստ ինժեներ Ռ. Ստեփանյանի հետ, որը նախկինում ղեկավարում էր ջրատար թունելի շինարարության տեղամասը: Այդտեղ նա իրեն դրսևորեց դրական հատկանիշներով, հանդես բերեց կազմակերպական ունակություններ: Հաշվի առնելով այդ ամենը՝ կուսկազմակերպությունը նրան երաշխավորեց լեռնային արտադրամասի գլխավոր ինժեների պաշտոնում:

Դրական հատկանիշներով օժտված ու առաջ քաշված այդպիսի կադրեր մեզ մոտ շատ կան: Կուսկոմիտեի և կոմբինատի դիրեկցիայի վստահությունը լիովին արդարացնում են նաև կոմունիստներ, լեռնային արտադրամասի պետ Լ. Համբարձումյանը, հարստացուցիչ ֆաբրիկայի գլխավոր ինժեներ Ն. Հայրապետյանը, կոմբինատի գլխավոր էներգետիկ Ե. Արսենյանը և ուրիշներ:

Հաջողության գլխավոր պայմաններից մեկը արտադրության մարդկանց որակավորման բարձրացումն է: Կուսկազմակերպությունը հոգում է նրանց տեխնիկական ուսուցման կազմակերպման մասին: Չէ՞ որ լավ նախաձեռնությունների հեղինակ կարող են լինել նրանք, ովքեր տեխնիկապես գրագետ են, տիրապետում են իրենց մասնագիտությանը: Կուսկազմակերպության օգնությամբ նրանցից մոտ 80-ը հեռակա կարգով սովորում է բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում:

Բանվորների որակավորմանը մեծ չափով նպաստում են նաև նպատակային այցելությունները և էքսկուրսիաները երկրի գունավոր մետալուրգիայի առաջավոր ձեռնարկությունները: Նրանք այնտեղ ուսումնասիրում են առաջավոր փորձը և, կոմբինատի աշխատանքի գիտական կազմակերպման բաժնի, ադմինիստրացիայի ու կուսկազմակերպության աջակցությամբ, այն արմատավորում մեր արտադրության մեջ: Նման էքսկուրսիաներ են կազմակերպել ինչպես մեր հանրապետության, այնպես էլ Ուրալի և Միջին Ասիայի հանքարդյունաբերական ձեռնարկությունները: Այդ այց-էքսկուրսիաներին մասնակցել են տասնյակ բանվորներ, ինժեներներ ու տեխնիկներ:

Կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը մեծապես նպաստում է նաև տեխնիկական գիտելիքների համալսարանը, որտեղ դասախոսում են տեխնիկական գիտությունների թեկնածուներ, կոմբինատի դիրեկտոր Յու. Սուքիասյանը, գլխավոր ինժեներ Ա. Սողոմոնյանը, արտադրա-

տեխնիկական բաժնի պետ Ն. Սարգսյանը և առաջատար այլ մասնագետներ։
Այդ դասախոսությունների ընթացքում ունկնդիրները հաղորդակից են դառնում
գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներին, ձեռք բերում տնտեսա-
կան ու տեխնիկական գիտելիքներ, արտադրության վարման հմտություն,
որոնք խթանում են նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, դառնում
արտադրական հաջողությունների նախապայման։

Կուսկոմիտեն և տնտեսական ղեկավարությունը իրենց գործունեության
հիմնական նպատակը համարում են կոլեկտիվի անդամների նախաձեռնու-
թյան անընդհատ զարգացումը։ Իսկ դրա համար պահանջվում են տևական
բազմակողմանի ջանքեր։ Դեռևս կան բազմաթիվ չլուծված հանգուցային հար-
ցեր, որոնց իրականացումը նոր հաջողությունների երաշխիք կարող է լինել։
Հենց վերջերս տեղի ունեցած կուսակցական ընդհանուր ժողովում անդրադար-
ձանք դրանցից, ես կասեի, գլխավորին։ Դա հարստացուցիչ ֆաբրիկայում
տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, նոր տեխնիկայի ռացիոնալ
օգտագործման խնդիրն էր, որի լուծմամբ նշանակալիորեն կբարձրանա հան-
քաքարից մետաղների կորզման տոկոսը։

Մեր կոմբինատը հանրապետության գունավոր մետալուրգիայի արդյու-
նաբերության ձեռնարկություններից ամենաերիտասարդն է։ Այն մոտ տասը
տարեկան է, սակայն այդ կարճ ժամանակամիջոցում, արտադրության մարդ-
կանց հայրենանվեր գործունեության շնորհիվ, լայն ճանաչում է գտել ոչ միայն
Հայաստանում, այլև ամբողջ Միության մեջ։ Պղնձի ու մոլիբդենի խտանյու-
թերի արտադրության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների համար
կոմբինատի կոլեկտիվը պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքա-
նշանով, վերջին երկու տարում հինգ անգամ անընդմեջ նվաճել գունավոր մե-
տալուրգիայի մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխան-
ցիկ կարմիր դրոշն ու դրամական առաջին կարգի մրցանակը, արտադրական
ռեզերվների օգտագործման և խնայողության ռեժիմի ճիշտ կիրառման համար՝
երեք անգամ պարգևատրվել նույն մինիստրության դիպլոմով։ Անցյալ տարի,
ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին ստանձնած սոցիալիստական պար-
տավորությունները անթերի կատարելու համար, ձեռնարկությունն արժանա-
ցավ ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկո-
մի Հոբելյանական պատվոգրին։ Կոմբինատի ավելի քան 150 աշխատավորներ
պարգևատրվել են Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի, «Պատվո նշան»
շքանշաններով ու մեդալներով։

Կոմունիստների նախաձեռնությունների զարգացումը մեծ ջանքեր է պա-
հանջում կուսկոմիտեից և սկզբնական կուսկազմակերպություններից։ Դա հա-
ջողության երաշխիք է։ Ահա թե ինչու մենք օգտագործում ենք բազմազան
ձևեր՝ խթանելու համար ստեղծագործական այդ նախաձեռնությունները, դրանք
ուղղելով ՍՄԿԿ XXIV համագումարի, Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որո-
շումների և հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքների կատարմանը։

**Վ. Թ. ՍԱՐԳՍՅԱՆ**

Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմ-
բինատի կուսկոմիտեի քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՀԱՐՑԵՐ

Աշխատանքային ռեզերվների՝ հասարակության արտադրաուժերի գլխա-
վոր տարրի, պլանավորումը, բաշխումը և արդյունավետ օգտագործումը կո-
մունիստական շինարարության տնտեսական ու սոցիալ-քաղաքական կարևոր
խնդիրներից են։ Դրանց դրական լուծումը հնարավորություն է ընձեռում ապա-
հովելու հասարակական աշխատանքի արտադրողականության, արտադրու-
թյան արդյունավետության անշեղ աճը և ամբողջ արտադրաուժերի հետագա
արագ զարգացումը։

Աշխատանքային ռեզերվների կազմավորման, բաշխման և օգտագործման
պրոբլեմում անհրաժեշտ է առանձնակի տեղ հատկացնել երիտասարդությանը։
Երիտասարդությունը հասարակության միագումար աշխատուժի լրացման և
նրա աճի բնական աղբյուրն ու աշխատուժի ընդլայնված վերարտադրության
անհրաժեշտ պայմանն է։

Հասարակության զարգացման արդի էտապում երիտասարդության դերը
բարձրանում է ո՛չ միայն նրանով, որ աշխատունակ բնակչության 30 տոկոսն
է կազմում և տարեցտարի ավելանում է նրանց բացարձակ թիվը, այլև աչքի է
ընկնում կրթական մակարդակով, նորի ընկալմամբ և կիրառմամբ։

Հանրային տնտեսության ոլորտում երիտասարդության ընդգրկումը սո-
ցիալ-տնտեսական բարդ պրոցես է, որը պայմանավորված է դաստիարակու-
թյան, ընդհանուր և մասնագիտական կրթության, մասնագիտության ընտրու-
թյան ու ճիշտ կողմնորոշման, ինչպես նաև աշխատանքի տեղավորման գործի
դրվածքով։ Այս հարցերը լուծելիս անհրաժեշտ է հաշվի առնել հասարակու-
թյան արտադրաուժերի զարգացման մակարդակն ու հեռանկարները, ինչպես
նաև կոմունիստական հասարակարգ կառուցողների բազմակողմանի զարգաց-
ման համար անհրաժեշտ պայմանների ստեղծումը։

Երիտասարդության աշխատանքային ռեզերվների կազմավորման, հան-
րային տնտեսության մեջ ներգրավման պրոբլեմի ուսումնասիրումը պահան-
ջում է կոմպլեքսային մոտեցում՝ հոգեբանական, մանկավարժական, առող-
ջապահական, իրավունքի, էկոնոմիկայի և այլ գիտությունների տեսանկյունից։
Պարզ է, որ մի հոդվածում հնարավոր չէ շատ թե քիչ սպառիչ պատասխան
տալ սույն պրոբլեմի բոլոր հարցերին։ Այդ իսկ պատճառով մենք կանդրադառ-
նանք դրանցից մի քանիսին։

Նախ՝ պետք է պարզել մի կարևոր հարց. ի՞նչ է երիտասարդություն հասկացությունը, բնակչության ո՞ր մասն է երիտասարդ և ո՞ր տարիքից է այն համարվում աշխատանքային ռեզերվների մեջ։ Այս հարցի պարզաբանումն ունի սկզբունքային նշանակություն։

Մասնագետների մի մասը երիտասարդության խմբին է դասում 14—25, մյուսը՝ 16—30 տարեկաններին։ Պլանավորման և վիճակագրության պրակտիկայում երիտասարդությունը, որպես որոշակի հասակային խումբ, չի առանձնացվում։ ՀԼԿԵՄ կանոնադրության համաձայն երիտասարդների շարքին են պատկանում 15—27 տարեկանները։ Բժշկությունն այդ հասակի մեջ է մտցնում մինչև 25 տարեկանը ներառյալ։ Սովետական օրենսդրությամբ հասունության հասակ է սահմանված 16 տարեկանը, այդ տարիքի քաղաքացիներին տրվում է անձնագիր։ Միաժամանակ ընտրական իրավունք ունեն 18-ամյա քաղաքացիները. ամուսնության տարիքը սահմանված է 18-ը, զինվորական ծառայության զորակոչման ստորին սահմանը նույնպես 18 է և այլն։

Ինչպես տեսնում ենք, երիտասարդության տարիքային սահմանների նկատմամբ տարբեր չափանիշներ գոյություն ունեն։ Գիտության տարբեր ներկայացուցիչներ տվյալ հարցին մոտենում են իրենց տեսանկյունից։ Ընդհանրապես մարդու կյանքը ներառնում է կենսաբանական, ֆիզիոլոգիական, հոգեբանական և սոցիալական զարգացման բարդ տարրերը, որոնք ոչ միշտ և ոչ լրիվ են համընկնում։ Որպես կանոն, մարդու ֆիզիոլոգիական հասունությունն ավելի շուտ է տեղի ունենում, քան հոգեբանականը, առավել ևս սոցիալականը։ Յուրաքանչյուր հասակին հատուկ են ֆիզիոլոգիական և սոցիալ-հոգեբանական առանձնահատկությունները։

Երիտասարդության տարիքային սահմանների ո՛րոշումը ժողովրդական տնտեսության պլանավորման տեսակետից ունի կարևոր նշանակություն։ Անհրաժեշտ է, որ պլանավորող օրգաններն աշխատանքային ռեզերվների պլանավորման ժամանակ նրանց ընդհանուր թվից առանձնացնեն երիտասարդությանը։ Այդ նպատակով պետք է կազմվեն նրանց աշխատանքային ռեզերվների փաստացի և պլանային հաշվեկշիռներ՝ ըստ սեռի և տարիքի ինչպես Միության, այնպես էլ հանրապետությունների առումով։ Դա զգալիորեն կնպաստի աշխատանքային ռեզերվների լրիվ և արդյունավետ օգտագործմանը, հնարավորություն կընձեռի մշտական հսկողության տակ պահելու երիտասարդության աշխատանքային ռեզերվների կազմավորման ընթացքը։

Երիտասարդ ասելով հասկանում ենք բնակչության այն մասը, որը տվյալ ժամանակաշրջանում 18—25 տարեկան է։ Մեր կարծիքով, սրանք այն տարիներն են, որ երիտասարդները, որպես ինքնուրույն անձ, պետք է լիիրավ մասնակցեն հասարակական կյանքին, հիմնականում զբաղված լինեն կամ հասարակական աշխատանքում, կամ էլ պետք է զբաղվեն համապատասխան մասնագիտություն ստանալու գործունեությամբ։ Այս տարիքում է, որ երիտասարդները նաև հիմնականում պետք է կազմեն ընտանիք և մասնակցեն հասարակության աշխատուժի վերարտադրությանը։ Այլ կերպ ասած, նրանք այդ ժամանակ յուրացնում են հասունացած մարդու սոցիալական բոլոր ֆունկցիաները և պատրաստ են այն լիովին կիրառելու հասարակական գործունեության ոլորտում։

Քանի որ երիտասարդությունը, իրավամբ, աշխատանքային ռեզերվների բնական աղբյուրն է, ապա կարևոր և սկզբունքային նշանակություն ունի նաև



պարզել, թե՞ որ տարիքն է համարվում աշխատանքային հասակի ստորին սահման։ Այս հարցի կապակցությամբ մասնագետները նույնպես տարակարծիք են։

Տվյալ հանգամանքի պարզաբանումը կարևոր նշանակություն ունի հատպես աշխատանքային ռեզերվների կազմավորման, բաշխման և օգտագործման տեսակետից։ Ժողովրդական տնտեսության զարգացման համամասնություններն ու տեմպերը զգալի չափով կախված են այն բանից, թե աշխատանքային ինչպիսի ռեզերվներ ունի հասարակությունը և որքանով են դրանք լրիվ ու նպատակահարմար օգտագործվում։ Այս առումով սոցիալիզմի օրոք երկրի աշխատանքային ռեզերվների սահմանումը ժողովրդական տնտեսության պլանավորման ելակետն է և հեռանկարում դրանց արդյունավետ օգտագործումը մեծապես պայմանավորված է աշխատունակ բնակչության թվի ճիշտ կանխատեսմամբ՝ աշխատանքային հասակի ընդունված սահմաններով։ Այստեղ նկատի չունենք աշխատանքային հասակի այն անձանց, որոնք զբաղված են հանրային տնտեսությունում և, համաձայն գոյություն ունեցող կարգի, հաշվվում են աշխատանքային ռեզերվների ընդհանուր թվի մեջ։

Աշխատանքային տարիքի ստորին սահմանի որոշման ժամանակ, ընդհանուր առմամբ, նկատի են առնվում մարդու ֆիզիկական զարգացումն ու կրթության այն մակարդակը, որն անհրաժեշտ է նրան աշխատանքային գործունեությունն սկսելու համար։ Սակայն այդ հասակի ձևավորման սահմանները տարբեր հասարակական սիստեմներում միանգամայն տարբեր են, որոնք պայմանավորված են սոցիալ-տնտեսական այնպիսի գործոններով, ինչպիսիք են՝ արտադրաուժերի զարգացման, նյութական բարեկեցության, երկրի տնտեսական զարգացման մակարդակը, աշխատողների տեխնիկական առաջընթացով պայմանավորված հանրակրթական ուսուցման, սոցիալական ապահովության սիստեմը և այլն։ Նշված գործոնների միագումարը վճռական դեր է կատարում հասարակության աշխատուժի ձևավորման գործում, նեղացնելով կամ լայնացնելով աշխատանքային ռեսուրսների շրջանակները։ Դրանից ելնելով, ներկայումս տարբեր երկրներում աշխատանքային տարիքի տարբեր սահմաններ գոյություն ունեն։ Կապիտալիստական երկրներում, ուր աշխատուժի պահանջարկն ու առաջարկը տեղի են ունենում տարերայնորեն և լայնորեն կիրառվում է անչափահասների աշխատանքը, այդ հասակի ստորին սահման է ընդունված 14—15 տարիքը (Ֆրանսիայում, ԳՖՀ-ում, Կանադայում, Ճապոնիայում, Հնդկաստանում, Ցեյլոնում, Պակիստանում և այլուր)։

Աշխատանքային հասակի սահմանները կայուն չեն նույնիսկ միևնույն հասարակական սիստեմի պայմաններում։ ԱՄՆ-ում, օրինակ, մինչև 1940 թ. աշխատանքային տարիքի ստորին սահմանն էր 10, այնուհետև՝ 14, իսկ 1967 թ.՝ 16։ Սակայն այստեղ դեռ լայն չափով է կիրառվում 14—15 տարեկանների աշխատանքը։ Յուրաքանչյուր չորրորդ 14—17 տարեկան պատանին կամ աղջիկը զբաղված է ժողովրդական տնտեսության մեջ։

Հայտնի է, որ մեր երկրում առաջին հնգամյակի տարիներին, երբ համեմատաբար ցածր աստիճանի վրա էր գտնվում էկոնոմիկայի զարգացման մակարդակը և պայմաններ չկային ընդհանուր յոթնամյա կրթության համար, որպես աշխատանքային տարիքի ստորին սահման ընդունված էր 14, իսկ երկրորդ հնգամյակի վերջերից՝ 16 տարին, որը պայմանավորված էր արդեն ժողովրդական կրթության և երկրի էկոնոմիկայի զարգացման աստիճանով։ Երևա-

նական թվականներից մինչև այժմ այդ սահմանը չի փոխվել։ Մինչդեռ, մեր կարծիքով, այժմ դրա կարիքն զգացվում է, և երկրում առկա են սոցիալ-տնտեսական այնպիսի պայմաններ, որոնք հնարավորություն են ընձեռում վերանայելու աշխատանքային տարիքի ստորին սահմանը՝ բարձրացման իմաստով։ Դա հատկապես անհրաժեշտ է պլանավորման համար, քանի որ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն, ամբողջ երկրում ընթացիկ հնգամյակում պետք է ավարտվի ընդհանուր միջնակարգ ուսումնառությունը, որի դեպքում պատանիներն ու աղջիկները մինչև 17 տարին ներառյալ հիմնականում ստանալու են միջնակարգ կրթություն։

Կուսակցության այդ կուրսն իր կոնկրետ արտացոլումը գտավ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1972 թ. հունիսին ընդունած «Երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության անցումն ավարտելու և հանրակրթական դպրոցի հետագա զարգացման մասին» որոշման մեջ։ Ըստ որի, ելնելով երկրի տնտեսության, գիտության ու կուլտուրայի բնագավառում տեղի ունեցած առաջընթացի պահանջներից, ավելի պետք է բարելավվի մատաղ սերնդի ուսուցման և դաստիարակության գործը։ Ժամանակակից պայմաններում ժողովրդական տնտեսության բնագավառում տեղի ունեցող գիտատեխնիկական առաջընթացը, կոմունիստական շինարարության նոր խնդիրները աշխատողներին պարտադրում են ընդհանուր կրթության առավել բարձր մակարդակ։

ՍՍՀՄ-ում 1967 թ. մինչև 18 տարեկան աշխատող անձանց տեսակարար կշիռը կազմել է բանվորների ու ծառայողների ընդհանուր թվի ընդամենը 2,9-ը (տե՛ս Женщины и дети в СССР, М., 1969, стр. 158), իսկ մեր հանրապետությունում՝ 2,5 տոկոս։ Նկատենք, որ հաշվառումը կատարվել է հուլիսի 1-ին, այսինքն՝ դպրոցական արձակուրդների ընթացքում, երբ աշակերտների մի մասը ժամանակավոր աշխատում է։ Հետևաբար, սույն ցուցանիշը, միջին տարեկան հաշվարկներով, ավելի ցածր է։ Ի դեպ, այն ունի անկման տենդենց, որն ավելի կուժեղանա մոտ ապագայում։

Հարց է ծագում, արդյոք միտք ունի՞, որ աշխատանքային հասակի ստորին սահմանը տվյալ պայմաններում թողնվի անփոփոխ և 16—17 տարեկանները ձևականորեն մտցվեն աշխատանքային ռեսուրսների ընդհանուր թվում։ Մեր կարծիքով, ո՛չ։ Միևնույնն է դրանով ժողովրդական տնտեսության մեջ ընդգրկվող երիտասարդների կամ աշխատանքային ռեսուրսների փաստացի թիվը չի փոխվի, քանի որ նրանք պետք է գտնվեն ուսման պրոցեսում։ Անհրաժեշտ է նշել նաև, որ մինչև 18 տարեկան դեռահասների աշխատանքի նկատմամբ գոյություն ունեն մի շարք սահմանափակումներ։ Այդ պատճառով նրանք դեռևս չեն համարվում լիիրավ աշխատողներ։ Նրանց աշխատանքային օրը կարճատև է, իսկ արձակուրդը երկարատև, այն կազմում է 30 օր և տրվում է միայն ամառային ամիսներին, անկախ նրանից աշխատել են նրանք 11 ամիս, թե՞ ոչ։ Նրանց արգելվում է աշխատել արտաժամյա, գիշերային հերթափոխերում, հանգստի և տոն օրերին, հանքահորերում, ծանր, վտանգավոր պայմաններում և այլն։ Ուստի, մեր կարծիքով, աշխատանքային տարիքի ստորին սահմանը պետք է ընդունվի 18-ը։ Սակայն դա չի նշանակում, որ մինչև 18 տարեկան պատանիներն ու աղջիկները պետք է մնան պլանավորումից կամ հաշվառումից դուրս։ Բոլորովին բացառված չէ, որ նրանց որոշ մասը տարբեր պատճառներով կարող է զուգակցել հանրային աշխատանքն ուսման հետ։ Պլանավոր-



ման ժամանակ նրանց մասնակցությունը հասարակական աշխատանքին կարելի է հաշվի առնել այնպես, ինչպես դա արվում է այժմ մինչև 16 տարեկան դեռահասներինը, այսինքն՝ ելնելով հասարակական աշխատանքներին նրանց փաստացի մասնակցության դինամիկայից։

1968 թ. մեր առաջարկած այս տեսակետը հավանության է արժանացել մի շարք տնտեսագետների կողմից։ Միաժամանակ կան առանձին տնտեսագետներ, որոնք, չնայած սկզբունքորեն չեն առարկում հարցադրմանը, սակայն հանդես են գալիս աշխատանքային տարիքի գործող ստորին սահմանն անփոփոխ թողնելու օգտին, որին համաձայն չենք։

Վերջին տեսակետը պաշտպանող մասնագետները, որպես հիմնական փաստարկ, նշում են, որ այժմ երեխաները ֆիզիոլոգիապես զարգանում են ավելի վաղ, քան մեկ դար առաջ։ Այժմ տեղի է ունենում հասունություն, այսպես կոչված, ակսելերացիա (արագացում)։ Այստեղից այն հետևությունն է արվում, որ երեխաների ուսուցումը դպրոցում կարելի է սկսել 6-ից և ավարտել 16 տարիքում։

Այս առումով անհրաժեշտ է նկատել, որ բոլորովին վերջերս հրատարակված ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների ժողովրդական կրթության օրենսդրության հիմունքների նախագիծը, որն ուղղված է մեր երկրում կրթության հետագա զարգացման խնդիրների լուծմանը, այդ տեսակետի օգտին չի խոսում։

Նախ նշենք, որ այդ Հիմունքների համաձայն, նախապատրաստական դասարաններ, որտեղ սովորելու են 6 տարեկան երեխաները, կազմակերպվելու են միայն անհրաժեշտ դեպքերում՝ ոչ մայրենի լեզվով սովորող և մանկական նախադպրոցական հիմնարկություններ չհաճախած երեխաներին դպրոցական ուսուցմանը նախապատրաստելու նպատակով (տե՛ս Հիմունքների 20-րդ հոդվածը)։ Ընդսմին, այս դեպքում ուսման տևողությունը լինելու է ո՛չ թե 10, այլ 11 տարի։ Այնպես որ բոլոր դեպքերում երեխաները միջնակարգն ավարտելու են 17 տարեկան հասակում։ Ավելին, բացառված չէ, որ ապագայում միջնակարգ ուսուցման տևողությունը ո՛չ թե կպակասի, այլ, ընդհակառակը, կավելանա (այժմ մի շարք կապիտալիստական երկրներում միջնակարգ կրթության տևողությունը 12—13 տարի է)։ Դա օրինաչափ երևույթ է և բխում է գիտատեխնիկական հեղափոխության շահերից։

Անհրաժեշտ է նշել, որ եթե մեր դարում մարդու կենսաբանական հասունացումն արագանում է, ապա սոցիալ-տնտեսականը հետաձգվում է։ Դա տեղի է ունենում այն պատճառով, որ ներկայումս արտադրությունը և դրա հիման վրա խարսխվող հասարակական կյանքը պահանջում են մարդու «որակի» սրընթաց բարձրացում։ Պատմության գիրկն են անցել այն ժամանակները, երբ դեռահասները հարկադրաբար դառնում էին աշխատող։ Այժմ արտադրության մտողը պետք է լինի ֆիզիկապես և մտավոր զարգացած մարդ։ Միայն վերջին 60—70 տարվա ընթացքում անհամեմատ փոխվել է կենսաձևը, ավելացել է մեկ մարդու նյարդային համակարգի միջին ծանրաբեռնվածությունը։ Գիտատեխնիկական առաջընթացն արագացնում է գիտելիքների վերարտադրությունը և ապահովում դրանց առավել արդյունավետությունը։ Նկատի ունենալով, որ սերունդների միջև եղած տարբերությունը կազմում է 20—30 տարի և գիտելիքների ծավալի կրկնապատկումը տեղի է ունենում 40—50 տարվա ընթացքում, ապա յուրաքանչյուր հաջորդ սերունդ պետք է ստանա

մոտ մեկուկես անգամ ավելի գիտելիք, քան նախորդը: Ներկայումս մարդու
հասունացումն ավելի երկարատև և մի քանի անգամ ավելի աշխատատար է,
քան անցյալում, երբ նա որոշ ֆիզիկական ուժի, գիտակցության և ճարպկու-
թյան առկայության դեպքում կարող էր աշխատել և համարվել աշխատող:
Գիտատեխնիկական առաջընթացն աշխատողից պահանջում է կրթական և
կուլտուրական բարձր մակարդակ: Վերջինն արտադրաուժերի զարգացման
արդի էտապի առանձնահատուկ գործոնն է: Այսպիսով, մարդու կենսաբանա-
կան զարգացման նկատվող ակսելերացիան հիմք չպետք է ծառայի՝ կայունաց-
նելու աշխատանքային տարիքի ստորին սահմանը:

Այժմ ինչպես աշխատանքն է մարդուն ներկայացնում մեծ պահանջներ,
այնպես էլ վերջինը նրան: Սակայն միշտ չէ, որ այդ փոխադարձ օրինաչափ
պահանջները զարգանում են ներդաշնակ: Այդ պատճառով երբեմն հակասու-
թյուն է առաջանում աշխատանքի առաջարկի և պահանջարկի միջև: Այստեղ
երբեմն բախվում են անհատի և հասարակության շահերն այն տեսակետից,
որ դեռևս գոյություն ունեն ոչ որակյալ, ծանր կամ անհրապույր ձեռքի աշխա-
տանքներ, որոնք արտադրաուժերի զարգացման տվյալ փուլում անհրաժեշտ են
հասարակությանը, սակայն դրանց կատարման համար անհատը երբեմն շա-
հագրգռված չէ: Ի դեպ, երբ աշխատավորների կուլտուր-տեխնիկական մա-
կարդակը բարձրանում է զգալիորեն ավելի արագ, քան արտադրության և աշ-
խատանքի կազմակերպման կատարելագործման տեմպերը, ապա ավելի է խո-
րանում նշված հակասությունը: Դա տեղի է ունենում այն պատճառով, որ հա-
մեմատաբար բարձր պատրաստականություն ունեցող երիտասարդությանն
այլևս չի բավարարում թույլ մեքենայացված, անորակ և վատ կազմակերպված
աշխատանքը: Նա ձգտում է աշխատել այն ձեռնարկություններում, որոնք հա-
գեցված են նորագույն տեխնիկայով, որտեղ մեքենայացված են ծանր արտա-
դրապրոցեսները, կիրառվում է կատարելագործված տեխնոլոգիա, բարենպաստ
են աշխատանքի պայմանները և համեմատաբար բարձր է վարձատրությունը:
Այդ է հիմնական պատճառը, որ երբեմն աշխատանքային ռեզերվների առկա-
յության պայմաններում առանձին ձեռնարկություններ աշխատուժի պակաս
են զգում:

Հետաքրքրական է հանրապետության հանրային տնտեսության մեջ երի-
տասարդության զբաղվածության վիճակը: Այստեղ զբաղվածների մոտ 80 տո-
կոսն ընդգրկված է նյութական արտադրության և միայն 18 տոկոսը՝ ոչ արտա-
դրական ոլորտում: Տարիքը մեծանալու հետ միասին փոխվում է նաև այդ հա-
մամասնությունը: Օրինակ, եթե 18—20 տարեկանների մոտ 86 տոկոսն զբաղ-
ված է նյութական արտադրության և 14-ը ոչ արտադրական ճյուղերում, ապա
21—24 տարեկանները, համապատասխանաբար՝ 74 և 26 տոկոս: Մինչև 25
տարեկանները 1967 թ. կազմել են ժողովրդական տնտեսության մեջ զբաղված
բանվոր-ծառայողների 15,5 տոկոսը, այդ թվում արդյունաբերությունում՝ 20,2,
շինարարությունում՝ 17,2, սովխոզներում՝ 16,7, տրանսպորտում՝ 10,3, առև-
տրում և հասարակական սննդի հիմնարկություններում՝ 9,5, առողջապահու-
թյան բնագավառում՝ 7,8, լուսավորության մեջ՝ 10,4 տոկոս և այլն (տե՛ս
Труд в Армянской ССР, 1970, стр. 121):

Ժողովրդական տնտեսության ճյուղերում երիտասարդության աշխատան-
քային ռեզերվների անհամաչափ բաշխումը հիմնականում բացատրվում է
նրանով, որ սպասարկման ոլորտի որոշ ճյուղեր աշխատանքի կազմակերպ-



ման մակարդակով, բնույթով և առանձնահատկությամբ չեն հրապուրում երի-
տասարդությանը, իսկ որոշ ճյուղերում (ժողովրդական կրթություն, առողջա-
պահություն, կուլտուրա, գիտություն և այլն) աշխատելու համար պահանջ-
վում է համապատասխան կրթություն:

Միաժամանակ բնակչության սպասարկման ոլորտը զարգանում է ավելի
արագ տեմպերով և լրացուցիչ աշխատուժի մեծ պահանջ է հարուցում: Դա
ժողովրդական տնտեսության այն ճյուղն է, որտեղ բանվորական տեղի ստեղծ-
ման համար պահանջվում են համեմատաբար քիչ կապիտալ ներդրումներ և
ժամանակ: Բացի այդ, այստեղ զարգացման ինտենսիվ գործոնների դերը հա-
մեմատաբար ավելի փոքր է, քան նյութական ոլորտում: Այլ կերպ ասած, սպա-
սարկման ոլորտի զարգացումը հիմնականում տեղի է ունենում աշխատողների
թվի ավելացման հաշվին: Որպեսզի այն ժամանակին ապահովվի աշխատուժով,
անհրաժեշտ է ամեն կերպ բարձրացնել այս ոլորտի աշխատանքի հասարակա-
կան հեղինակությունը, աշխատողների նյութական շահագրգռվածությունը, այն
դարձնել գրավիչ, ընդլայնել և բարելավել կադրերի պատրաստման ցանցը:
Այս բոլորը կնպաստեն երիտասարդության հոսքին դեպի սպասարկման ոլոր-
տի ճյուղերը, որոնց հետագա առավել արագ զարգացման խնդիրն իր արտա-
ցոլումը գտավ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում:

Նյութական արտադրության ոլորտում երիտասարդության աշխատանքա-
յին ռեսուրսները նույնպես անհամաչափ են բաշխված: Դրանց մոտ 46 տոկոսն
զբաղված է արդյունաբերության, 14-ը՝ շինարարության, 11,5 տոկոսը՝ գյու-
ղատնտեսության մեջ և այլն: Նվազ է նրանց տեսակարար կշիռը տրանսպոր-
տում և կապի ձեռնարկություններում: Արդյունաբերական ձեռնարկություննե-
րում երիտասարդության հիմնական մասն զբաղված է մեքենաշինության,
հատկապես առավել առաջավոր ենթաճյուղերում (էլեկտրամեքենաշինություն,
սարքաշինություն, ռադիոէլեկտրոնիկա, գործիքաշինություն) և այլն: Այստեղ
աշխատանքն ավելի լավ է կազմակերպված, ունի ստեղծագործական բնույթ,
և, որ կարևոր է, այդ ճյուղերում համեմատաբար բարձր են նյութական շահա-
գրգռվածությունն ու կուլտուր-կենցաղային սպասարկման մակարդակը: Այդ
պատճառով էլ երիտասարդությունը ձգտում է աշխատելու նշված ճյուղերում:

Քանի որ սոցիալիստական հասարակարգը շահագրգռված է աշխատան-
քային ռեզերվների արդյունավետ օգտագործմամբ, ապա նա պլանաչափ ու
հետևողականորեն մշակում և կիրառում է այնպիսի միջոցառումներ, որոնք
նպաստում են նշված հակասության ժամանակին վերացմանը, աշխատանքի
առաջարկի և պահանջարկի ներդաշնակ զարգացմանը: Այս տեսակետից հատ-
կապես կարևոր նշանակություն ունի կուսակցության XXIV համագումարի
կանխագծումների իրականացումը, որոնք նպաստում են ծանր, վտանգավոր և
անհրապույր աշխատանքների մեքենայացման պրոցեսի արագացմանը, ամեն-
ուրեք աշխատանքի պայմանների լավացմանը, արտադրական և աշխատան-
քային կուլտուրայի բարձրացմանը, վարձատրման կատարելագործմանը: Բացի
այդ, կուսակցությունը և սովետական կառավարությունը հոգում են, որպեսզի
աշխատանքային հասակի երիտասարդությունը ժամանակին և ճիշտ ընտրի
մասնագիտությունը, ստանա անհրաժեշտ գիտելիքներ, ձեռք բերի աշխատան-
քային փորձ և հմտություն, ապահովված լինի համապատասխան քանակու-
թյամբ աշխատանքային տեղերով: Միաժամանակ կուսակցությունը և կառա-
վարությունը ելնում են այն բանից, որ արտադրության մեջ նորանոր մեքենա-

ների ու սարքավորումների կիրառումը, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը և առավել կատարելագործված տեխնիկայի արդյունավետ օգտագործումն անհնարին են առանց աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի զգալի բարձրացման։

Կուսակցությունը առաջին պլանի վրա մղելով երիտասարդ սերնդի բազմակողմանի դաստիարակության հարցը, ելնում է նաև այն բանից, որ «Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը, անկարելի է առաջ շարժել առանց իր՝ մարդու բազմակողմանի զարգացման։ Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմն անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապատասխան բազայի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110)։

Վ. Ա. ԿՈՒՐԵՂՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Ներկայումս հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը դարձել է սոցիալիստական տնտեսության զարգացման հրատապ խնդիրներից մեկը։ Եվ, պատահական չէ, որ ՍՄԿԿ և սովետական կառավարությունը այն համարում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ինչպես նաև հասարակության անդամների նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարման կարևոր պայմանը։ Մեծ նշանակություն տալով հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում կուսակցության Կենտկոմի հաշվետվությունում ասաց. «...պրոբլեմի էությունն այն է, որ աշխատանքային նյութական և ֆինանսական ծախսումների յուրաքանչյուր միավորի հաշվով էապես մեծացվի արտադրության և ազգային եկամտի ծավալը։ Դա էլ, վերջին հաշվով, հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացումն է» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 72—73)։

Դրա կարևոր գործոններից է աշխատանքային կարգապահության ամրապնդումը, որն այժմ դարձել է արտադրության կազմակերպման կարևոր պրոբլեմներից մեկը։ Պլանավորման և տնտեսական խթանման ներկա պայմաններում կարևոր է յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվության բարձրացումն ինչպես իր աշխատանքի, այնպես էլ ողջ արտադրական կոլեկտիվի նկատմամբ։ Միայն այդ դեպքում է հնարավոր ապահովել ձեռնարկության առջև դրված խնդիրների անթերի կատարումը։

Աշխատանքային կարգապահության ամրապնդումը ո՛չ միայն բարձրացնում է արտադրողականությունը, այլև պայմաններ է ստեղծում զարգացնելու և կատարելագործելու սոցիալիստական արտադրահարաբերությունները, մարդկանց դաստիարակում բարձր գիտակցությամբ։

Աշխատանքային կարգապահության ամրապնդումը չի կարելի հասկանալ առանձին, արտադրական կապերից մեկուսացված. այն պետք է արտահայտի գոյություն ունեցող արտադրահարաբերությունների էությունը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը վերջ տվեց մասնավոր սեփականատիրական հարաբերություններին, ստեղծեց արտադրամիջոցների հանրային-համաժողովրդական սեփականություն։ Սովետական ժողովուրդն ինչպես արտադրամիջոցների, այնպես էլ ստացված արդյունքի տերն է։ Սոցիալիզմը վերացրեց աշխատանքային կարգապահության դասակարգային բնույթը, բռնի կարգապահությունը փոխարինեց իր հասարակության համար կատարվող աշխատանքի կարգապահությամբ։ Սոցիալիզմը վերացրեց մարդու կողմից մարդու շահագործումը և մարդկության պատմության մեջ առաջին անգամ աշխատանքին հաղորդեց ստեղծագործական բնույթ։ Աշխատանքը հասարակական կյանքում դարձավ ազատ, մարդու ընդունակությունների և ձիրքերի կատարելագործման աղբյուր։ Այստեղ աշխատանքային կարգապահությունը հասարակական կապերի նոր արտահայտություն է ձեռք բերում։ Սոցիալիզմի ժամանակ յուրաքանչյուր անհատ հասկանում է, որ սոցիալիստական արտադրաուժերի զարգացումը այն որոշիչ պայմանն ու նախադրյալն է, որով պայմանավորված է աշխատավորների նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարումը։ Սովետական մարդը գիտակցում է, որ ժողովրդական տնտեսության հաջողություններն ի սպաս են դրվում ինչպես իր, այնպես էլ հասարակության բարեկեցության բարձրացման գործին։

Աշխատանքի սոցիալիստական կարգապահությունը լայն հասկացություն է։ Այն իր մեջ ներառում է ա) պլանային, բ) տեխնոլոգիական, գ) ֆինանսատնտեսական, դ) աշխատանքային և ե) վարվելաձևի կարգապահություն։

Պլանային կարգապահությունը տեխարդֆինպլանի հիմնավոր կատարումն է, նյութատեխնիկական մատակարարման ապահովվածությունը, պլանի օպտիմալ սահմանումը, արտադրանքի անվանացանկի ճիշտ պահպանումը և այլն։ ՍՄԿԿ XXIV համագումարը մեծ նշանակություն տվեց պլանային կարգապահության ամրապնդմանը։ «Տարբեր ձեռնարկությունների և արտադրության ճյուղերի աշխատանքը համաձայնեցնող պլանների կատարումը, ինչպես նաև նրանց զարգացման հեռանկարները թելադրում են ամենուրեք բարձրացնել պետական կարգապահությունը։ Անհրաժեշտ է բարձրացնել յուրաքանչյուր մինիստրության, միավորման, ձեռնարկության աշխատողների պատասխանատվությունը պլանային բոլոր առաջադրանքները ժամանակին կատարելու համար։ Կարգապահությունն ամրապնդելու և հանձնարարված գործի համար յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը բարձրացնելու բնագավառում կարևոր դեր պետք է խաղա հստակորեն կազմակերպված կատարման ստուգումը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 221)։

Տեխնոլոգիական կարգապահությունն արտադրական ռեժիմի, պատրաստվող արտադրանքի գիտատեխնիկական հիմնավորվածության ճիշտ պահպանումն է և այլն։ Տեխնոլոգիական պրոցեսը խախտելիս ավելանում է խոտանը, իջնում արտադրանքի որակը, խախտվում են անվտանգության կանոնները։

Ֆինանսատնտեսական կարգապահությունը նյութերի ծախսման նորմաների, էներգիայի, վառելիքի, գործիքների, նյութական և բարոյական խթանների ճիշտ օգտագործումն է, յուրաքանչյուր արտադրապրոցեսի ռուբլով վերահսկողությունը։ Այդ բոլորի ճիշտ տնօրինմամբ և նպատակային օգտագործմամբ կբարձրանա հասարակական արտադրության արդյունավետությունը։

Տնտեսական ռեֆորմի իրականացումը մեր երկրում մեծ հեռանկարներ բացեց ֆինանս-տնտեսական կարգապահությունն ամրապնդելու գործում։ Յուրաքանչյուր արտադրական ձեռնարկության տնտեսական լծակների՝ տըն-

հաշվարկի, գների, շահույթի, վարկի, նյութական խրախուսման ձևերի օգնու- թյամբ ստեղծվում են այնպիսի պայմաններ, որոնք ամրապնդում են ֆինան- սատնտեսական կարգապահությունը։

Աշխատանքային կարգապահության հիմնական ցուցանիշը բանվորական ժամանակի ռացիոնալ օգտագործման աստիճանն է, անխափան աշխատան- քը։ Ահա թե ինչու անհրաժեշտ է յուրաքանչյուր ձեռնարկությունում պահպա- նել ներքին կարգապահությունը, որն աշխատանքի արտադրողականության բարձրացման մեծ հնարավորություններ է ստեղծում։ Արտադրական պլանը ժամանակին և որակով կատարելիս բարձրանում են կոլեկտիվի տրամադրու- թյունը, ձեռնարկության հեղինակությունը, ինչպես նաև աշխատանքի արտա- դրողականությունը։

Ներքին կարգապահության խախտումը, առանձին բանվորների անփու- թությունը, գործալքումները, շռայլությունը, սիմուլյացիան իջեցնում են գոր- ծարանի արտադրական ցուցանիշները։

Աշխատանքային կարգապահության խախտումներ են համարվում աշխա- տանքից ուշանալը, շուտ գնալը։ Բանվորական ժամանակի կորուստների մեջ հատկապես բավականին մեծ տեսակարար կշիռ են կազմում ընդմիջումները շուտ սկսելն ու ուշ վերադառնալը, աշխատանքի ժամին այլ գործերով զբաղ- վելը և այլն։ Այդ երևույթները վատ ազդեցություն են թողնում այն արտա- դրությունների վրա, որտեղ մեծ տեսակարար կշիռ է կազմում ձեռքի աշխա- տանքը՝ հատկապես հոսքային արտադրության պայմաններում։ Եթե բանվորը ժամանակին աշխատանքի չի ներկայանում կամ ուշանում է 5—10 րոպե, ապա կազմալուծում է արտադրության գործունեությունը, առաջանում են «նեղ տեղեր»։

Աշխատանքային կարգապահության խախտում է նաև այն, երբ բանվորը ճիշտ ժամանակին անցնում է արտադրամաս, սակայն շատ ժամանակ է կորց- նում բանվորական վերնազգեստը փոխելու, աշխատատեղը կարգի բերելու, արտադրական ծրագրի վերաբերյալ հրահանգներ ստանալու համար կամ խո- սակցությամբ է զբաղվում ընկերոջ հետ։ Դրանք տեղիք են տալիս մեծ պա- րապուրդների, որոնք իջեցնում են աշխատանքի արտադրողականությունը։

Մեր կարծիքով, ՀՍՍՀ սարքաշինական ձեռնարկություններում՝ հատկա- պես Արզնու ճշգրիտ քարերի, Երևանի էլեկտրասարքավորումների, Կիրովականի «Ավտոմատիկա», Երևանի ոսկերչական գործարաններում, որտեղ կան բավա- կանին շատ բանվորական ժամանակի կորուստներ, անհրաժեշտ է օգտագործել նույն ճյուղի և մյուս առաջավոր ձեռնարկությունների փորձը։ Լավ կլինի մաս- սայաբար կիրառել Շչոկինոյի քիմիական կոմբինատի օրինակը, որտեղ բարե- խիղճ աշխատողները ժամանակին ներկայանում են աշխատանքի, կատարում օրվա աշխատանքային պարտականությունները և տարբեր ձևերով նյութապես խրախուսվում են ձեռնարկության ղեկավարության կողմից։ Դրա շնորհիվ ռա- ցիոնալ է օգտագործվում բանվորական ժամանակը։ Հարկավոր է օրենքի հա- մաձայն պատժել աշխատանքային կարգապահության խախտողներին։ Ցա- վոք, այդպես վարվում են միայն բացառիկ դեպքերում։

Աշխատանքային կարգապահության խախտում է նաև կադրերի հոսունու- թյունը, որը բավականին մեծ է ՀՍՍՀ արդյունաբերական ձեռնարկություննե- րում։ Ուսումնասիրությունները վկայում են, որ որոշ (հատկապես նոր ստեղծ- ված) ձեռնարկություններում յուրաքանչյուր 2—3 տարում կոլեկտիվի անձնա-



կազմը նորացվում է։ Օրինակ, Երևանի ժամացույցի գործարանում վերջին 5 տարիներում աշխատանքի են ընդունվել 1.582, իսկ ազատվել են 2.922 մարդ։

Աշխատուժի շարժունությունը մեծ ազդեցություն ունի աշխատանքային կարգապահության ամրապնդման, հետևապես արտադրողականության բարձ- րացման վրա։ Աշխատուժի հոսքի հետևանքով տեղի է ունենում բանվորական ժամանակի կորուստ (կապված աշխատանքի ընդունվելու կամ ազատվելու, աշխատօրվա ընթացքում առանձին աշխատողներին զբաղեցնելու ժամանակի ծախսումների և այլնի հետ), որը դժվարացնում է նաև պլանային կարգով նոր կադրերի պատրաստման գործը։

Աշխատուժի հոսունությունը կարող է տեղի ունենալ օբյեկտիվ և սուբյեկ- տիվ պատճառներով։ Օբյեկտիվ պատճառը (հիվանդություն, բանակ գնալ, ըն- տանիքի միգրացիա և այլն) այնպիսի երևույթ է, որը հասարակությունը կա- րող է սահմանափակել տարբեր միջոցառումներով, բայց ամբողջությամբ վե- րացնել չի կարող։ Իսկ սուբյեկտիվ պատճառը դա գործալքումների, կարգա- պահության խախտման հետևանքով աշխատանքից հեռացվելը կամ դիմումի համաձայն ազատվելն է և այլն։

Ժամանակակից պայմաններում հիմնական ուշադրությունը պետք է կենտ- րոնացնել սուբյեկտիվ պատճառի վերացման վրա։ Դրանում համոզվելու հա- մար բավական է նշել, որ միայն ՀՍՍՀ սարքաշինական ձեռնարկություննե- րում աշխատանքի ընդունման շրջանառության գործակիցը[1] 1970 թ. կազմել է 27,8, իսկ 1971-ին՝ 25,2 տոկոս, հոսունությունը՝ համապատասխանաբար՝ 37,4, 30,8 տոկոս։ Աշխատուժի շարժի մասին պատկերացում է տալիս հե- տևյալ աղյուսակը.

Աշխատուժի շարժը (միայն ազատվածները) ՀՍՍՀ սարքաշինական ձեռնարկություններում (տոկոսներով)

| Տարիներ | | Տեղափոխ- ված են ու- րիշ ձեռնար- կություն | Ուսման, բանակի, թոշակի և այլ պատ- ճառներով | Իրենց դի- մումի համաձայն | Աշխատանքա- յին պայմանա- գիրը լրանալու կապակցու- թյամբ | Ազատված են գործալքումներ թույլ տալու հետևանքով |
|---|---|---|---|---|---|---|
| 1968 | 100 | 16,2 | 64,5 | 2,5 | 8,1 | 8,7 |
| 1970 | 100 | 27,3 | 56,5 | — | 4,0 | 12,2 |
| 1971 | 100 | 19,2 | 62,9 | 1,3 | 5,9 | 10,7 |

Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ, չնայած 1971 թ. 1,5 տոկո- սով կրճատվել է աշխատանքից ազատվածների թիվը, որոնք գործալքումներ են թույլ տվել, բայց, այնուամենայնիվ, այն բավական մեծ տեսակարար կշիռ է կազմում։ Մեր կարծիքով, ձեռնարկություններում հոսունության և գոր- ծալքումների պատճառը բաշխման հարաբերությունների անկատարելությունն է։ Նյութական շահագրգռությունն այն միջոցն է, որով պայմանավորված են թե՛ բանվորական ժամանակի կորուստը, թե՛ գործալքումը և թե հոսունությու- նը։ Օրինակ, եթե 1970 թ. ժամացույցի գործարանից ազատվել են 803 մարդ (յուրաքանչյուրի տարեկան միջին աշխատավարձը 113 ռուբլի), ապա 1917-ին՝

[1] Ընդունման շրջանառության գործակիցը որոշվում է ընդունվածների հարաբերությունը աշխատողների միջին ցուցակային թվով, արտահայտված տոկոսներով։

Հետևաբար, մեկ տարում
551 մարդ (միջին աշխատավարձը 127 ռուբլի)։ միջին աշխատավարձը բարձրացել է
ազատվողների թիվը իջել է 252-ով, իսկ կրճատմանը և բանվորական ժա-
14 ռուբլով։ Բացի դրանից, հոսունության «13-րդ աշխատավարձի» ար-
մանակի կորուստների վերացմանը նպաստել է 115.900 ռուբլի, որից
մատավորումը։ Միայն 1971 թ. այդ ֆոնդը կազմել է անձնակազմին՝
վճարվել է բանվորներին՝ 83.400, ինժեներա-տեխնիկական ժամանակի կորուստների
27.800 ռուբլի և այլն։ Հոսունության և բանվորական պայմանավորված
կրճատման վրա ազդել են նաև այն վճարումները, որոնք
են աշխատողների աշխատանքային ստաժով։ Գովելի է, որ գործարանը
տրանսպորտ է տրամադրել բնակելի զանգվածներից աշխատողներին բերելու
համար։ Մյուս գործոնը, որը նպաստել է Երևանի ժամացույցի գործարանում
բանվորական ժամանակի կորուստների կրճատմանը, բնակարանային շինա-
րարության պրոբլեմն է։ Չնայած 4—5 տարի ձգձգվում է շենքի շահագործու-
մը, բայց բնակարան ստանալու հեռանկարն ավելի ռեալ դառնալու հնարավո-
րության շնորհիվ բարելավվել է աշխատանքային կարգապահությունը։ Հոսու-
նության և բանվորական ժամանակի կրճատմանը կօգնի նաև հանրակացարա-
նի հարցի լուծումը։
Լավ կլինի, եթե վերոհիշյալ գործարանի փորձը կիրառվի մնացած ձեռ-
նարկություններում, որտեղ հոսունությունը և բանվորական ժամանակի կո-
րուստներն զգալի են։
Հոսունության և բանվորական ժամանակի կորուստների կրճատմանը
կնպաստի մանկապարտեզների, մանկամսուրների ցանցի ընդլայնումը։ Ուսումն-
նասիրությունները ցույց են տալիս, որ արդյունաբերական այն ձեռնարկու-
թյուններում, որտեղ կանանց տեսակարար կշիռը մեծ է, կարևոր նշանակու-
թյուն ունեն նախադպրոցական հիմնարկությունները։ Անհրաժեշտ է, որ ման-
կապարտեզները և մանկամսուրները լինեն գործարանում, կամ նրան կից։
Վերջին տարիներս աշխատանքային կարգապահությունը խախտողների
զգալի մասը երիտասարդներ են։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս,
որ գործալքումներ, բացակայություններ թույլ են տալիս հիմնականում նոր
ընդունվածները, աշխատանքային փոքր ստաժ ունեցողները։ Այսպես, Երևանի
սարքաշինական գործարանում գործալքումների հետևանքով հեռացվածների
մեծ մասն ունեցել են մինչև մեկ տարվա աշխատանքային ստաժ։ Այդ, առա-
ջին հերթին, երիտասարդ կադրերի շրջանում տարվող քաղաքական-դաստիա-
րակչական թույլ աշխատանքի հետևանք է։ Իսկ դրանով քիչ են զբաղվում
կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները։
Անհրաժեշտ է բարձրացնել երիտասարդության պատասխանատվության և
հասարակության առջև ունեցած պարտքի զգացումը։
Աշխատանքային կարգապահության խախտումների վրա որոշակի ազդե-
ցություն ունի ղեկավար անձնակազմի (դիրեկտոր, տեղակալներ, արտադրա-
մասի, բաժնի պետեր և այլն) կողմից սահմանված կարգ ու կանոնի, վարվե-
լակերպի դրվածքը։ Առանձին ղեկավարներ չունեն հանգիստ խոսելու, հա-
մոզելու, հարցերը օբյեկտիվ որոշելու կարողություն։ Ինչպես նշեց Լ. Ի.
Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում՝ «Կադրերի կարգապահության և
պատասխանատվության բարձրացումը մեր կարևորագույն խնդիրներից մեկն
է։ Ընդ որում, մենք նկատի ունենք այն կարգապահությունը, որը կառուցված
է ոչ թե վախի վրա, ոչ թե կոպիտ վարչարարական մեթոդների վրա, որոնք



մարդկանց զրկում են վստահությունից, նախաձեռնությունից, ծնում են ինքն-
ապահովագրում և անազնվություն։ Խոսքը վերաբերում է այն կարգապահու-
թյանը, որը կառուցված է մարդկանց բարձր գիտակցականության և պատաս-
խանատվության վրա։ Իսկ ինչ վերաբերում է այն աշխատողներին, որոնք
խախտում են կարգապահությունը, քննադատությունից հետևություններ չեն
անում, ճիշտ վարքագիծ չեն դրսևորում, ապա նրանց նկատմամբ պետք է
անհրաժեշտ միջոցներ ձեռք առնվեն։ Մեզանում ղեկավար պոստերը ոչ ոքի
ընդմիշտ չեն տրվում։ Սոցիալիստական կարգապահությունն այն կարգապա-
հությունն է, որը միասնական է հասարակության բոլոր անդամների համար,
պարտադիր է բոլորի և ամեն մեկի համար» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյու-
թերը, էջ 134)։

Ռ. Ս. ԲԱՐՍԵՂՅԱՆ

## ՄԵՐ ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑԸ

# ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանով նախատեսված է մեծ չափով ավելացնել ավտոմեքենաների թողարկումը։ Արդյունաբերական այդ ճյուղի ձեռնարկություններից մեկը Երևանում է։ Մեր խմբագրության աշխատակիցը դիմեց Երևանի ավտոգործարանի դիրեկտոր ընկ. Ս. Հ. Ավանյանին, խնդրելով պատասխանել ընթերցողներին հետաքրքրող հարցերին։

ՀԱՐՑ.— Որպիսի՞ք են հայրենական ավտոմոբիլային արդյունաբերության, ինչպես և Երևանի ավտոմոբիլային գործարանի այսօրը և մոտակա տարիների հեռանկարները։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Սովետական Միությունում ավտոմոբիլային արդյունաբերություն փաստորեն ստեղծվել է առաջին հնգամյակի տարիներին։ 1928 թ. ՍՍՀՄ-ում թողարկվել է ընդամենը 841 ավտոմեքենա, որից 50-ը մարդատար, 51-ը՝ ավտոբուս։ 1940 թ. մեր երկրում թողարկվել է 145 հազար, իսկ 1966 թ.՝ 675 հազար ավտոմեքենա։

Վերջին ժամանակներս երկրի ավտոմոբիլային արդյունաբերությունը բուռն թափով աճում է։ Եթե նախորդ հնգամյակի վերջին տարում երկրում թողարկվում էր համարյա մեկ միլիոն ավտոմոբիլ, ապա իններորդ հնգամյակի վերջին տարում կհասնի ավելի քան երկու միլիոնի։

Ավտոմոբիլային գործարանների 1971—1972 տնտեսական տարվա աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ նրանք լավ ցուցանիշներ են ձեռք բերել։ Թողարկվող ավտոմոբիլների թիվը 1971 թ. հասավ ավելի քան 1 մլն 142 հազարի, իսկ 1972-ին մոտ 1 մլն 400 հազարի, այդ թվում՝ 730 հազար մարդատար։

Ավտոմոբիլային արդյունաբերության համար վերջին տարիները բնորոշ են նրանով, որ յուրացվել են ավտոմոբիլային տեխնիկայի նոր մոդելներ, ընդլայնվել է առավել արտադրողական տիպի ավտոմոբիլների և ավտոգնացքների թողարկումը, բարձրացել է դրանց երկարակեցությունը։

զարգաց-
Իններորդ հնգամյակում ավտոմոբիլային արդյունաբերության
ման գլխավոր ուղղություններն են՝ արտադրության ինտենսիվացումը և նոր
կարողությունների գործարկումը. արդեն լրիվին ավարտվել է Վոլգայի ավտո-
գործարանի շինարարությունը, որի նախագծային կարողությունն է 660 հազար
մարդատար ավտոմեքենա։ Կամայի ավտոգործարանը, որ կառուցվում է արագ
թափով, մասնագիտանում է 8—14 տոննա բեռնատար ավտոմոբիլների թո-
ղարկման գործում։ Ավարտվում են Ավտո-մոսկվիչ միավորման (2—3 տարի
առաջ սկսված է ֆրանսիական Ռենո ֆիրմայի հետ համատեղ), ինչպես նաև
Ուլյանովսկի Վ. Ի. Լենինի անվան ավտոմոբիլային գործարանի և այլ ձեռ-
նարկությունների վերակառուցումն ու ընդլայնումը։
Մեր ընթերցողներին, անշուշտ, կհետաքրքրի Երևանի ավտոմոբիլային
գործարանը, նրա մոտակա և ապագա հեռանկարները։
Երևանի ավտոմոբիլային գործարանն այժմ երկրի ավտոմոբիլային ար-
դյունաբերության ամենաերիտասարդ ձեռնարկություններից մեկն է, որը գործ-
արկվել է փաստորեն 1967 թ. և թողարկել առաջին մի քանի հարյուր մեքենա-
ները։ Արտադրանքի հիմքում դրվեց Ռիգայի ավտոբուսային գործարանում ար-
տադրվող ՌԱՖ ավտոբուսը, որի բազայի վրա ստեղծվեց 1 տոննա բեռնա-
տարությամբ ԵՐԱԶ—762 ավտոմոբիլ-ֆուրգոնը։ Դեռ այն ժամանակ գործա-
րանի երիտասարդ կոնստրուկտորները կարողացան կարճ ժամկետներում
ստեղծել տեխնիկական դոկումենտացիա և իրենց փորձարարական տեղամա-
սում պատրաստել ավտոֆուրգոնի առաջին նմուշները։ Այն տարիներին և մինչև
1969—1970 թթ. ավտոմոբիլները հավաքվում էին Սովետական Միության
մյուս քաղաքներից բերվող մասերից։ Ռիգայի գործարանը մատակարարում
էր թափքի գրեթե բոլոր մասերը, Գորկին՝ հանգույցների ու ագրեգատների
կոմպլեկտավորումը։
Տեխնոլոգիայի ցածր մակարդակը, բարձր տրանսպորտային ծախսերը
մեծացնում էին ավտոմոբիլի ինքնարժեքը. 1967 թ. դրանք կազմեցին
4.239 ռուբլի։ Դրա հետ մեկտեղ ԵՐԱԶ—762 ավտոֆուրգոնը, որն իր մեջ
զուգակցում է մարդատար ավտոմեքենայի առավելությունները (մեծ ճեպըն-
թացություն տվյալները, սահունությունը, բարձր շահավետությունը), արժա-
նացավ լավ գնահատականի։ Ներկայումս, ՍՍՀՄ պետպլանի տվյալներով, մեր
ձեռնարկության թողարկած ավտոմոբիլների տարեկան պահանջը հասնում է
80 հազարի։ Եվ եթե Ռիգայի ավտոմոբիլի կոնստրուկցիայի փոխառնու-
մը արդարացրեց իրեն, ապա Ռիգայի ավտոգործարանի տեխնոլոգիայի
մակարդակը ԵՐԱԶ-ի համար անընդունելի եղավ։ 1968—1969 թթ. վճռական
տարիներ դարձան Երևանի երիտասարդ ավտոգործարանի համար։ Կոլեկտիվը
հիանալի հասկանում էր, որ դրված է իր լինել-չլինելու հարցը, որովհետև
առանց տեխնիկական մակարդակի բարձրացման խոսք անգամ լինել չէր կա-
րող Երևանում ավտոմոբիլային գործարանի հետագա գոյության մասին. այդ
բնագավառի մասնագետներից ոմանք անհավատալի էին համարում ավտոգոր-
ծարանի ստեղծումը Հայաստանում։ Կյանքն արագությամբ հերքեց նրանց դա-
տողությունները։ Մշակելով կազմակերպական-տեխնիկական միջոցառումների
պլան, կոլեկտիվը ձեռնամուխ եղավ դրանց կենսագործմանը։ Գիշեր ու ցերեկ
եռում էր աշխատանքը։ Գործարանի կոնստրուկտորական բաժնում գլխա-
վոր կոնստրուկտոր Յու. Ա. Սիմոնյանի ղեկավարությամբ շտապ վերա-
նայվեց տեխնիկական դոկումենտացիան։ Առանց որակին վնաս հասցնե-



լու պարզեցվում էին հանգույցները։ Տեխնոլոգիական բաժինը, գլխա-
վոր տեխնոլոգ Վ. Գ. Ներսիսյանի ղեկավարությամբ, ձեռնամուխ եղավ
առաջավոր տեխնոլոգիայի մշակմանը, հավաքման ու եռակցման բարձր
արտադրողականություն ունեցող սարքավորումների ստեղծմանը։ Գլխա-
վոր մեխանիկի ու գլխավոր էներգետիկի բաժինների մոնտաժողները
ամեն օր մոնտաժում էին դարբնոցա-մամլիչային և հաստոցային սարքավո-
րումներ։ Կազմակերպվեցին գործիքային արտադրամաս, գալվանական և մե-
խանիկական տեղամասեր։ Դրանց շահագործմամբ հնարավորություն ընձեռ-
վեց հանգույցներն ու մասերը մշակել մեխանիկական տեղամասում, գործիք-
ներն ու սարքերը պատրաստել գործարանում և գալվանապատել։ Կրճատ-
վեցին գործուղումները և տրանսպորտային ծախքերը։ Հրաժարվեցինք մյուս
քաղաքներից մի շարք մասեր ու հանգույցներ փոխադրելուց։ Մարդիկ ազատ-
վեցին որոշ հոգսերից, կատարելագործվեց արտադրության կառավարման
սիստեմը։ Ներկման արտադրամասի վերակառուցմամբ 3—4 անգամ մեծա-
ցավ թողարկման կարողությունը։ Շեշտակիորեն ավելացան ավտոմոբիլների
հավաքման տեմպերը և 1969 թ. արտադրության ծավալը, 1968 թ. համեմա-
տությամբ, ավելացավ 2,5 անգամ։
Վերադաս կուսակցական մարմինների աջակցությամբ գործարանը հա-
մալրվեց որակյալ մասնագետներով, որոնք բավականաչափ փորձ ու-
նեին մեքենաշինական արտադրություն կազմակերպելու ասպարեզում։ Գըլ-
խավոր մեխանիկի և գլխավոր էներգետիկի ծառայությունը ղեկավարեց հան-
րապետության վաստակավոր ինժեներ Գ. Ա. Կարախանյանը, որը մասնակցել
է Երևանի ավտոպահեստամասերի գործարանի, Ջարենցավանի ցենտրոլիտի,
Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի շինարարությանը։ Արտադրությունը
գլխավորեց փորձված ինժեներ Գ. Ա. Մանուչարովը։ Արտադրամասերի պե-
տերի պաշտոնների առաջ քաշվեցին ընդունակ երիտասարդ կոմերիտական-
ներն ու կոմունիստները։ Նրանք արդարացրին բարձր վստահությունը։ Բան-
վորական ավանդույթներ ստեղծվեցին, առնականացավ ու զարգացավ բանվո-
րական կոլեկտիվը։
ՀԱՐՑ.— Գործարանում վերջին տարիներին արտադրապրոցեսների մեքե-
նայացման ինչպիսի՞ առաջընթաց է տեղի ունեցել։
ՊԱՏԱՍԽԱՆ.— Ժամանակակից արդյունաբերությունն անհնարին է պատ-
կերացնել առանց տեխնիկական առաջընթացի և գիտության նվաճումների
ներդրման։ Այդ նկատառումով մեր գործարանում ևս որոշակի գործեր են կա-
տարվել։ 1969 թ. երևացին ավտոմոբիլի առաջքի պանելի, ծածկի առաջամասի
ու ետնամասի առաջին դրոշմները։ Գործարանը հրաժարվեց այդ մասերը ձեռ-
քով պատրաստելուց և ձեռնամուխ եղավ դրանց դրոշմումներին։ Եթե անցյա-
լում ութ կտորներից առաջքի պանելներ պատրաստելու համար հարկավոր էր
միջին հաշվով մոտ 60 րոպե և, դրանց անհարթությունները վերացնելու
նպատակով մեկ ավտոֆուրգոնի համար ծախսվում էր 5,7 կգ թանկարժեք
անագալհեմ, ապա դրոշմի արմատավորումից հետո մամլակը պանելը մամ-
լում է 40 վայրկյանում, անագի ծախսումը կրճատվեց 2,5 անգամ և միայն այդ
միջոցառման արմատավորումից ստացված տնտեսական արդյունավետությու-
նը տարեկան կազմեց 32 հազար ռուբլի։ Կոնստրուկտորները վերանայեցին
ավտոմոբիլի թափքի կողերի կառուցվածքի կոշտությունը։ Թանկարժեք 100
ինքնապարուրակավոր պտուտակների փոխարեն, թափքի կոշտության կողերի

հավաքման համար օգտագործվում է եռակցումը։ Միայն այդ երկու միջոցառումները հեշտացրին հավաքողների աշխատանքը, կրճատեցին արտադրության ինքնարժեքը, բարելավեցին որակը և տնտեսական ցուցանիշները։ Իսկ այդպիսի շատ ու շատ միջոցառումներ են իրականացվել։ Հրաժարվելով թափքի ներմուծվող մասերից, այժմ գործարանն սկսել է կոոպերատիվ սկզբունքով դրանք մատակարարել Ռիգային՝ տարեկան 20 հազար դրոշմակ՝ 64 հազար ռուբլի գումարով։

ՍՄԿԿ XXIV համագումարը նոր, ավելի բարդ ու կոնկրետ պարտավորություններ է դնում յուրաքանչյուր կոլեկտիվի առաջ։ Երևանի ավտոգործարանում այդ խնդիրների էությունը հանգում է նրան, որ ծախսված աշխատանքի համեմատ, նյութական և ֆինանսական յուրաքանչյուր միավորի հաշվով, արտադրության ծավալն զգալիորեն մեծացվի։ Առաջավոր տեխնոլոգիայի հիման վրա նախագծային լուծումների վերանայումը, արտադրության կառուցվածքի հետագա կատարելագործումը, ռեզերվների ամենօրյա որոնումներն ու դրանց կիրառումը՝ լիովին արդարացրին իրենց։ Այս բանում գործարանին մեծապես օգնել և օգնում են եղբայրական հանրապետությունների ձեռնարկությունները։ Զապոռոժիեի Կոմունար գործարանում Ուկրաինայի ավտոշինարարներն ընդունեցին դրոշմներ պատրաստելու պատվերներ։ Մոսկվայի Լենինյան կոմերիտմիության անվան գործարանը (Մոսկվիչ) օգնելու է սարքավորանք պատրաստելու գործում։ Մինսկում կառուցվեց գլխավոր հավաքման կոնվեյերը։ Մեր պատվերները ժամանակին կատարեցին Լենինգրադի Վ. Ի. Լենինի անվան տուրբինային թիակներ արտադրող և Իժորսկի ձեռնարկությունները։ Երկրի առաջավոր ձեռնարկությունների հետ գործարանի կապերն ամրապնդվում ու զարգանում են։ Ավտոմոբիլի կողնակի խոշոր-գաբարիտային, ետնամասի կորացումների դրոշմների ստացումը գործարանում արագացրեց տեխնիկական վերազինությունը։ Կոնստրուկտորներն ու տեխնոլոգները հնարավոր համարեցին միասնականացնել հետևի և բեռնասրահի դռների պանելները։ Մեկ դրոշմով պատրաստվում են մի քանի խոշոր-գաբարիտային մասեր։ Նվազեց աշխատատարությունը։ 1968 թ. վերջին այն կազմում էր 700, իսկ 1970 թ.՝ 432 նորմա/ժամ։

Կոլեկտիվն իր առջև կոնկրետ խնդիր դրեց՝ տեխնիկական վերազինման և արտադրության ինտենսիվացման ուղղություն վերցնելով՝ 1971 թ. փոխհատուցել գործարանի շինարարության վրա կատարված կապիտալ ներդրումները։ Գործարանում հասկանում էին, որ խնդիրը բարդ է և դրա իրականացման համար կպահանջվեն ներքին ռեզերվների մոբիլիզացում, կոլեկտիվի ջանքերի լարում։ Տնտեսագետները հաշվել են, որ 1969 թ. ձեռք բերված ֆոնդահատույցը, որը հիմնական ֆոնդերի մեկ ռուբլու հանդեպ կազմել է 1 ռ. 79 կոպ., չէր կարող ապահովել առաջադրված խնդրի կատարումը։ Ֆոնդահատույցը բարձրացնելու և այն մինչև 2 ռ. 36 կոպ. հասցնելու համար 1971 թ. պահանջվեց արտադրական հրապարակի մեկ մետրից կատարվող հանումները նախատեսված 0,24-ից հասցնել 0,26 ավտոմոբիլների։ Ֆոնդահատույցի ցուցանիշի վրա դրական ազդեցություն ունեցան սարքավորման, ավտոմատացման, տեխնոլոգիական պրոցեսների բարելավումը և հիմնական ու օժանդակ աշխատանքների մեքենայացումը, արտադրական մակերեսների առավել ռացիոնալ օգտագործումը։ 1971 թ. գործարանը հատուցեց բոլոր կապիտալ ներդրումները և ավելի քան 3 մլն ռուբլի գերշահույթ տվեց։



1971 թ. նոյեմբերին Հայաստանի ԿԿ Կենտկոմի բյուրոն քննության առավ ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության՝ Հայկական ՍՍՀ-ում գտնվող ձեռնարկություններում արտադրության տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու հարցը։ Բյուրոն, նշելով մեր գործարանի աշխատանքի դրական արդյունքները, միաժամանակ պարտավորեցրեց կուսկազմակերպությանը՝ վերացնել եղած թերությունները, արտադրության ռեզերվներն օգտագործելու միջոցով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Գործարանի կոլեկտիվի ժողովում Հայաստանի ԿԿ Կենտկոմի բյուրոյի որոշման քննարկումը դարձավ ձեռնարկության ինչպես առաջիկա տարիների, այնպես էլ հեռանկարային ժամանակի տնտեսական զարգացման հիմնական ուղղությունը։

Կուսակցության XXIV համագումարի ցուցումները և Հայաստանի ԿԿ Կենտկոմի որոշումը կատարելու համար մշակվեցին գիտականորեն հիմնավորված միջոցառումներ, որոնցով արտադրական կարողությունները և ծավալը 1975—1980 թթ. զգալիորեն կավելանան։

ՀԱՐՑ.— Ձեռնարկությունում ինչպե՞ս է լուծվում արտադրության որակի բարձրացման հարցը:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Բարձրորակ արտադրանքը հուզում է բոլորին։ Հետևաբար, մեր գործարանի կոլեկտիվը ևս մտահոգված է լավ ավտոմեքենաներ թողարկելու հարցով։ Չէ՞ որ արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում հատուկ տեղ է գրավում արտադրանքի որակի բարելավումը։ Արտադրանքի որակի ապահովումը մեր ժամանակներում ձեռնարկության տեխնիկական ղեկավարման ամենահրատապ խնդիրն է։ Այս հարցում կարևոր է կոմպլեքսային մոտեցումը՝ կազմակերպական, տեխնիկական և տնտեսական միջոցառումների ամբողջությունը։ Արտադրանքի հուսալիությունը, որակի ապահովումն անհամատեղելի են մանրուքների անտեսման հետ։

1970 թվականից Երևանի ավտոմոբիլային գործարանում բարելավվեցին հետազոտական և կոնստրուկտորական աշխատանքները, կատարելագործվեցին արտադրության տեխնոլոգիան ու կազմակերպումը։ 1972 թվականից որակի պատշաճ մակարդակի պահպանումը գլխավորում է գործարանի գլխավոր ինժեներ, հանրապետության վաստակավոր ինժեներ Ա. Հ. Դանիելյանը։ Տեխնիկական հսկողության բաժինը մշտական կապեր է պահպանում սպառողների հետ, տեղեկություններ է հավաքում ավտոմոբիլի որակի վերաբերյալ։ Այդ ինֆորմացիան ընդգրկում է զանազան ճանապարհային պայմաններում գործարանային փորձարկումների արդյունքները, այդ թվում՝ մեքենայի հուսալիությունն ու երկարակեցությունը։ Առավել մեծ չափով ուշադրության են առնվում շահագործման այն փորձարկումների ցուցանիշները, որոնք անց են կացվում Մոսկվայի մարզի Դիմիտրով քաղաքի ավտոպոլիգոնում։ Կարևորագույն նշանակություն է տրվում հիմնական հանգույցի՝ ավտոմոբիլի թափքի պատրաստմանը։ Թափքի արտադրության ժամանակ որակի ապահովման ծառայությունը մշտապես արմատավորում է եռակցման և հավաքման նորագույն եղանակները, վերացնում է ընթացիկ թերությունները։ Այդ ծառայության պարտականության մեջ են մտնում նաև համանման ձեռնարկությունների առաջավոր փորձի ուսումնասիրությունը, դրանց արմատավորումն անմիջականորեն բանվորական աշխատատեղերում։ Գլխավոր կոնստրուկտորի և գլխավոր տեխնոլոգի բաժինները յուրաքանչյուր եռամսյակը մեկ վերահսկում ու ստու-

*գում են հանգույցներն ու մասերը։ Սպառողներից ստացվող ինֆորմացիայի և փորձարկումների արդյունքների մշտական ամփոփումը համապատասխան ծառայություններին հնարավորություն է տալիս առաջադրանքներ մշակել մասերի ու հանգույցների կոնստրուկցիան բարելավելու և պատրաստման տեխնոլոգիան կատարելագործելու նպատակով։*

ՀԱՐՑ.— Գործարանն ինչպե՞ս է իրագրել հնգամյակի առաջին երկու տարվա ծրագիրը. ի՞նչ է կատարելու առաջիկայում։

*ՊԱՏԱՍԽԱՆ.— Հնգամյակի առաջին տարվա արտադրական պլանը կատարված է 101, իսկ 1972 թ.՝ 100,5 տոկոսով։ Մեր կոլեկտիվն անթերի է կատարել նաև այս տարվա սոցիալիստական պարտավորությամբ ստանձնած առաջին եռամսյակի առաջադրանքները՝ տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով։*

*Հաջողությամբ փակելով 1972 թ., գործարանն արժանացավ Հայաստանի ԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և արհմիությունների հանրապետական խորհրդի պատվոգրին, իսկ III եռամսյակի աշխատանքի արդյունքներով առաջնակարգ տեղ գրավեց ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության կոլեկտիվների սոցիալիստական մրցությունում։ Եթե հաշվի առնենք, որ այդ մրցությանը մասնակցում էին Գորկու ավտոգործարանի և Մոսկվայի Լիխաչևի անվան գործարանի 100-հազարանոց, Լենինյան կոմերիտմիության անվան և Վոլգայի ավտոգործարանների 50-հազարանոց կոլեկտիվները, ապա պետք է մեծ հաջողություն համարել ԵՐԱԶ-ի երիտասարդ կոլեկտիվին առաջնակարգ տեղ շնորհելը։*

*Տարեցտարի ավելացնելով ավտոմոբիլների թողարկումը, բարելավելով արտադրանքի որակը, գործարանում և ոչ մի օր չի ընդհատվում նորի որոնումը։ Այդ գործոնն առանձնապես ակնառու կերպով դրսևորում է գլխավոր կոնստրուկտորի բաժինը, որն իր հիմնական խնդիրն է համարում ստեղծել ավտոմոբիլների ինքնատիպ կոնստրուկցիաներ։ Փոքր բեռնատար ավտոմոբիլների արտադրության վերլուծությունը ցույց է տալիս, որ արտասահմանյան ավտոմոբիլային արդյունաբերությունը, որը փոքրտոննաժ մեքենաներ է արտադրում, կարող է գործնականում բավարարել ցանկացած սպառողի առաջադրած պահանջները։ Առաջատար ֆիրմաները՝ Ֆորդը, Ռենոն, Ֆոլքսվագենը, բեռնատարողության յուրաքանչյուր դասակարգման մեջ ունեն 3—4 տիպի հիմնանիստային թափքեր։*

*10—15 տարվա հեռանկարային կոնստրուկցիաների վերլուծությունը ցույց տվեց, որ անհրաժեշտ է ստեղծել հեռանկարային ԵՐԱԶ—3730 մեկտոննանոց ֆուրգոն՝ երեք հիմնական տիպի թափքերով՝ ֆուրգոն, ավտոբուս և պիկապ։*

*Գործարանը նախատեսում է թողարկել.* ֆուրգոնի հիմնաթափքի վրա՝ *ունիվերսալ ավտոմոբիլ-ֆուրգոն, ավտոմոբիլ-ֆուրգոն իզոթերմիկ թափքով, ավտոմոբիլ սառնարան։* Ավտոբուսի հիմնաթափքի վրա՝ *ավտոբուս 11—12 նստատեղերով, սանիտարական ավտոմոբիլ, ավտոմոբիլ ամառանոց։* «Պիկապ» տիպի հիմնաթափքի վրա՝ *փոխադրող ապրանքատար ավտոմոբիլ՝ հետևի ետբացվող կողով, կրկնախցիկով ավտոմոբիլ։*

*1970—1972 թթ. պատրաստվեցին ավտոմոբիլ-ամառանոցի, ինչպես նաև ունիվերսալ ավտոմոբիլ-ֆուրգոնի նմուշները։ Ներկայումս մշակվում են սառնարան-ավտոմոբիլ և անհետաձգելի շտապ օգնության մեքենա արտադրելու նմուշներ։ Գլխավոր կոնստրուկտորի բաժնի այդ մշակումներն էլ, ըստ էության, Երևանի ավտոմոբիլային գործարանի հեռանկարներն են։ Բայց դրանց կենսագործման համար բավականին մեծ մակերեսներ են պահանջվում, որպեսզի որոշ քանակության մեքենաներ հավաքվեն, ներկվեն, դրանց համար պատրաստվեն հատուկ սարքավորանք և հենասարքերի ու հարմարանքների առանձին հանգույցներ։ Ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրության հանձնարարությամբ գիտահետազոտական կազմակերպությունների ու հիմնարկությունների մասնագետներից կազմված մի հանձնաժողով տնտեսապես հիմնավորեց ԵՐԱԶ-ը 1975—1980 թթ. երեք անգամ ընդլայնելու անհրաժեշտությունը։*

*Վերադաս մարմինների կարգադրությամբ Երևանի ավտոմոբիլային գործարանին պետք է հանձնվի ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի մինիստրության ՀՍՍՀ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի արտադրական գլխավոր վարչության արտադրական բազայի տերիտորիան։ Արդեն մի քանի տարի է անցել, որ մեր ձեռնարկությունը հողի արժեքը փոխանցել է, սակայն տերիտորիան մնում է նախկին տիրոջ ձեռքին, իսկ ՍՍՀՄ ավտոմոբիլային արդյունաբերության մինիստրությունն արտադրանքի թողարկումը պլանավորում է հենց այդ տարածությունների ընդգրկումով։*

*Գործարանը մշտական կոոպերացիայի մեջ է երկրի շատ ձեռնարկությունների հետ, այդ թվում՝ Հայկական ՍՍՀ տերիտորիայում գտնվող մի շարք գործարանների, ինչպես, ասենք, տեխնոլոգիական սարքավորումների, ռետինա-տեխնիկական արտադրանքների գործարանների հետ։ Տեխնիկական սարքավորումների գործարանի մատակարարած պողպատե ձուլվածքի որակը ցածր է, ձուլման բովախառնուրդը կազմվում է գոյություն ունեցող տեխնոլոգիայի և նորմատիվների կոպիտ խախտումներով։ Իր պարտավորությունը լավ չի կատարում ռետինա-տեխնիկական արտադրանքների գործարանը։ Ռետինե խտաբարների որակը չի համապատասխանում արդի պահանջներին, և Երևանում ռետինա-տեխնիկական արտադրանքների գործարան ունենալով հանդերձ, ավտոգործարանը ստիպված իր խտարարները համալրում է Յարոսլավլում, Ռիգայում, Սարանսկում։*

*Երևանի ավտոմոբիլային գործարանի ստեղծմամբ Սովետական Հայաստանում արդյունաբերության այդ ճյուղի հիմքը դրվեց։ Բայց պետք է նշել, որ հանրապետության արդյունաբերության ընդարձակ հնարավորությունները լիովին չեն օգտագործվում գործարանի զարգացման տեմպերն արագացնելու համար։ Այսպես, Երևանում ունենալով ավտոդողերի գործարան, ԵՐԱԶ-ի ավտոմոբիլները համալրում է Յարոսլավլի ավտոդողերի գործարանը, այն ժամանակ, երբ, մեր կարծիքով, հնարավոր է ավտոդողերի արտադրությունը կազմակերպել Երևանում։ ԵՐԱԶ-ը ավտոմոբիլների էլեկտրասարքավորումը բերում է Ռիգայից, մինչդեռ Հայաստանում գոյություն ունի բարձր զարգացած և տեխնիկայի վերջին խոսքով հագեցած էլեկտրատեխնիկական արդյունաբերություն, որի համար դժվար չէ ավտոմոբիլային էլեկտրասարքավորումների արտադրության յուրացումը։ Կարելի է նման շատ փաստեր բերել։*

*1973 թ. հնգամյակի վճռական տարին է։ ԵՐԱԶ-ի կոլեկտիվը ողջ եռանդն ու կարողությունը կգործադրի՝ հաջողությամբ կատարելու իր սոցիալիստական պարտավորությունը։ Առաջին եռամսյակի պլանների կատարումը դրա լավագույն վկայությունն է։*

## ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ

**Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ**

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*

## ՊԱՅՔԱՐ ՍՈՎԻ ԴԵՄ

*Բազմաթիվ պրակտիկ գործեր լուծում էին պահանջում: Մոտենում էր գարունը, և մեր առջև ծառանում էին ցանքի նախապատրաստման հետ կապված հոգսերը: Տեսնելով, թե Լենինն ինչպիսի հսկայական ուշադրություն էր նվիրում գյուղատնտեսությանն ու գյուղացիությանը, մենք բոլորս ձգտում էինք ավելի խոր ըմբռնել այն ժամանակ մեզ համար նոր այդ պրոբլեմները: Անհանգստացնում էր սերմացուի հաշվառման երկշաբաթի անցկացումը, գյուղատնտեսական ինվենտարի վիճակը, և դրա վերանորոգման կազմակերպումը, հողային օրգանների հետ կապված և շատ այլ հարցեր: Խիստ մտահոգում էին նաև որոշ գործարաններում տեղի ունեցող հուզումները, որոնք կապված էին պարենային դժվարությունների հետ...*

*...Հիշում եմ, մի անգամ Սորմովոյից զանգահարեցին նահանգկոմ և հայտնեցին, որ բանվորները թողել են աշխատանքը, հավաքվել հրապարակը, համագործարանային միտինգ ըսկըսել և պահանջում են նահանգկոմի քարտուղարին:*

*Պետք է ասել, որ սորմովցիներն այն ժամանակ գործում էին պաշտպանության ասպարեզում և ստանում ուժեղացրած պարենային մթերաբաժին: Յուրաքանչյուր աշխատողի ամսական հասնում էր 45 ֆունտ ալյուր, 15 ֆունտ բանջարեղեն, 1 ֆունտ աղ, $^1/_4$ ֆունտ օճառ, $^1/_4$ ֆունտ սուրոգատային սուրճ և 2 տուփ լուցկի[1]: Ալյուրն ու աղը բանվորներն ստանում էին կանոնավոր կերպով, թեև ալյուրի մեջ երբեմն շատ թեփ էր լինում...*

*...Գնացի գործարան: Միտինգի հավաքվածներն արդեն իրենց «ասելիքն սպառել էին»: Բարձրացա տախտակներից պատրաստած ամբիոնին, որտեղ բանվորներից մեկը բոլորի առաջ ինձ ցույց տվեց այն ալյուրի նմուշը, որը հենց նոր էին տվել նրանց: Եվ նա բարձրաձայն հայտարարեց.*

*— Մի՞թե սա ալյուր է: Ինքներդ նայեցեք՝ ամբողջովին թեփ է:*

*Նայելով ալյուրին, ես պատասխանեցի.*

*— Այո՛, ալյուրն իրոք վատորակ է: Թեփը շատ է: Բայց հիմա ուրիշ ալյուր չկա. իսկ եթե լիներ, ապա դուք՝ սորմովցիներդ, անպայման կստանայիք առաջին հերթին: Իսկ առայժմ պետք է համբերել:*

*Եվ սկսեցի պարզաբանել, թե ինչպիսի ծանր վիճակում է հանրապետությունը: Սակայն շատ շուտով նկատեցի, որ թեև բանվորները կարծես թե հասկանում են ինձ, բայց իմ բացատրությունները նրանց չեն բավարարում...*

*Երբ ասելիքս վերջացրի, նորից հանդես եկավ ալյուրի նմուշը ցույց տվող բանվորը և հայտարարեց.*

*— Այն ժամանակ մենք սորմովցիների պատվիրակություն կուղարկենք Լենինի մոտ: Նա գնահատում ու հարգում է մեզ և անպայման կօգնի:*

*Ես արտահայտվեցի այդպիսի պատվիրակություն ուղարկելու դեմ.*

*— Մոտ օրերս ես գործով գնում եմ Մոսկվա և խոստանում եմ ձեզ պարենժողկոմատում այդ հարցը բարձրացնել Ցյուրուպայի՝ Լենինի տեղակալի առաջ:*

*Սակայն սորմովցիները պնդում էին իրենցը.*

*— Պարենժողկոմատում ասելու բան չկա, չէ՞ որ հենց պարենժողկոմատն է այստեղ մեզ վատ ալյուր ուղարկում: Առանց Լենինի այդ հարցը չի լուծվի:*

*Տեսնելով, որ սորմովցիների համոզմունքը հնարավոր չէ փոխել, խոստացա Մոսկվայում անցնել նաև Լենինի մոտ:*

*Միայն դրանից հետո սորմովցիները ցրվեցին և սկսեցին աշխատել:*

*Մոսկվայում ես առաջին հերթին գնացի պարենժողկոմատ, Ցյուրուպայի մոտ: Բացատրեցի Սորմովոյում ստեղծված իրադրությունը: Ցյուրուպան հաստատ խոստացավ օգնել: Այդ հարցի առթիվ Լենինին դիմելու հարկ չեղավ: Եվ շուտով Նիժնիում իրոք ստացվեց լավ ալյուր...*

*...Հիշողությանս մեջ պահպանվել է նաև մի այլ դեպք:*

*Մի անգամ նստած եմ նահանգկոմում: Հեռախոսային զանգ է լսվում կուսակցության Կանավինոյի շրջկոմից. «Սալանին» գործարանում բանվորները դադարեցրել են աշխատանքը, փաստորեն գործադուլ են հայտարարել, գործարանից դուրս չեն գալիս և պահանջում են, որ ես գնամ իրենց մոտ:*

*Այդ գործարանի բանվորների հանդեպ ես ունեի, այսպես ասած, «կրկնակի» պարտականություն՝ որպես նահանգկոմի քարտուղար և քաղսովետի՝ նրանց դեպուտատ:*

*...Ժողովն սկսվեց ուղղակի արտադրամասում: Բանվորներն սկսեցին գանգատվել այն ժամանակ իրենց ստացած չափազանց փոքր մթերաբաժնի համար և պահանջում էին այն ավելացնել ու հասցնել սորմովցի բանվորների մթերաբաժնին, իսկ դա նշանակում էր՝ բանվորի հացի նորման ավելացնել ամսական 9 ֆունտով:*

*Արտահայտվեցին երկու-երեք հոգի, իսկ հետո բանվորները պահանջեցին, որ ես ելույթ ունենամ:*

*— Ձեր պահանջը հասկանալի է,— հայտարարեցի ես:— Սակայն մինչև նոր բերքը պետությունը չունի հացի այնպիսի պաշարներ, որոնք հնարավորություն տային բարձրացնելու բնակչության մատակարարման մակարդակը: Այժմ մենք չենք կարող բարձրացնել մթերաբաժնի չափերը: Նույնիսկ ներկայիս չափերով մեծ դժվարությամբ է հաջողվում այն կանոնավոր կերպով բաց թողնել: Իսկ ինչ վերաբերում է սորմովցիներին, ապա նրանց համար, մյուս բանվորների համեմատությամբ, վաղուց է սահմանվել հարաբերականորեն բարձր մթերաբաժին, որովհետև սորմովցիները կատարում են հատուկ և չափազանց պատասխանատու ռազմական պատվերներ: Մենք այժմ ոչ մի ռեալ հնարավորություն չունենք մյուս բանվորներին հավասարեցնելու նրանց հետ... Միանգամայն ազնվորեն և անկեղծորեն ասում եմ ձեզ՝ պետք է սպասել նոր բերքին: Եթե լավ բերք լինի, դրությունը կթեթևանա, և մենք կկարողանանք ավելացնել հացի մթերաբաժնի չափերը:*

*Ես չէի հասցրել ավարտել իմ ելույթը, հանկարծ լսեցի կանացի մի ձայն.*

*— Ձեզ համար լավ է այդպես խոսել, երբ ինքներդ խժռում եք:*

*Ասվեց բարձրաձայն, թեև ասողը չէր երևում. նա կանգնած էր բանվորների հետևում:*

*Պետք է ասել, որ այն ժամանակ ես շատ նիհար էի, տեսքս ուղղակի բանի նման չէր: Վայրկենապես որոշեցի օգտվել այդ հանգամանքից և խնդրեցի, որ ռեպլիկան տվող կինն առաջ գա: Նա առաջ եկավ չափազանց դժկամորեն:*

*Մեր առջև կանգնած էր կարմրաթուշ, այն ժամանակվա համար հազվադեպ «պարարտ», երեսուն տարեկան մի երիտասարդ կին: Ըստ երևույթին, նրա տանն այնքան էլ պակասություն չկար. գործարանի շատ բանվորներ ունեին իրենց կովն ու բանջարանոցը:*

*Անկեղծ ասած, ինձ շատ ուրախացրեց նրա արտաքին տեսքը և ընդհանրապես շատ հաճելի է, որ մարդն այդպիսի լավ տեսք ունի, իսկ տվյալ կացության մեջ նրա փթթուն տեսքը ինձ ձեռնտու էր, այսպես ասած՝ «կրկնակի չափով»:*

*Ձեռքով ցույց տալով նրան և ժպտալով, դիմեցի բանվորներին.*

*— Դուք նայեցեք նրան և ասացեք՝ մեզնից ո՞վ է խժռում...*

*Պոռթկաց քրքիջը: Կինը, ինչպես ասում են, ամոթահար եղավ և ավելի կարմրեց:*

*Ամեն ինչ անակնկալ էր: Իմ ցանկությունից անկախ այդ «դժգոհ» կինը մեծ ծառայություն մատուցեց ինձ և օգնեց որոշ չափով թուլացնելու իրադրության լարվածությունը:*

*Երբ ծիծաղը լռեց, դիմեցի բանվորներին, խնդրելով անցնել աշխատանքի, իսկ հացի համար սպասել ավելի լավ ժամանակների:*

*Բանվորները ցրվեցին իրենց տեղերը, և աշխատանքը վերսկսվեց:*

*Պետք է ասել, որ կուսակցության համագումարում ընդունված նոր տնտեսական քաղաքականության բախտը հենց առաջին տարում չբերեց: Դրա կենսագործումը զուգադիպեց տարերային աղետի՝ 1921 թվականի ուժեղ երաշտի և անբերրիության հետ: Երկրի մի քանի, առավել երաշտային շրջաններում բերքն այն ժամանակ գրեթե ամբողջովին ոչնչացավ: Անբերրիությունն ընդգրկել էր ավելի քան 30 նահանգ՝ 30 միլիոնից ավելի բնակչությամբ: Դրությունն առանձնապես վատ էր Պովոլժիեում: Միայն մերձվոլգյան նահանգներում (առանց Ղրիմի և Ուկրաինայի) կային ավելի քան 17 միլիոն սովահարներ: 1921 թվականը Լենինն անվանեց չտեսնված ծանր տարի:*

*Գտնում էին, որ այն ժամանակ սովից մեռել*

---

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով» № 11, 1972 թ.:

[1] ПАГО, ф. 3, оп. 1, т. 15—21, л. 987.

է մոտ երեք միլիոն մարդ։ Այդ պատճառով երաշտից վնասված շատ շրջանների գյուղացիները չէին կարողանում օգտվել պարենհարկի սիստեմից, նրանք ո՛չ միայն չունեին հացի ավելցուկ շուկայում վաճառելու համար, այլև հացը չէր բավականացնում սեփական սպառումին։ Այդ պատճառով հաց վաճառողների փոխարեն նրանք դարձան հաց սպառողներ։ Նրանց մարզերում ու շրջաններում հնարավոր չէր պարենհարկ հավաքել, իսկ այդ խիստ հարվածեց մեր պետության հացի ընդհանուր բալանսին։ Դեռ ավելին, պահանջվեց հացի ռեսուրսներ որոնել սովյալներին օգնելու համար։

Սովետական կառավարությունը եռանդուն կերպով ձեռնամուխ եղավ սովյալ շրջաններին ինչպես անմիջականորեն պարենով, այնպես էլ սերմֆոնդով օգնություն կազմակերպելու գործին։

Համառուսաստանյան ԿԳԿ III նստաշրջանում (1922 թվականի մայիս) Մ. Ի. Կալինինը հաղորդեց, որ պետությունը սովյալ շրջաններն է ուղարկել մոտ 12 միլիոն փութ պարենամթերք։ Ավելի քան 800 հազար մարդ այդ շրջաններից էվակուացվել է մյուս նահանգները։ Աշնանացանի կամպանիայի ժամանակ մենք այնտեղ ենք ուղարկել 12 միլիոն փութ աշնանացանի սերմ, իսկ գարնանացանի կամպանիայի ժամանակ՝ մոտ 40 միլիոն փութ սերմացու ցորեն։ Նա ասաց նաև, որ հավաքված հատուկ քաղաքացիական հարկի և եկեղեցու բռնագրավված արժեքների միջոցներով գնվել է հարյուր հազարավոր փութ ալյուր[1]...

Բայց միայն պետական օգնությունը բավական չէր, և կուսակցությունը գլխավորեց համաժողովրդական պայքարը սովի դեմ։

Քաղաքների աշխատավորների և երաշտից չտուժած մարզերի գյուղացիների կամավոր նվիրատվությունների շնորհիվ հավաքվեցին զգալի միջոցներ, որոնք օգտագործվեցին սովի դեմ պայքարելու համար։ Բուն Ռուսաստանի ներսում հավաքեցին ավելի քան հինգ միլիոն փութ հացահատիկային և այլ մթերքներ։ Բացի դրանից, յուրաքանչյուր «սովյալ» նահանգին կցեցին մեկ «բերքատու» նահանգ, որն իր պաշարներից օգնում էր անբերրիությունից տուժած աշխատավորներին...

Այդ համաժողովրդական շարժման մեջ մեծ դեր խաղաց 1921 թվականի հուլիսին Համառուսաստանյան ԿԳԿ-ին կից ստեղծված սովյալներին օգնող համառուսաստանյան կենտրոնական հանձնաժողովը (Պոմգոլ)՝ Մ. Ի. Կալինինի գլխավորությամբ։

Պոմգոլի արտասահմանյան ներկայացուցիչներից մեկը Մարիա Ֆեոդորովնա Անդրեևան էր՝ Մաքսիմ Գորկու կինը։ Նա այնտեղ հանդես էր գալիս դասախոսություններով, որոնցում կոչ էր անում արտասահմանյան հասարակայնությանը՝ օգնել Ռուսաստանի սովյալ բնակչությանը։ Լենինին գրած նամակում նա Բեռլինից հաղորդում էր այնտեղ իր կատարած աշխատանքի մասին. «...ինձ ուղարկում էին սովի մասին դասախոսություններ կարդալու Շվեդիայում, Դանիայում, և առիթ ունեցա այդ հարցի առթիվ հանդես գալու հենց Բեռլինում, իսկ դա ինձ հնարավորություն տվեց շփվելու մարդկանց ամենաբազմապիսի զանգվածների հետ, որոնք ինձ հետ խոսում էին առանց որևէ զգուշության»[2]։

Միջազգային պրոլետարիատը և արտասահմանյան առաջադեմ շատ գործիչներ ջերմորեն արձագանքեցին Սովետական Ռուսաստանին օգնելու կոչին։ Այդպիսի օգնության առաջին և առավել ակտիվ կազմակերպիչներից մեկը դարձավ նորվեգական մեծահռչակ գիտնական Ֆրիտիոֆ Նանսենը։ Քիչ աշխատանք չկատարեց Սովետական Ռուսաստանի սովյալներին միջազգային բանվորական օգնություն կազմակերպող արտասահմանյան կոմիտեն (հետագայում՝ Մեժռաբպոմ), որը հիմնվեց 1921 թվականին, Կլարա Ցետկինի, Ալբերտ Էյնշտեյնի, Ռոմեն Ռոլանի, Հանրի Բարբյուսի ու մի քանի առաջադեմ հասարակական գործիչների և համաշխարհային գիտության, գրականության ու արվեստի ներկայացուցիչների մասնակցությամբ։

Աղետի համազգային բնույթի բերումով որոշվեց երկրի ներսում, բացի Պոմգոլից, ստեղծել նաև մի այլ հասարակական կոմիտե՝ բնակչության տարբեր խավերին, ինչպես և ոչ-կոմունիստական մտավորականությանը, նաև այն ժամանակ Ռուսաստանում գոյություն ունեցող քաղաքական զանազան կուսակցությունների ներկայացուցիչներին այդ գործում ներգրավելու համար։ Այդպիսի կոմիտե կազմակերպվեց 1921 թվականի հուլիսին Լ. Կամենևի նախագահությամբ։ Ժողովրդական առօրյա գործունեության մեջ այդ կոմիտեին տվեցին «Պրոկուկիշ» մականունը, որ կազմված էր կոմիտեի կազմի մեջ մտնող Պրոկոպովիչի, Կուսկովայի (իր ժամանակին հայտնի մենշևիկներ, որոնք անցան կադետների կողմը) և կադետ Կիշկինի ազգանունների առաջին վանկերից։ Կոմիտեն իրավունք ուներ հավաքել նվիրատվություններ, ձեռք բերել (Ռուսաստանում և արտասահմանում) պարենամթերք, անասնակեր, դեղամիջոցներ և հագուստեղեն, կազմակերպել հասարակական սնունդ, հավաքված միջոցները բաշխել քաղաքների ու

[1] Տե՛ս «III сессия ВЦИК IX созыва». Бюллетень № 1, М., 1922, стр. 1—5.

[2] М. Андреева. Переписка. Воспоминания. Статьи. Документы. М., «Искусство», 1968, стр. 346.



նահանգների միջև՝ սովյալներին օգնելու համար։

Սակայն «Պրոկուկիշը» գոյություն ունեցավ շատ կարճ ժամանակ՝ մեկ ամսից ոչ ավելի։ Կոմիտեի ղեկավարության հակասովետական տարրերը փորձեցին «Պրոկուկիշը» օգտագործել որպես լեգալ կազմակերպություն հակահեղափոխության նպատակների համար։ Երբ կոմիտեի «գործունեությունը» պարզվեց, սովետական կառավարությունը որոշեց ցրել «Պրոկուկիշը», ըստ որում այդպիսի որոշման վերաբերյալ կառավարական հաղորդագրության մեջ ասված էր, որ բուրժուական որոշ կառավարություններ ու սպիտակգվարդիական խմբեր հակահեղափոխական քաղաքական խաղեր էին սարքում այդ կոմիտեի շուրջը։

1921 թվականի օգոստոսին սովետական կառավարությունն ամերիկյան ԱՐԱ[1] կազմակերպության հետ պայմանագիր կնքեց սովյալներին օգնություն ցույց տալու մասին։

ԱՐԱ-ի գործունեությունը շարունակվեց մոտ մեկ ու կես տարի և դադարեց 1923 թվականի հունիսին, երբ պարզվեց, որ ԱՐԱ-ն, թեպետև քողարկված կերպով, զբաղվում էր ո՛չ միայն սովյալներին տնտեսական օգնություն ցույց տալով, այլև հակասովետական ագիտացիայով, ինչպես նաև լրտեսական, քայքայիչ գործունեությամբ, աջակցելով այն հակահեղափոխական ուժերին, որոնք փորձում էին հասնել սովետական իշխանության տապալմանը։

Սովետների համառուսաստանյան IX համագումարը (1921 թվականի դեկտեմբեր) հատուկ որոշում ընդունեց «Սովյալներին օգնելու մասին», որտեղ, մասնավորապես, նշեց, որ բուրժուական կառավարությունները Սովետական Ռուսաստանի մի մասն ընդգրկած ծանր տարերային աղետին վերաբերվեցին «ամենից առաջ որպես հարմար առիթ՝ սովետական իշխանության տապալման նոր փորձ կատարելու համար...»։

Եվ, այնուամենայնիվ, այդ տարիներին մեր երկրին ցույց տրված օգնությունը բավականին զգալի էր։ Արտասահմանյան հասարակական կազմակերպություններից (ԱՐԱ, անգլիական կվակերներ, շվեդական կարմիր խաչ, Նանսենի կազմակերպություն, միջազգային բանվորական կոմիտե, Երեխաներին օգնող միջազգային խորհուրդ, գերմանական կարմիր խաչ, տրեդ-յունիոններ և այլն) ստացվեց մոտ 27 միլիոն փութ պարենամթերք, գլխավորապես ցորեն, ալյուր, եգիպտացորեն և այլ մթերքներ[2]։

Լենինը 1922 թվականին գրում էր, որ այդ օգնությունը «զգալի չափով օգնեց Սովետական Ռուսաստանին՝ դիմանալու անցյալ տարվա սովի ծանր օրերին և հաղթահարելու այն»[3]։

«...Կատարված է մեծ աշխատանք...— Համառուսաստանյան ԿԳԿ նստաշրջանում ասում էր Մ. Ի. Կալինինը, ամփոփելով սովի դեմ մղված համաժողովրդական պայքարի նախնական արդյունքները։— Մոտ 10 միլիոն բնակչություն մենք խլել ենք սովամահության ճանկերից և, գուցե... մի քանի միլիոնի դարձրել ենք աշխատունակ կամ պահպանել որպես մեր սովետական հանրապետության աշխատունակ անդամներ»[4]։

Երաշտն ու անբերրիությունը տարածվեցին նաև Նիժնի Նովգորոդի նահանգում, ընդգրկելով հարավ-արևելյան վեց գավառ, որոնք մեր հիմնական հացահատիկային բազան էին։

Աշխատավորների համար նախատեսված առանց այն էլ սահմանափակ պարենային մթերաբաժինները դառնում էին ավելի ու ավելի աղքատիկ և այն էլ միշտ չէ, որ լրիվ էին տրըվում։ Թշնամական տարրերը՝ էսեռները, մենշևիկներն ու նրանց ձայնափողերը, ամեն կերպ օգտագործում էին այդ դրությունը, չարամիտ հակասովետական ագիտացիա մղելով բնակչության շրջանում և աշխատավորներին հրահրելով տեղական կոմունիստ ղեկավարների դեմ։

Բանը հասնում էր այնտեղ, որ պարենային դժվարությունների առիթով որոշ արտադրամասեր և նույնիսկ առանձին ձեռնարկություններ դադարեցնում էին աշխատանքը։

1921 թվականի հունիսին, նահանգկոմի բյուրոյում, քննարկելով նահանգում ստեղծված դրությունը, հարկադրված եղանք դիմելու ծայրահեղ միջոցների և ընդունելու այսպիսի որոշում. «Նկատի առնելով այն աղետալի վիճակը, որ առաջացել է ձեռնարկություններին պարենամթերք ու վառելիք մատակարարելու, սովի պատճառով բանվոր-պրոլետարների մասսայի շարունակ ուժեղացող դժգոհության և գյուղի հետ կապված բանվորների կողմից դեպի գյուղը ձգտելու հետևանքով և որը հող է ստեղծում հուզումների ու էսեռա-մենշևիկյան ագիտացիայի համար, ժամանակավորապես թույլատրել սո-

[1] ԱՐԱ— Օգնության ամերիկյան վարչություն. ստեղծվել է ԱՄՆ-ում 1919 թվականին ԱՄՆ-ի ապագա պրեզիդենտ, տխրահռչակ Հ. Հուվերի նախագահությամբ՝ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ տուժած եվրոպական երկրներին պարենային և ամեն տեսակ այլ նյութական օգնություն ցույց տալու համար։

[2] См. «III сессия ВЦИК IX созыва». Бюллетень № 1, стр. 3.

[3] В. И. Ленин. Полное собрание сочинений, т. 45, стр. 315.

[4] «III сессия ВЦИК IX созыва». Бюллетень № 1, стр. 5.

*վյալ բանվորների մասսայական արձակուրդներ՝ երկու շաբաթից մինչև երկու ամսով՝ մի շարք ձեռնարկություններ ժամանակավորապես կրճատելու, ծայրահեղ դեպքում նաև փակելու միջոցով, պարենամթերքի աղքատ պաշարները կենտրոնացնելով առավել կարևոր ձեռնարկությունների մատակարարման համար»[1]։*

*Սակայն դժվարությունները շարունակում էին աճել, 1921 թվականի ամռանը պարենամթերքի առումով դրությունն ավելի սրվեց։ Ստիպված եղանք դիմելու լրացուցիչ միջոցառումների։*

*1921 թվականի հուլիսի 9-ին կուսակցության բոլոր գավկոմներին ու շրջկոմներին ուղարկվեց նահանգկոմի բյուրոյի բանաձևը նահանգի արդյունաբերության ճյուղերի համակենտրոնացման մասին, մատնանշելով, որ ըստ արդյունաբերության ճյուղերի համակենտրոնացման կոնկրետ պլանը, ինչպես և բանվորական արտելներին, մասնավոր ձեռնարկատերերին վարձակալությամբ տրվող ձեռնարկությունների ցուցակները պետք է հաստատվեն նահանգային տնտեսական խորհրդակցության (նահանգտնտխորհի) կողմից։ Համակենտրոնացումն առաջին հերթին անհրաժեշտ էր իրականացնել քիմիական, կաշվեղենի և տեքստիլ արդյունաբերության բնագավառում, որտեղ, ի դեպ, հումքի սուր պակաս էր զգացվում։ Նահանգկոմն զգուշացնում էր, որ համակենտրոնացումն իրականացնելիս պետք է ցուցաբերել առավելագույն զգուշություն ու շրջահայեցություն և քաղաքական բնույթի բարդություններից խուսափելու համար համակենտրոնացման բոլոր աշխատանքները համաձայնեցնել նահանգային արհխորհուրդների և առանձին արհմիությունների հետ։*

*Մենք գտնում էինք, որ այն ձեռնարկությունները, որոնք համակենտրոնացման դեպքում չեն կարող օգտագործվել իրենց անեկամտաբերության պատճառով, պետք է վարձակալությամբ հանձնվեն բանվորական արտելներին, կոոպերատիվներին և նույնիսկ մասնավոր մարդկանց։*

*Այն ժամանակ մենք մեծ ջանքեր գործադրեցինք երաշտի հետևանքների դեմ մղվող պայքարում, օգնելով գյուղացիներին այն ամենով, ինչով հնարավոր էր։*

*Սակայն մի փոքր առաջ անցնելով ասեմ, որ, դժբախտաբար, հաջորդ տարվա գարնանը ևս տուժած գավառներում ցանքը սերմֆոնդով ապահովելու վիճակը մնաց խիստ լարված։*

*Թվում էր՝ ստեղծված դրությունից դուրս գալու ելք չկա։ Բայց դրա հետ մեկտեղ նահանգի պահեստներում կային գարնանացան հացահատիկային կուլտուրաների սերմացուներ, որոնց տնօրինումն ամբողջովին վերապահված էր կենտրոնին. առանց կենտրոնի համաձայնության դրանք օգտագործելու իրավունք չունեինք։*

*Մենք մոբիլիզացրինք մեր բոլոր ներքին հացահատիկային պաշարները, նահանգում հավաքեցինք այն բոլորը, ինչ կարող էինք, բայց դա շատ քիչ էր ցանքի ամենաանհետաձգելի կարիքների բավարարման համար։*

*Պարզ էր, որ առանց կենտրոնի լուրջ օգնության չենք կարող գլուխ հանել։*

*Իմանալով, որ պարենժողկոմատը բացասական վերաբերմունք ունի իր տնօրինության տակ գտնվող հացահատիկային պաշարները մեր նահանգի ցանքի համար օգտագործելու նկատմամբ, որոշեցինք հատուկ բացառության կարգով դիմել Կենտկոմի քաղբյուրոյին, խնդրելով այդ հացահատիկային ֆոնդերի հացահատիկի մի մասը բաց թողնել Նիժնի Նովգորոդի նահանգի ցանքի կամպանիայի համար։*

*Շուտով թույլտվություն ստացանք այդ ֆոնդերից 200 հազար փութ հացահատիկ ստանալու։ Եթե չլիներ կենտրոնի այդ ռեալ օգնությունը, մեր հարավ-արևելյան գավառներում ցանելու բան գրեթե չէր լինի, և մեզ նորից կսպառնար պարենամթերքի լուրջ պակասը, բայց արդեն ոչ թե երաշտի, այլ թերի ցանքի պատճառով։*

*1921 թվականի հուլիսի 10-ին պարենավորման աշխատողների նահանգային համագումարում ես հանդես եկա, «Պարենհարկի էության մասին» զեկուցմամբ։ Մանրամասն պատմեցի պարենհարկի մասին, որին անցնելը, ըստ էության, նոր տնտեսական քաղաքականության սկիզբն էր։ Հիմնական ուշադրությունը ես հատկացրի գյուղում կատարվող ապրանքափոխանակության մեծ խնդիրներին և այն բանին, որ անհրաժեշտ է ամենաեռանդուն կերպով և ժամանակին գանձել պարենհարկը նահանգում։*

*Իմանալով, թե այն ժամանակ պարենային ինչպիսի ծանր դրության մեջ էր ողջ հանրապետությունը, մենք մի շարք միջոցառումներ ծրագրեցինք պարենի խնդիրը տեղում լուծելու համար. այն է՝ արագացնել պարենամթերքի գանձումը, անհրաժեշտ թվով աշխատողներ մոբիլիզացնել պարենավորման ապարատը համալրելու համար, անհապաղ սկսել աղունավարձի գանձումը մասնավոր ջրաղացներից, կոոպերացիայի միջոցով եռանդուն միջոցներ ձեռնարկել գյուղացիության հետ ապրանքափոխանակությունն ամեն կերպ արագացնելու համար։*

*Այդ նպատակով ժողովներ և զրույցներ անցկացրինք կուսակցական ու սովետական ստորին կազմակերպությունների ղեկավարների հետ, մոբիլիզացնելով նրանց՝ այդ անհետաձգելի խնդիրները լուծելու։*

*Մեկ շաբաթ հետո, նահանգի պարենային դրությունը նահանգկոմի բյուրոյի նիստում քննարկելիս ես մտցրի մի շարք լրացուցիչ առաջարկներ, որոնց նպատակն էր պայքարել սովի դեմ և անհրաժեշտ օգնություն ցույց տալ բանվորներին։ Մասնավորապես, մինչև պարենհարկի գանձումը թույլատրել կարտոֆիլի ու բանջարեղենի ազատ վաճառք, կրճատել սովխոզների բանվորների կազմը, բռնագրավել (որտեղ այդ հնարավոր է) պարենամթերքի ավելցուկները քաղաքի համար և ամեն կերպ նպաստել ապրանքափոխանակությանը, գլխավորապես հացատեսակների հետ։*

*Միանգամայն անսպասելի, 1921 թվականի հուլիսի վերջին ստացվեց կուսակցության Կենտկոմի որոշումը, որով ես նշանակվում էի Համառուսաստանյան ԿԳԿ լիազոր մեր նահանգում պարենհարկի գանձումն անցկացնելու գործում, և անհապաղ կանչվում էի Մոսկվա։*

*Մոսկվայում ես անցա Ցյուրուպայի մոտ, աշխատելով որպես ժողկոմ և ժողկոմսովետի գծով լինելով Լենինի երեք տեղակալներից մեկը. նա այն ժամանակ տնօրինում էր պարենավորման բոլոր հարցերը, ինչպես և պարենհարկի գանձումը։*

*...Իմ առջև կանգնած էր բարձրահասակ, շատ նիհար մի տղամարդ՝ նրա մազերը թեթևակի ճերմակել էին։ Տարիքով նա ինձնից բավականին մեծ էր։ Ցյուրուպան հաճելի ժպիտով ողջունեց ինձ։ Առաջին հերթին սկսեց մանրամասն հարցուփորձ անել նահանգի պարենային դրության մասին, պարզել, թե մեզ մոտ ինչպես է ընթանում պարենհարկի գանձումը։ (Հենց այդ ժամանակ էլ նա որոշում ընդունեց Նիժնիին ալյուրով օգնելու վերաբերյալ, ինչի մասին ես արդեն պատմել եմ)։ Հետո Ցյուրուպան համառոտակի պարզաբանեց իմ՝ որպես Համառուսաստանյան ԿԳԿ լիազորի խնդիրները, իրավունքներն ու պարտականությունները հարկի գանձման բնագավառում...*

*Նա սակավախոս էր, բայց շատ պարզ էր շարադրում իր մտքերը։ Զգացվում էր, որ խելացի, շատ բազմագիտակ, բառիս բուն իմաստով ինտելիգենտ մարդ է։ Ցյուրուպան համակրանք էր շահում ինչ-որ առանձին՝ ո՛չ միայն արտաքին, այլև ներքին հմայքով, լսելու ունակությամբ, իր արտասովոր անդորրությամբ, հավասարակշռվածությամբ, զսպվածությամբ... Ես հրաժեշտ տվի նրան, հաճելի տպավորություն ստանալով մեր առաջին հանդիպումից։*

*Երկու օր հետո վերադարձա Նիժնի և նահանգկոմին մանրամասն տեղեկացնելով Ցյուրուպայի հետ ունեցած իմ զրույցին, զբաղվեցի նահանգային պարենկոմի ու նրա գավառային կոմիսարների անմիջական գործնական աշխատանքով։ Հարկ էր լինում հաճախակի մեկնել տեղերը, ստուգել պարենհարկի գանձման ընթացքը, միջոցներ ձեռնարկել աշխատանքում եղած թերությունները վերացնելու համար։*

*Բնականաբար այս ամենի ընթացքում ես հենվում էի տեղական կուսակցական ու սովետական կազմակերպությունների մեծ օգնության վրա։*

*Համենայն դեպս, ութ ամիս հետո նահանգային XIII կուսկոնֆերանսում նահանգկոմի հաշվետու զեկուցման մեջ հաստատ համոզվածությամբ կարելի էր հայտարարել, որ «...հիմնական ուշադրությունը մենք հատկացրել ենք պարենհարկին։ Այն գանձված է 93 տոկոսով, մինչդեռ մյուս, նույնիսկ ավելի բարեկեցիկ նահանգներում պարենհարկը գանձված է միայն 75 տոկոսով»։*

[1] ЦПА ИМЛ, ф. 17, оп. 13, д. 602, л. 88.

## ՄԵՐ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

«Լենինյան ուղիով» ամսագրի 1973 թ. № 3-ում տպագրված «Գյուղատնտեսության էական մի հարց» հոդվածի կապակցությամբ, որը վերաբերում է հանրապետությունում ոչխարաբուծության հետագա զարգացմանը, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ ընկ. Վ. Սերոբյանը խմբագրությանը հայտնում է հետևյալը.

Հայկական ՍՍՀ մինիստրների սովետի 1956 թվականի հուլիսի 10-ի, իսկ այնուհետև 1963 թվականի նոյեմբերի 6-ի որոշումներում նախատեսված է հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում նրբագեղմ-կոպտաբուրդ խառնացեղ ոչխարաբուծությունը զարգացնել կիսանրբագեղմ ուղղությամբ. խառնացեղ ոչխարների ցանկալի տիպն է «ինքն իր մեջ» բուծելու եղանակով, իսկ Ազիզբեկովի, Արարատի, Եղեգնաձորի և Մարտունու շրջաններում բուծել բալբաս ցեղի ոչխարները: Դրանց բազմացման գործն այժմ ընդլայնվել է Արտաշատի, Արագածի և Ապարանի շրջանների մի շարք տնտեսությունների հաշվին:

Վերոհիշյալ որոշումների հիման վրա, 1963 թվականից դադարեցվեց նրբագեղմ տոհմային խոյիկների ներմուծումը և աստիճանաբար օգտագործումից հանվեցին նրբագեղմ արտադրող խոյերը:

Հետևապես հոդվածում առաջ քաշված այն հարցը, որ Հայաստանի ոչխարաբուծությունը պետք է մասնագիտացնել կիսանրբագեղմ ուղղությամբ, իսկ մի շարք շրջաններում բուծել բալբաս ցեղի ոչխարներ, լուծված է:

Հոդվածի հեղինակը նշում է, որ նրբագեղմ-կոպտաբուրդ խառնացեղ մաքիները պետք է սերմնավորել կիսանրբագեղմ հյուսիս-կովկասյան մսաբրդատու ցեղի 48, 50 58/48 որակի բուրդ ունեցող էլիտա և առաջին դասի արտադրողներով: Պետք է նշել, որ 1965 թվականից, երբ հանրապետությունում կազմակերպվեցին պետական սերմնավորման կայաններ, դրանք համալրվեցին բացառապես կիսանրբագեղմ ցանկալի տիպի էլիտա և առաջին դասի տոհմային արտադրողներով, որոնցով սերմնավորվում են կոլտնտեսությունների և սովխոզների մաքիների մոտ 70 տոկոսը:

Միաժամանակ հայտնում ենք, որ գյուղատնտեսության մինիստրությունը, քննարկելով հոդվածում առաջ քաշված հարցերը, միջոցառումներ է մշակել ոչխարի մսի, բրդի և, հատկապես, կիսանուրբ բրդի արտադրությունը ավելացնելու, ինչպես նաև ոչխարի կաթի արտադրության առաջադրանքներ սահմանելու և դրանք կատարելու համար:

Ոչխարաբուծության հետագա ինտենսիվացման նպատակով, նախատեսվում է առանձին շրջաններում և տնտեսություններում կազմակերպել ոչխարների վաղ ծին, մաքիների տեսակարար կշիռը հոտում աստիճանաբար ավելացնելու, իսկ մատղաշների մի մասը նույն տարում որպես մսացու իրացնելու համար:

---



Адрес редакции: Ереван- 33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 05726 Պատվեր 1030 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 13.100: Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 27/VI 1973 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Իսահակյան փող. № 28:

# Содержание





Գինը 25 կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ՑՈՐԵՆ

*ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի սիբիրյան բաժանմունքի ցիտոլոգիայի և գենետիկայի ինստիտուտն ստեղծել է մեր երկրում ցորենի առաջին ռադիացիոն տեսակը՝ «Նովոսիբիրյան—67»-ը, ռադիոակտիվ ճառագայթման ճշգրիտ դոզավորման միջոցով փոխելով սերմի ժառանգական հատկանիշները: Այդ տեսակը նախատեսված է Սիբիրի դաժան պայմանների համար: Այն հաջողությամբ անցել է պետական փորձարկումը և հեկտարից տալիս է 40 ցենտներ բերք:*

## ՇՈԳԸ ԵՎ ՕՊՏԻԿԱՆ

*Լեհաստանի էլեկտրոնիկայի արդյունաբերական ինստիտուտը կառուցել է օպտիկական սարք, որով կարելի է դիտել հերմետիկ սարքավորման մետաղական կորպուսի ներքին պրոցեսները վակուումի մեջ C 450° ջերմության և մեծ ճնշման պայմաններում:*

## ԱՂՄՈՒԿԻ ԴԵՄ

*Պղնձի, մարգանեցի և ալյումինի համաձուլվածքը հատուկ ջերմային մշակումից հետո ձայնը վեր է ածում տաքության, դառնում աղմուկի հիանալի կլանիչ: Այդ նյութից, որ մշակել են ամերիկյան մասնագետները, կարելի է պատրաստել տների պատեր և բնակարանների միջնապատեր:*

## ԳԵՐԱՐԱԳ ԷՀՄ

*Կանադայի մետեորոլոգիական կենտրոնը մշակել է էլեկտրոնային հաշվիչ մեքենայի նոր սիստեմ: Այն 10 անգամ ավելի արագ է կանխատեսում եղանակը: Նոր էլեկտրոնային հաշվիչ մեքենայի արագությունը վայրկյանում 15 մլն գործողություն է: Այն կարող է մշակել Կանադայի բոլոր մետեոկայաններից և ծովում գտնվող նավերից ստացված տվյալները:*

## ԷԼԵԿՏՐԱԿԱՐԴԻՈԳՐԱՖ-ԱՎՏՈՄԱՏ

*Ամերիկյան «Դեյտա դիսպլեյ սիստեմզ» ֆիրման մշակել է «Օմնիկարդիոգրամ» ապարատը, որը սովորական էլեկտրոկարդիոգրամները վերլուծում է բժշկից արագ և ճիշտ: Ֆիրման պնդում է, որ այդ ապարատի միջոցով կարելի է հայտաբերել սրտին սպառնացող նոպան երեք տարի առաջ՝ 87—94 տոկոսի ճշգրտությամբ:*

## ՄՈՒՐՃ՝ ԱՄՈՐՏԻԶԱՏՈՐՈՎ

*Պնևմատիկ մուրճերի ամենամեծ թերությունը վիբրացիան է: Լեհաստանի Սվիդնիկե քաղաքի տրանսպորտային սարքավորման գործարանը պատրաստել է տատանումների մարիչ, որով կարելի է սարքավորել տարբեր տիպի պնևմատիկ մուրճեր: Սարքը հնարավոր է դարձնում մի քանի անգամ պակասեցնել բանվորի ձեռքի վրա ազդող տատանումների ամպլիտուդան և հաճախականությունը:*

## ՍՊԵԿՏՐՈՄԵՏՐ ՄԵՏԱՂՆԵՐԻ ԱՆԱԼԻԶԻ ՀԱՄԱՐ

*Անգլիայում թողարկվել է «Կվանտովակ—28» սպեկտրոմետրը, որը հնարավոր է դարձնում արագ և ոչ մեծ ծախսումներով տարրալուծել սև և գունավոր մետաղները: Այն նախատեսված է պողպատաձուլման գործարաններում և ձուլման արտադրամասերում տեխնոլոգիական պրոցեսի անընդհատ վերահսկողության համար: Չափման արդյունքները տրվում են տպագիր, մի քանի վայրկյան հետո, ընդ որում էլեկտրոնային-հաշվիչ սարքն ապահովում է մետաղների բաղադրիչների որոշման բարձր ճշգրտություն:*

## ՆՈՐ ՀԱՄԱՁՈՒԼՎԱԾՔ

*Շվեյցարական ֆիրմաները մշակել են բրոնզի ու ալյումինի նոր համաձուլվածք, որը կոչվում է «Օվինօքս»: Այն չժանգոտող պողպատից ամուր է, կարող է տաք վիճակում մշակվել ու երեսապատվել: Նոր համաձուլվածքը Շվեյցարիայում կօգտագործվի հիմնականում ժամացույցների արտադրության մեջ:*